# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**2**

**ՓԵՏՐՎԱՐ 1969**

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

### Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ



### ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԹԵՄԱՆԵՐ



### ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ



### ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ



### ՆՇԱՆԱՎՈՐ ՏԱՐԵԹՎԵՐ



### ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ



### ՀԱՅ ՓԻԼԻՍՈՓԱՅԱԿԱՆ ՄՏՔԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ



### ԷՋԵՐ ՍՈՎԵՏԱՀԱՅ ՄԱՄՈՒԼԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ



### ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

# Содержание











**Գ. Մ. ԴԱԼԼԱՔՅԱՆ**

Պատմական գիտությունների
դոկտոր, պրոֆեսոր

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾՈՂՆ ՈՒ ԱՌԱՋՆՈՐԴԸ

*Հանճարը դարի ծնունդ է։ Որոշ կուսակցություններ ևս դարի ծնունդ են։ Բայց Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը դարերի ծնունդ է, նա սաղմնավորվել, արմատակալել է դեռևս XIX դարեվերջին, իսկ ծնվել՝ XX դարամուտին։*

*Լենինը պատմության մեջ մտավ որպես պրոլետարական հեղափոխության մեծագույն առաջնորդ, իբրև բանվոր դասակարգի ավանգարդի՝ բոլշևիկյան, նոր տիպի կուսակցության, սոցիալիստական հեղափոխության և պրոլետարիատի դիկտատուրայի կուսակցության, հասարակության քաղաքական կազմակերպության բարձրագույն ձևի՝ սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման կուսակցության՝ ստեղծող ու ղեկավար։*

*XIX դարի երկրորդ կեսում արդեն հստակ ուրվագծվում էր բուրժուական հարաբերությունների արմատավորումը Ռուսաստանում, որը դուրս էր գալիս իր գոյության ճորտատիրական փուլից։ Հարկ է նշել, որ Ռուսաստանում արագ աճեց արդյունաբերական պրոլետարիատը, իսկ հողազրկվող գյուղացիությունը բռնում էր պրոլետարականացման ճանապարհը։ Նորաստեղծ արդյունաբերական ձեռնարկություններում պրոլետարիատի համակենտրոնացումը բուռն թափ հաղորդեց բանվորական շարժմանը։*

*Ռուսաստանի տարբեր արդյունաբերական կենտրոններում հեղափոխական ռահվիրաների՝ Դ. Բլագոևի, Պ. Տոչիսկու, Ս. Խալտուրինի կողմից արդեն ստեղծվեցին բանվորական, մարքսիստական սոցիալ-դեմոկրատական խմբեր ու կազմակերպություններ։*

*Գ. Վ. Պլեխանովի՝ «Աշխատանքի ազատագրության խումբը» 1880-ական թվականներին լայն գործունեություն ծավալեց Ռուսաստանում մարքսիզմի տարածման ուղղությամբ։*

Վլադիմիր Իլյիչ Լենինը (Ուլյանով) իր հասարակական-քաղաքական գործունեությունն սկսեց 1880-ական թվականների վերջերին, երբ երկրում ստեղծվել էր սոցիալ-դեմոկրատական ուղղությունը. նա հանդիսացավ ռուսաստանյան մարքսիստների նոր սերնդի ներկայացուցիչը։ Երիտասարդ Լենինի վրա անջնջելի տպավորություն են թողնում Նեկրասովի, Տուրգենևի, Չեռնիշևսկու և Դոբրոլյուբովի ստեղծագործությունները։ Նա սկսում է խորապես ուսումնասիրել Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի աշխատությունները, մասնակցել մարքսիստական, սոցիալ-դեմոկրատական խմբերի կազմակերպմանը։ 1895 թ. Լենինը մեկ կազմակերպության՝ «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միության» մեջ միավորեց Պետերբուրգի մարքսիստական խմբերը։

Լենինը ցանկանում էր Ռուսաստանով մեկ ցրված բոլոր սոցիալ-դեմոկրատական խմբերը միավորել այդ միության մեջ որպես մեկ միասնական պրոլետարական կուսակցություն։ Լենինյան այս «Պայքարի միությունը» կարճ ժամանակահատվածում սերտորեն կապվեց Պետերբուրգի 70 խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների բանվորության հետ և ծավալեց բանավոր ու գրավոր պրոպագանդիստական աշխատանք։

Չնայած «Պայքարի միության» ղեկավարությունը շուտով բանտարկվեց և աքսորվեց Սիբիր, սակայն Լենինի ղեկավարությամբ, «Պայքարի միության» ջանքերով ռուսական սոցիալ-դեմոկրատները կարողացան դնել բանվորական շարժման հետ սոցիալիզմի միացման սկիզբը, որն իրավամբ պետք է համարել արմատական բեկում ռուսական սոցիալ-դեմոկրատիայի հերոսական պատմության մեջ։

Շուտով «Սոցիալ-դեմոկրատական միություններ» ստեղծվեցին Մոսկվայում, Իվանովո-Վոզնեսենսկում, Կիևում, Եկատերինոսլավում, Թիֆլիսում, Նովգորոդում, Խարկովում, Բաքվում, Ջլատոուստում և այլուր։

Վ. Ի. Լենինի միակ մտահոգությունն այդ օրերին Ռուսաստանի բոլոր սոցիալ-դեմոկրատական, բանվորական խմբերի, կազմակերպությունների միավորումն էր մի միասնական մարքսիստական բանվորական կուսակցության մեջ։

Լենինը բանտում, 1895 թվականի վերջում, գրքի տողամիջում, կաթով գրում է կուսակցության «Ծրագրի նախագիծը» ու «Ծրագրի բացատրությունը» և Կրուպսկայայի միջոցով դուրս հանում բանտից։ Իսկ 1897 թվականին աքսորավայրում նա գրում է. «Ռուսական սոցիալ-դեմոկրատների խնդիրները» բրոշյուրը, որտեղ տեսական բացառիկ խորությամբ հիմնավորում է ռուսական սոցիալ-դեմոկրատիայի քաղաքական ծրագիրն ու տակտիկան և կոչ անում իր համախոհներին գոյություն ունեցող բոլոր բանվորական խմբակներն ու սոցիալ-դեմոկրատական խմբերը միավորել մեկ միասնական սոցիալ-դեմոկրատական կուսակցության մեջ։

Խիստ բարդ իրադրության պայմաններում Վ. Ի. Լենինը մշակում է կուսակցության ստեղծման հանճարեղ պլանը, որի հետևողական իրագործումը միայն հասցնում է իր նպատակին։ Բանն այն է, որ Ռուսաստանում հեղափոխական շարժման բուռն վերելքը, միաժամանակ կյանքի էր կոչել բազմաթիվ բուրժուական, մանրբուրժուական և միապետական հոսանքներ, որոնք ձգտում էին բանվորական շարժումը շեղել իր ճիշտ հունից։ Անհրաժեշտ էր նարոդնիկների, էկոնոմիստների, լեգալ-մարքսիստների և մյուս օպորտունիստական հայացքները մերկացնել, ստեղծել այնպիսի կուսակցություն, որը կազմակերպական և գաղափարական սկզբունքներով լիներ մարքսիստական, հեղափոխական։



Վ. Ի. Լենինը գտնում էր, որ դրա համար անհրաժեշտ է հրատարակել համառուսական քաղաքական թերթ և հենց դրանից պետք է սկսել, որպեսզի նրա էջերում հիմնավոր կերպով մերկացվի ռևիզիոնիզմի և օպորտունիզմի ռուսական տարատեսակը, ցույց տրվեն նրանց սոցիալական արմատները, գաղափարների վնասակար հետևանքները, պաշտպանել մարքսիզմը նրանց հարձակումներից և այդպիսով հող պատրաստել նոր տիպի մարքսիստական կուսակցություն ստեղծելու համար։

Լենինյան այդ հանճարեղ պլանը հավանություն գտավ գրեթե բոլոր ռուս մարքսիստների կողմից և նրանց օժանդակությամբ նախապատրաստվեց թերթի հրատարակությունը։ Աքսորի ժամկետն անցնելուց հետո (1900 թվականի հունվարից սկսած) Վ. Ի. Լենինը մեծ եռանդով ձեռնամուխ է լինում թերթի հրատարակման գործին։ Շուշենսկոյե աքսորավայրից վերադառնալուց նա լինում է Ուֆայում, Մոսկվայում, Պետերբուրգում, Սամարայում, Սմոլենսկում, Ռիգայում, Պոդոլսկում, կապեր ստեղծում տեղական սոցիալ-դեմոկրատների հետ, հանդիպում Վ. Զասուլիչին, Ի. Բաբուշկինին, Պ. Լեպեշինսկուն, Ի. Լալայանցին, Ա. Ցյուրուպային և ուրիշների։

Չնայած ցարական ոստիկանության ուժեղ հսկողությանը, Վ. Ի. Լենինը 1900 թվականի ապրիլին Պսկովում հրավիրում է խորհրդակցություն, որը մշակում է առհասարակ կուսակցական պարբերականների, մասնավորապես «Իսկրա»-ի և «Զարյա»-ի հրատարակման ծրագիրը։ Խորհրդակցությունում ունեցած իր ելույթում Վ. Ի. Լենինը նշում է, որ ժամանակն է արդեն Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատներին սոցիալիզմի գաղափարների բացարձակ պրոպագանդմամբ դուրս գալու քաղաքական բացահայտ պայքարի, այդ ճանապարհին, առաջին քայլը կլինի համառուսաստանյան սոցիալ-դեմոկրատական օրգանի հիմնադրումը։ 1900 թվականի դեկտեմբերի 11 (24)-ին, Լենինի գործադրած վիթխարի ջանքերի շնորհիվ լույս է տեսնում «Իսկրա»-ի առաջին համարը։ Նրա խնդրանքով «Իսկրա»-ի հրատարակմանն օժանդակեցին նաև միջազգային սոցիալիստական շարժման ականավոր գործիչներ՝ Կլարա Ցետկինը, Յուլիա Մարխլևսկին, Ադոլֆ Բրաունը, ինչպես նաև Լայպցիգի տպարանի առաջավոր բանվորները։

«Իսկրա»-ի հիմնադրմամբ ռուսաստանյան սոցիալ-դեմոկրատիան թևակոխեց մարքսիստական կուսակցություն ստեղծելու ավարտական շրջանը։ Դրա էջերում Վ. Ի. Լենինը հանդես էր գալիս տեսական, տակտիկական, կուսակցական կազմակերպական հարցերի մշակմամբ։

Լենինը գտնում էր, որ իմպերիալիզմի դարաշրջանում անհրաժեշտ է ստեղծել նոր տիպի, մարքսիստական այնպիսի կուսակցություն, որը խիստ տարբերվի ռեֆորմիստական կուսակցություններից, որը լինի պրոլետարիատի դասակարգային պայքարի ղեկավարների և կազմակերպողների մարտական շտաբը, իր հատկանիշներով քաղաքականապես ճկուն ու սուր, սկզբունքային, անհաշտ թշնամիների նկատմամբ, կազմակերպչորեն կուռ և պատրաստ՝ աշխատավոր մասսաներին ոտքի հանելու իրենց կեղեքողների դեմ։

Վ. Ի. Լենինը «Իսկրա»-ի էջերում և առանձին՝ «Ռուսական սոցիալ-դեմոկրատիայի ագրարային ծրագիրը», «Ագրարային հարցը մեր ծրագրում», «Ի՞նչ են «Ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ», «Ի՞նչ անել» և այլ աշխատություններում, մերկացնում

էր ոչ միայն միջազգային օպորտունիզմը, այլև նրա ռուսական տարատեսակությունը, գիտականորեն հիմնավորում նոր տիպի մարքսիստական կուսակցության գաղափարական, տակտիկական հիմունքները։ 1902 թվականի հունիսին «Իսկրա»-ի էջերում տպագրվեց Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության ծրագրի նախագիծը, որը քննարկվեց բոլոր կազմակերպություններում, խմբակներում, խմբերում և կարճ ժամանակամիջոցում ամենալայն տարածում գտավ։

Ծրագրի նախագծում ամփոփված էին պրոլետարական կուսակցության առջև ծառացած բոլոր հարցերն ու խնդիրները, նպատակներն ու նրանց իրագործման միջոցները։ Ծրագրի նախագիծն առանձին տպագրվեց և տարածվեց բանվորական շրջաններում, հավանության արժանացավ բազմաթիվ սոցիալ-դեմոկրատների կողմից և ավելի աշխուժացրեց սոցիալ-դեմոկրատական խմբակների ու խմբերի գործունեությունը։

Լենինը հաշվի էր առնում և հատուկ ուշադրություն դարձնում բազմազգ Ռուսաստանի պայմաններում ազգային հարցի ճիշտ մշակումը։ «Իսկրա»-ի էջերում տպագրվեց նախ սոցիալ-դեմոկրատիայի ծրագրի նախագիծը ազգային հարցի վերաբերյալ, որն, ի տարբերություն գոյություն ունեցող կուսակցությունների, առաջին անգամ դրեց ազգերի ինքնորոշման և հավասարության հարցը։ Թերթում զետեղվում էին թղթակցություններ ազգային ճնշման յուրաքանչյուր փաստի մասին, մերկացվում էր ցարիզմի՝ «բաժանիր, որ տիրես» խորամանկ քաղաքականությունը։ Լենինյան «Իսկրա»-ն անողոքաբար մերկացնում էր ցարիզմի շովինիստական յուրաքանչյուր քայլ և լայն հասարակայնությանը ցույց տալիս նրա կողմից ֆինների նկատմամբ բռնի ուժի գործադրումը, հայերից՝ եկեղեցական ունեցվածքի բռնագրավումը, լեհ և կալմիկ սովորողների թշնամացումը, չուվաշների հավատի ծանակումը, Գոմելի հրեական ջարդերը և այլն, աշխատավորության շրջաններում ատելություն հարուցելով այդ երևույթների հանդեպ։ Այսպիսով, թերթը դաստիարակում էր բանվորա-գյուղացիական մասսաներին պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով, առաջադրում Ռուսաստանի բազմազգ բանվոր դասակարգի միասնական գործունեության ծրագիր։

Վ. Ի. Լենինը հանդես էր գալիս միջազգային սոցիալ-դեմոկրատիայի հեղափոխական թևի պաշտպանության և օպորտունիստական թևի խարազանման դիրքերից, ցույց տալիս, որ այդ հեղափոխական թևը հանդիսանում է միջազգային պրոլետարիատի եղբայրական մեծ ընտանիքի անդամ։

Ռուսաստանի բանվոր դասակարգի և միջազգային պրոլետարիատի առանձին ջոկատների կապն ամրապնդելու համար Վ. Ի. Լենինը «Իսկրա»-ի առանձին համարներ հրատարակում էր նաև օտար լեզուներով, նրանց իրազեկ դարձնում Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական շարժմանը։ Նա հսկայական կազմակերպչական աշխատանք ծավալեց միավորելու անջատ սոցիալ-դեմոկրատական կոմիտեները, խմբակներն ու խմբերը։

Արդեն հասունացել էր կուսակցության համագումարի հրավիրման հարցը։ 1902 թվականի մարտին Բելոստոկում յոթ կազմակերպությունների ներկայացուցիչների կոնֆերանսն ընտրեց կազմակերպչական կոմիտե՝ համագումար հրավիրելու նախապատրաստական աշխատանքները գլխավորելու համար։ Կազմակերպչական կոմիտեն «Դիմում» հրապարակեց, որում նշում է՝ ինքնակալության դեմ պայքարը կարելի է գլխավորել միայն բոլոր սոցիալ-



դեմոկրատների միասնական ուժերով, նրանց համախմբելով մեկ կենտրոնացված և կարգապահ բանակում։

Լենինի տիտանական գործունեությունը տվեց իր պտուղները։ Ռուսաստանի սոցիալ-դեմոկրատական բանվորական կուսակցության երկրորդ համագումարը հրավիրվեց 1903 թվականի հուլիսի 17 (30)-ին։ Առաջին 13 նիստերը տեղի ունեցան Բրյուսելում, իսկ հետագա 24-ը՝ Լոնդոնում։ Համագումարին ներկայացուցիչներ էին ուղարկել 26 սոցիալ-դեմոկրատական կազմակերպություններ։

Երեսուներեքամյա Լենինը ընտրվեց համագումարի նախագահության կազմում։ Նա համագումարում հսկայական ջանքեր թափեց, վճռական ու անողոք պայքար մղեց՝ հանուն նոր տիպի մարքսիստական բանվորական կուսակցության ստեղծման։

Կուսակցության ծրագրի, կանոնադրության, ազգային հարցի, բունդի վերաբերյալ և ուրիշ բոլոր հարցերի շուրջ ծավալված բուռն վիճաբանություններում Վ. Ի.Լենինը կարողանում էր ժամանակին նկատել և քննադատել բոլոր այն սխալ տեսակետներն ու առաջարկությունները, որոնք խանգարում էին իսկական մարտական կուսակցություն ստեղծելուն։ Նա իր ելույթներում մշտապես ընդգծում էր, որ համագումարի գլխավոր խնդիրն է ստեղծել այնպիսի մարքսիստական կուսակցություն, որն արմատապես, հիմնովին տարբերվի II Ինտերնացիոնալի ռեֆորմիստական կուսակցություններից։

Վ. Ի. Լենինի տասնամյա վիթխարի գործունեության շնորհիվ, հաղթահարվեցին բազմաթիվ խոչընդոտներ, որոնք խանգարում էին կուսակցության ստեղծմանը. այդ ժամանակահատվածում Լենինն իրեն ամբողջովին նվիրել էր կուսակցության գաղափարական, քաղաքական և կազմակերպական սկզբունքների մշակմանը, որով փաստորեն նա զարգացնում, հարստացնում էր Մարքսի-Էնգելսի ուսմունքը։ Լենինի գործադրած ջանքերը պսակվեցին հաջողությամբ։ 1903 թվականին փաստորեն կազմավորվեց բոլշևիկների մարտական կուսակցությունը։

Անվիճելի փաստ է, որ Վ. Ի. Լենինը վճռական դեր խաղաց կուսակցության հիմնադրման համար մղվող պայքարում, նա հանդիսացավ նոր տիպի բանվորական կուսակցության ստեղծողը, նրա հիմնադիրը։ Լենինը նոր տիպի կուսակցության համար մղվող պայքարի բովում կոփեց շատ պրոֆեսիոնալ հեղափոխականներ, որոնք իրենց կյանքն ամբողջովին նվիրեցին բանվոր դասակարգի մեծ գործին, երեք հեղափոխությունների կրակի բոցերի միջով տարան մարքսիզմի հաղթական դրոշը։ Վ. Ի. Լենինն իր գործունեության ընթացքում հենվում էր այնպիսի ականավոր հեղափոխականների վրա, ինչպիսիք էին՝ Գ. Կրժիժանովսկին, Ն. Բաումանը, Լ. Վիլենսկին, Լ. Կնիպովիչը, Բ. Կնունյանցը, Լ. Կեցխովելին, Ա. Ծուլուկիձեն, Ս. Ստեպանովը, Վ. Գալկինը, Ս. Գուսևը, Ռ. Զեմլյաչկան, Ա. Զուրաբովը, Պ. Կրասիկովը, Մ. Լյադովը, Լ. Սախլինը, Գ. Միշենևը, Ի. Նիկիտինը, Դ. Թոփուրիձեն, Դ. Ուլյանովը, Ա. Շուրմանը, Ս. Շահումյանը, Ֆ. Լենգնիկը, Վ. Նոսկովը և շատ ուրիշներ։

Մարքսիզմի գաղափարներին անսահմանորեն նվիրված հեղափոխականների նորանոր ջոկատներ հետագայում զինվորագրվեցին կոմունիստական կուսակցությանը և շարունակեցին Լենինի գլխավորությամբ պայքարել ու հաղթանակել։

Պատմության քառուղիներում բազմաթիվ կուսակցություններ են հանդես եկել, ծնվել են ու մեռել, պատմությունից չքացել առանց որևէ հետք

թողնելու: Կուսակցություններ են եղել, որոնք գոյատևել են ամիսներից էլ
քիչ, չկարողանալով իրենց ազդեցության ոլորտն առնել թվով քիչ թե շատ
մարդկանց: Դրա պատճառն այն է, որ շատերը պատահականության հետե-
վանք են եղել կամ առանց տեսական, տակտիկական, կազմակերպական
հիմքերի են ստեղծվել կամ առանց ծանրակշիռ սոցիալ-տնտեսական շարժ-
առիթի:
Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն ստեղծել է
Վ. Ի. Լենինի հանճարը, որը բազմակողմանիորեն հենվել է ռուսական ամե-
նահեղափոխական պրոլետարիատի 39 տարվա դասակարգային պայքարի,
միջազգային սոցիալ-դեմոկրատիայի երկարամյա փորձի վրա, կյանքի է կոչ-
վել կապիտալիզմի զարգացման նոր դարաշրջանի, իմպերիալիզմի դարաշրր-
ջանի պահանջներով:
Դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ թեպետ 65 տարի է անցել
ՍՄԿԿ ստեղծման օրից, Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցությունը
մնում է երիտասարդ, անընդհատ համալրվում է նորանոր մարտիկներով,
օրեցօր աճում է նրա հեղինակությունը ոչ միայն մեր անծայրածիր երկրում,
այլև գրեթե հողագնդի բոլոր երկրներում:
Սակայն կուսակցություն ստեղծելը միայն սկիզբն է: Չէ՞ որ իր գործու-
նեության մեջ նա կարող է հանդիպել այնպիսի պատնեշների, որոնք անհաղ-
թահարելի են և խանգարում են նրա առաջխաղացմանը: Սակայն Վ. Ի. Լենի-
նը ոչ միայն ստեղծեց, այլև դժվարագույն խոչընդոտները հաղթահարելով
հաղթանակից հաղթանակ առաջնորդեց կոմունիստական կուսակցությանը:
1903 թվականին կոմունիստական կուսակցությունը փաստորեն ծրագրել
էր մի այնպիսի վիթխարի խնդիր, որի մասին ոչ ոք երազել անգամ չէր կա-
րող՝ ցարիզմի տապալումը, այնուհետև բուրժուազիայի տապալումը և պրո-
լետարական դիկտատուրայի հաստատումը: Ոչ ոքի մտքով չէր կարող անց-
նել, որ մի խումբ բոլշևիկներ, առանց զենք ու զորքի, առանց պատկառելի
նյութական միջոցների, ծրագրել են տապալելու այնպիսի մի տերություն, որ-
պիսին Ռոմանովների դինաստիան էր, որը երեք դար ահ ու սարսափ էր տա-
րածել ամբողջ Եվրոպայում:
Բոլշևիկների ծրագիրն իրականացվեց, որովհետև Լենինի ստեղծած կու-
սակցությունն օրեցօր առնանում, աճում, ամրապնդվում էր, մերկաց-
նում պրոլետարիատի բոլոր տեսակի թշնամիներին, ամենաբարդ պայման-
ներում մշակում միակ ճիշտ ծրագիր ու տակտիկա, հետևաբար և հաղթահա-
րում իր ճանապարհին եղած դժվարություններն ու խոչընդոտները:
Առաջին ռուսական բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը մեծ
փորձ հանդիսացավ մեր կուսակցության համար, որը Լենինի ղեկավարու-
թյամբ կոփվեց դասակարգային պայքարի բովում, քաղաքական ցույցերի,
զինված ապստամբության, բարիկադային մարտերի վարման փորձ ձեռք բե-
րեց: Համաշխարհային իմպերիալիստական պատերազմի տարիներին երկ-
րորդ ինտերնացիոնալում եղած գրեթե բոլոր կուսակցությունները դավաճա-
նեցին բանվոր դասակարգի գործին: Միակ կուսակցությունը, որը գիտակա-
նորեն ճիշտ տակտիկական և ստրատեգիական գիծ մշակեց, դա Լենինի ստեղ-
ծած բոլշևիկների կուսակցությունն էր: Հաշտության, դեմոկրատիայի և սո-
ցիալիզմի համար նրա մշակած հարցերը դարձան միլիոնավոր աշխատա-
վորների գործունեության ծրագիրը:
Լենինը,— ասված է Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատ-



րաստման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշումում,— ելնելով ռեալ պայմաննե-
րից, կուսակցությանը սովորեցնում էր համարձակ կերպով ստանձնել նախա-
ձեռնությունը, կիրառել ճկուն և բազմազան տակտիկա, օգտագործել դասա-
կարգային պայքարի տարբեր ձևեր ու մեթոդներ: Կուսակցությունը, Լենինը
մշակեցին դեմոկրատական ու սոցիալիստական հեղափոխական վերափո-
խումների ծրագիր, բանվոր դասակարգին, աշխատավոր զանգվածներին քա-
ղաքականապես կազմակերպեցին գրոհելու ինքնակալության և կապիտալիզ-
մի վրա: Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, սոցիա-
լիզմի համաշխարհային-պատմական նվաճումները լենինիզմի ստրատեգիա-
յի ու տակտիկայի մեծագույն հաղթանակն են:
Կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ Ռուսաստանի պրո-
լետարիատը դուրս եկավ վճռական պայքարի և տապալեց ցարիզմը: Իրա-
դրությունը խիստ բարդացավ: Երկրորդ բուրժուա-դեմոկրատական հեղափո-
խության հաղթանակից հետո երկրում ստեղծվեց երկիշխանություն՝ բուր-
ժուական ժամանակավոր կառավարությունը և բանվորների ու գյուղացի-
ների դեպուտատների սովետը: Այդ բարդ կացության ժամանակ զգացվում էր
կուսակցության առաջնորդի բացակայությունը: Վ. Ի. Լենինն արտասահմա-
նից ողջունելով հեղափոխության հաղթանակը, «Նամակներ հեռվից» հոդվա-
ծաշարում իր հիացմունքն արտահայտելով ռուսական պրոլետարիատի հերո-
սական քայլի համար, շտապեց հայրենիք վերադառնալ:
1917 թվականի ապրիլին Լենինն իր հռչակավոր «Ապրիլյան թեզիսներ»-ում
կանխագծեց բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստա-
կանի վերաճելու հանճարեղ պլանը: Նրա՝ «Ո՛չ մի պաշտպանություն ժամա-
նակավոր կառավարությանը», «Ամբո՛ղջ իշխանությունը սովետներին» ծրա-
գրային դրույթները միակ ճիշտ ցուցումը հանդիսացան կոմունիստական կու-
սակցության հաղթական պայքարի համար:
Բոլշևիկյան կուսակցությունը, անշեղորեն ղեկավարվելով իր առաջնոր-
դի կանխագծումներով, հմուտ կերպով գլխավորեց աշխատավոր մասսաների
հեղափոխական շարժումները, ներքին և միջազգային ծանր պայմաններում
օրեցօր իր շուրջը համախմբեց բանվոր դասակարգի նորանոր ջոկատներ:
Վ. Ի. Լենինը արդեն միլիոնավոր մասսաների կողմից ճանաչված
առաջնորդ էր, երբ ձեռնամուխ եղավ անմիջապես վերահաս սոցիալիստական
հեղափոխության նախապատրաստմանը: Հեղափոխության մեծ ստրատեգը
բազմակողմանի վերլուծեց մոմենտի յուրահատկությունը՝ մասսաների դըժ-
գոհությունը ժամանակավոր կառավարության քաղաքականությունից՝ պա-
տերազմի, հաշտության, հողի հարցերում: Հաշվի առնելով իմպերիալիստա-
կան տերությունների՝ պատերազմով զբաղված լինելը, ռուսական բուրժուա-
զիայի անփորձությունը, մենշևիկների ու էսեռների հեղինակազրկումը, հա-
կահեղափոխական ուժերի հարձակման վտանգը, պրոլետարիատի, չքավոր
գյուղացիության, զինվորների զգալի մասի համախմբումը կուսակցության
դրոշի ներքո, բոլշևիկյան կուսակցության համախմբվածությունը, սովետնե-
րի բոլշևիկացումը, պատմության բոլոր հեղափոխությունների պատմական
փորձը, հեղափոխության զինված ուժերի պատրաստականությունը, 1917
թվականի հոկտեմբերի 24-ին (նոյեմբերի 6-ին) Լենինը գրեց իր պատմական
նամակը՝ ուղղված կուսակցության Կենտկոմի անդամներին՝ «Ընկերնե՛ր: Ես
այս տողերը գրում եմ 24-ի երեկոյան, դրությունը ծայրաստիճան կրիտիկա-

կան է։ Պարզից էլ պարզ է, որ այժմ, արդեն հիրավի, ապստամբությունն ուշացնելը մահվան է հավասար։

Ամբողջ եռանդով համոզում եմ ընկերներին, որ այժմ ամեն ինչ մազից է կախված, որ հերթի են դրված այնպիսի հարցեր, որոնք ոչ թե խորհրդակցություններով, ոչ թե համագումարներով են լուծվում, այլ բացառապես ժողովուրդների, մասսայի կողմից, զինված մասսաների պայքարով։

...Սպասել չի կարելի։ Կարելի է կորցնել ամեն ինչ։

...Ոչ մի դեպքում իշխանությունը չթողնել Կերենսկու և Ընկերության ձեռքին մինչև 25-ը, ոչ մի կերպ, գործը վճռել անպայման այսօր՝ երեկոյան կամ գիշերը։

Պատմությունը չի ների հապաղումը հեղափոխականներին, որոնք կարող էին հաղթել այսօր (և անշուշտ կհաղթեն այսօր), ռիսկ անելով շատ բան կորցնելու վաղը, ռիսկ անելով կորցնելու ամեն ինչ։

Կառավարությունը տատանվում է։ Պետք է մինչև վերջ ջախջախել նրան, ինչ էլ որ լինի։

Ելույթն ուշացնելը մահվան է հավասար», (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 278—290, 4-րդ հրատ., Երևան, 1951 թ.)։

Կրակոտ այս տողերը վկայում են հեղափոխության առաջնորդի վճռականությունը, համոզվածությունը, հաստատակամությունը և այն, թե ինչպիսի տագնապ էր ապրում հեղափոխության բոլոր ուժերը մոբիլիզացնելու համար։

Կոմունիստական կուսակցությունը ճշտությամբ կատարելով իր առաջնորդի ցուցումները, գլխավորեց զինված ապստամբությունը և հաղթանակեց։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունը, որը մինչ այդ եղածներից ամենամարտականն էր, իր բացառիկ համաշխարհային-պատմական նշանակությամբ, իրոք հիմնովին վերափոխեց մեր երկրի բոլոր ժողովուրդների կեցությունն ու գիտակցությունը, հանդիսացավ լենինյան հանճարի ու նրա կոփած կուսակցության պայքարի արգասիքը։ Լենինը հոկտեմբերի հաղթանակով ապացուցեց, որ իմպերիալիզմի դարաշրջանում հնարավոր է սոցիալիստական հեղափոխության հաղթանակը մեկ առանձին երկրում։ Նա էր, որ կոնկրետորեն մշակեց ու կիրառեց բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը սոցիալիստական հեղափոխության վերաճելու մեթոդներն ու ձևերը։

Կուսակցության առաջնորդի հոգսերն ավելի ծանրացան նոր իրավակարգի ստեղծման հենց առաջին օրերից։

Լենինն իր բազմաթիվ աշխատություններում, հատկապես «Սովետական իշխանության հերթական խնդիրները» երկում հանգամանորեն վերլուծեց նորաստեղծ իշխանության հրատապ խնդիրները։ Սովետական պետության օրգանների ստեղծումը, նրանց գործունեության ոլորտների սահմանումը, նրանց փոխհարաբերությունների հարցերի մշակումը, կուսակցական, արհմիութենական, կոմերիտական կազմակերպությունների տեղի ու դերի որոշումը պրոլետարական դիկտատուրայի սիստեմում բոլոր-բոլոր մեծ ու փոքր, բարդ ու պարզ խնդիրները, որոնք արծարծված և լուծված են սովետական իշխանության առաջին տարիներին, առնչվում են Վ. Ի. Լենինի անվան հետ։

Բրեստի հաշտության ծանր օրերին, օտարերկրյա ինտերվենցիայի, քաղաքացիական պատերազմի ահեղ տարիներին, ժողովրդական տնտեսության վերականգնման, կապիտալիստական աշխարհի հետ դիվանագիտական հարաբերությունների հիմքերը դնելու բացառիկ բարդ ժամանակահատվածում



մեծ Լենինը հմտորեն առաջնորդեց կոմունիստական կուսակցությանը։

Այդ ամենով չեն սահմանափակվում Լենինի տիտանական գործունեության շրջանակները. նա մշակեց կուսակցության վարելիք նոր տնտեսական քաղաքականությունը, «ով-ում» հարցի լուծման եղանակները և, որ ամենակարևորն է, գիտականորեն կանխագծեց սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման կոմունիստական կուսակցության հոյակապ ծրագիրը։

Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը, անշեղորեն կենսագործելով լենինյան պլանը, պատմական կարճ ժամանակահատվածում կատարեց սոցիալիստական ինդուստրացումը, գյուղատնտեսության կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը, իրագործեց լենինյան ազգային քաղաքականությունը, լիովին կառուցեց սոցիալիզմը մեր երկրում։

Հենվելով մարքսիստական-լենինյան տեսության վրա, խոր վերլուծության ենթարկելով հասարակական զարգացման ընթացքը, կոմունիստական կուսակցությունը որոշում է հասարակության առաջընթացի գլխավոր ուղղությունը և կոմունիզմի կառուցմանը նպատակասլաց, գիտական, հիմնավորված բնույթ է տալիս։ Մեր կուսակցությունն իր բոլոր միջոցառումներում բազմակողմանիորեն հաշվի է առնում ժողովրդի կենսական շահերը, նրա պահանջմունքները։ ՍՄԿԿ-ն սերտորեն կապված է աշխատավորական զանգվածների հետ, արտահայտում ու պաշտպանում է նրանց շահերը։ Դրանով է բացատրվում կուսակցության շարքերի անընդհատ աճը։ ՌՍԴԲ կուսակցության առաջին համագումարին (1898 թ.) մասնակցել են 9 պատգամավոր, որոնք ներկայացրել են կուսակցության մի քանի հարյուր անդամ։ ՍՄԿԿ XXIII համագումարին մասնակցել են հինգ հազար պատգամավոր, որոնք ներկայացրել են կուսակցության 12,5 միլիոն անդամներ ու թեկնածուներ։ 1968 թվականի վերջերին Լենինի ստեղծած կոմունիստական կուսակցության մեջ ընդգրկված էին արդեն 13 միլիոն 180.225 անդամ ու թեկնածու։ Մեր կուսակցության ուժն ու հզորությունը միայն նրա քանակի մեջ չէ, այլև նրա գաղափարական ու կազմակերպական համախմբվածության, նրա անդամների հայացքների ու գործունեության միասնության մեջ։

Պատմության զարգացման ժամանակակից փուլը, ինչպես նշեց ՍՄԿԿ ապրիլյան (1968 թ.) պլենումը, բնութագրվում է սոցիալիզմի և կապիտալիզմի միջև գաղափարական պայքարի սրմամբ։ Այս պայմաններում, կուսակցությունն իր կազմակերպություններից և յուրաքանչյուր կոմունիստից պահանջում է գաղափարական պայքարում լինել անհաշտ և հետևողական, ոչ մի դիրքում չանել գաղափարական հակառակորդին, վճռականորեն, լենինաբար մերկացնել իմպերիալիզմի նենգությունները, ավելի ևս հարձակողական դարձնել մեր ամբողջ գաղափարական պայքարը։

Լենինի հանճարն այսօր էլ շարունակում է լուսավորել կոմունիստական կուսակցության պայքարի ուղին, մի ուղի, որով սովետական ժողովուրդն ընթանում է հաղթանակից հաղթանակ։ Այժմ էլ մեր կուսակցությունը և աշխարհի բոլոր հետևողական մարքսիստական կոմունիստական ու բանվորական կուսակցություններն իրենց գործունեության ընթացքում միշտ օգտվում են լենինիզմի գաղափարական զինանոցից։

Շուտով սովետական ժողովուրդը, համայն աշխարհի աշխատավորները նշելու են Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակը։ Առաջնորդի անմահ հիշատակի հավերժացման լավագույն արտահայտությունը նրա վեհ գործին նվիրվածությունն է ու մեր հաղթանակների բազմապատկումը։

Ս. Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

# ԼԵՆԻՆԻ ԿԵՐՊԱՐԸ ՍՈՎԵՏԱՀԱՅ ԱՐՎԵՍՏՈՒՄ

Սովետական, ինչպես և սովետահայ արվեստի առավել ցայտուն ու մնայուն արժեքներն ստեղծվում են լենինյան տեսական ժառանգության, լենինյան գաղափարախոսության, իրականության գեղարվեստական ընկալման և արտացոլման լենինյան ուսմունքի, արվեստի ղեկավարության նկատմամբ ցույց տրվող լենինյան մեթոդների ու նորմերի կենարար ազդեցությամբ: Սոցիալիզմի դարաշրջանի ազգային բոլոր արվեստների համար ուղեցույց նշանակություն ունեն դրանց կուսակցականության ու ժողովրդայնության լենինյան սկզբունքները: Մարքս-լենինյան էսթետիկան արվեստի պատմության մեջ նրա զարգացման նոր ու բարձրագույն աստիճանի տեսական հիմքն է:

Երախտավոր հայ գեղագետը, ներշնչված լենինյան գաղափարների անըսպառ հարստությամբ ու լենինյան կերպարով, նվիրում է իրեն այդ կերպարի կերտման մեծ ու շնորհակալ նպատակին: Եվ ահա՛: Ամենամարդ մարդու, հանճարեղ մտածողի, հեղափոխության ստրատեգի, Հոկտեմբերի ղեկավարի, համաշխարհային կոմունիստական շարժման առաջնորդի՝ Վլադիմիր Իլյիչ Լենինի կերպարը հայ արվեստում գտնում է իր ուրույն, ինքնատիպ ու լայն դրսևորումը: Մեր ժամանակի արվեստագետը, նաև հայ արվեստագետը, դեռ չեն հասել նրա անսահման վեհության ու խորության: Լենինի գործի պատմական նշանակությունն ու անօրինակ մասշտաբները, նրա անընդգրկելի ներգործությունը մարդկության ճակատագրի վրա, արվեստագետին ներշնչում են նորանոր գաղափարներ ու զգացումներ: Լենինը հավերժ է: Անընդմեջ առաջադիմում է արվեստը, միշտ և շարունակ ներշնչված նրա կերպարով:

* * *

Համառուսաստանյան պրոլետարական հեղափոխական շարժումը, հայ լենինյանների միտքը և խոսքը, լենինյան հայկական մամուլը խոշոր դեր են խաղում Լենինի կերպարի արտացոլման համար հայ արվեստում: Հեղափոխությունը և Լենինը միասնական են: Լենինը, նրա կերպարը ծնվում են հեղափոխության բովում:

Հ. Հակոբյանի պոեզիան, բոլշևիկ բանաստեղծների երկերը, Արազու, Կուրղինյանի հեղափոխական մոտիվները, կոմունիստ Վ. Տերյանի ստեղծագործությունն արդեն իսկ նշանավորում են հեղափոխականի կերպարի «մուտքը» հայ արվեստ:

1917 թ. սեպտեմբեր-հոկտեմբեր ամիսներին գրված Ի՞նչ է ասում Լենինը գյուղացիներին բրոշյուրում Վահան Տերյանը պարզ ու մատչելի եղանակով շարադրում է Լենինի հայացքները գյուղի և գյուղացիական հարցի վերաբերյալ: Լենինը, կոմունիստ-բոլշևիկների առաջնորդը, կոմունիստական կուսակցությունը կոչ են հայտարարել բոլոր կեղեքիչներին, բոլոր հողատեր ու փողատեր աղաներին, ժողովրդի բոլոր կեղծ ու սուտ բարեկամներին, բոլոր գառան մորթի հագած գայլերին,— գրում է Տերյանը[1]: Հեղափոխության, լենինյան ոգուն հավատարիմ բանաստեղծը կոչ է արձակում.

Զարթե՛ք, երգեր իմ, ժամ է հնչելու,
Զինելու նորից գնդերը ցրիվ,
Մեռած սրտերը կյանքի կոչելու
Եվ բորբոքելու զայրույթ ու կռիվ...

Նա միաժամանակ հավաստում է Լենինի անսահման ժողովրդականությունը Ռուսաստանում:

Անցյալում ճնշված ու ստրկացված բոլոր ազգերին, ժողովուրդներին, ցեղերին խաղաղություն ու վերածնունդ ավետող Հոկտեմբերյան մեծ հեղափոխության, լենինյան ամենախոր հումանիստական գաղափարների, ռուս ժողովրդի պատմական առաքելության գիտակցությունը Հովհ. Թումանյանին տալիս է Հայաստանի, հայ ժողովրդի փրկության, խաղաղության, վերածննդի պայծառ հավատը: Իսահակյանը, Շիրվանզադեն, Աբելյանը վերադառնում են նոր հայրենիք՝ լենինյան դարաշրջանի գաղափարներով, լենինյան հումանիզմով վերածնված:

Լենինիզմը, Լենինի կենդանի կերպարը նորագույն՝ սովետահայ արվեստի զարգացման առաջմղիչ ուժն է: Նրա լավագույն ու հռչակված վարպետների ստեղծագործություններում մարմնավորված լենինյան միտքն ու կերպարը աշխատավորական լայն զանգվածներին դաստիարակում են կոմունիզմի իդեալներով, բարձրագույն տիպի բարոյականությամբ՝ կոմունիստական բարոյականությամբ: Նորագույն արվեստի ամենադեմոկրատական ոգին լենինիզմի ծնունդն է: Մարդու պանծացումը արվեստում լենինյան հումանիզմի արգասիք է:

Հ. Հակոբյանի, Ե. Չարենցի, Ա. Վշտունու, Դ. Դեմիրճյանի, Ստ. Զորյանի, Ա. Բակունցի, Ն. Զարյանի, Գ. Սարյանի, Գ. Էմինի, արձակագիր ու բանաստեղծ գրողների ամենասրտառուչ խոսքը, ստեղծագործական միտքը, նոր մարդու կերպարի կերտման նրանց արգասավոր աշխատանքը ծնվել ու ծնվում են լենինիզմի ոգեշունչ ազդեցությամբ:

Դեռ 1920-ական թվականներին ըստեղծված Աստվածները խոսեցին, Բոլշևիկ է Շիր-Կանալը, Վոլխովստրոյ, Լենինգրադյան պոեմ էպիկական երկերում Հ. Հակոբյանը կենդանի մարմնավորում է լենինյան գաղափարները երկրի սոցիալիստական վերաշինության մասին, երգում նոր մարդու ինտերնացիոնալիստական զգացմունքները:

Նոր աստվածը հենց այդ նոր մարդն է՝ բանվորն ու գյուղացին.

Չէ՞ որ մարդածին աստվածներն են այն
Աշխարհիս համայն,
Որոնք նոր ուղի, նոր կյանք են կերտում
Մարդկության համար:

Ստեղծագործ աշխատավորի, «հասարակի» մեծարումը արվեստում ուղղակիորեն բխում է ժողովրդի ուժերի հանդեպ դրսևորվող լենինյան անըսպառ հավատից: Հեղափոխությունը և Լենինը, սոցիալիզմը և Լենինը՝ այս թեմաներն է մշակում հայ արվեստը, այս մտքերով է ապրում ազգային գեղագետը, ըմբռնելով Լենինի ու լենինիզմի մեծ դերը հեղափոխության հաղթանակի ու անդասակարգ հասարակարգի կառուցման գործում:

Նույն ժամանակ հայ արվեստում մեծ տեղ է գրավում գաղութային ու ճնշված ազգերի ազատության և՛ մոտիվը, և՛ գաղափարը. դրանք ստացան իրենց ծավալուն ու գունեղ արտահայտությունը՝ ճնշված ու մաքառող ժողովուրդների հանդեպ հայ գեղագետի տածած ամենաջերմ համակրանքով ու սիրով:

Շատ տարածված են Գ. Սարյանի և Ա. Վշտունու արևելյան պոեմները: Լենինը «վառել է հույսի հորդ հրդեհ հին Արևելքի հոգում»,— երգում է Վշտունին, պատկերելով արևելյան ժողովուրդների ընդվզումներն ընդդեմ իմպերիալիզմի: Նրանց մտքի զարթոնքն ու պայքարը արտահայտված են գեղարվեստական կոնկրետ պատկերներով: Պատմության շրջապտույտը մտած բոլոր գույնի ու ցեղերի ազատագրության լենինյան գաղափարի դրսևորումն է հայ գեղագետի նոր խոսքը՝ ուղղված միլիոնների արդարացի դատին:

Լենինիզմը կողմնորոշում է արվեստագետին՝ ճիշտ հասկանալու իրականությունը և ժամանակը, զինում է նրան՝ իր տաղանդով ու արվեստով ժողովրդին ծառայելու գիտակցությամբ: Սոցիալիստական ռեալիզմը արվեստի կուսակցականության ու ժողովրդայնության լենինյան սկզբունքների կիրա-

[1] Վահան Տերյան, Երկերի ժողովածու, հատ. III, էջ 364, Երևան, 1961 թ.:

գործը։ Պատասխանատվության զգացումը նյութի նկատմամբ, ստեղծագործական անկանգ որոնումները խոշոր գրողին հուշում են մի միտք — ավելի լավ, ավելի խոր պատկերել առաջնորդի կերպարը։

Ծնվում է Ն. Պոգոդինի տրիլոգիան — Հրացանավոր մարդը, Կրեմլյան կուրանտներ, Երրորդը՝ պաթետիկական։ Այս տրիլոգիայի հետ բեմական լենինիանան կազմում են Կ. Տրենյովի Նևայի ափին, Ա. Կոռնեյչուկի Պրավդան, Ա. Կապլերի ու Տ. Զլատոգորովայի Լենին, Ա. Կապլերի Լենինը 1918 թվականին, Ն. Պոպովի Ընտանիք, Շ. Դադիանու Կայծից, Բ. Գորբատովի Հայրերի պատանեկությունը, այժմ՝ Մ. Շատրովի Հուլիսի 6-ը և այլ պիեսներ։

Սովետահայ թատրոնում բեմական մարմնավորում է ստանում պոգոդինյան ամբողջ տրիլոգիան՝ դրամատուրգիական լենինիանայի լավագույն մասը։ Լենին, Լենինը 1918 թվականին, Կայծից, Ընտանիք, Հայրերի պատանեկությունը պիեսները հայ բեմում գտնում են իրենց պատշաճ բեմականացումը։

1938 թ. մայիսն է։ Գ. Սունդուկյանի անվան թատրոնում բեմադրվում է Անհանգիստ ծերություն դրաման։ Պրոֆեսոր Պոլեժաևի դերը կատարում է Վ. Վաղարշյանը։ Լենինը գործող անձ չէ, բայց նա կա Պոլեժաևի հոգում։ Գիտնականի կյանքը նոր ընթացք է ստանում առաջնորդի միջամտությամբ։ Դերասանը ցայտուն է պատկերում հերոսի մտքի մեջ կատարվող բեկումը դեպի նոր դեմոկրատիան։

1938 թ. նոյեմբերի 5-ին հանդիսականը դիտում է Հրացանավոր մարդը բեմադրության պրեմիերան։ Վ. Վաղարշյանն ստանձնել էր Լենինի դերը։ Նախապատրաստական խոշոր աշխատանք էր տարված։ Գտնվում է կերպարի արտաքինը, գտնվում է կերպարի ներքին զգացողությունն արտահայտող բեմական խիստ տպավորիչ ձևը։ Բեմի վրա է Լենին-հռետորը, պատկերվում է առաջնորդը ժողովրդի հետ ունեցած իր անքակտելի կապերով։ Ներկայացման բարձրակետը Լենինի ու հրացանավոր մարդու՝ շարքային զինվոր Շադրինի (Ա. Ավետիսյան) տեսարանն է։

Գ. Սունդուկյանի անվան թատրոնում 1940 թ. մարտի 22-ին տրվում է լենինյան երրորդ բեմադրությունը՝ Լենին ներկայացումը։ Այս շարքի բոլոր ներկայացումների հեղինակն է ռեժիսյոր Վ. Վարդանյանը։ Լենինի դերակատարը դարձյալ Վ. Վաղարշյանն է։ Մի գիծ, մի հատկություն ընդգծվեց այս նոր ներկայացման մեջ՝ Լենին-մտածողը։ Հանդիսականն անկաշառ ու խոր հավատով է լցվում ռեալիստական արվեստով հաստատվող կենսական ու գեղարվեստական ճշմարտության հանդեպ։

Վաղարշ Վաղարշյանը ցույց թե Զարենցն է բեմի վրա՝ իր արվեստի քաղաքացիական պաթոսով, ինտելեկտով, լենինյան կերպարի հանդեպ տածած անմիջական ու պայծառ սիրով։

Լենինի կերպարն արտացոլող պիեսների հեղինակներից և ոչ մեկը, այդ պիեսները բեմադրող թատրոնները բնավ էլ այն կարծիքին չեն, թե իրենց հաջողում է մարմնավորել լենինյան կերպարն իր ողջ խորությամբ։ Առաջնորդը պատկերվում է մի քանի տեսարաններում, Կայծից պիեսում՝ նույնիսկ մի տեսարանում։ Հանճարեղ ուսուցչի կյանքի ու գործունեության առանձին դրվագներ են պիեսներում ու բեմի վրա. խոսում է Լենինը ստուգապես ու հավանաբար. այնպես, ինչպես կխոսեր նա տվյալ դրության մեջ, տվյալ գործող անձի հետ։ Սակայն արվեստի խնդիրը որքան բարդ, նույնքան ազնիվ է՝ ընդհանրացումներ անել, ընդգծել կարևորն ու էականը։

Հնագույն դերասան Իս. Ալիխանյանը կատարում է Լենինի դերը հենց Կայծից ներկայացման մեջ, Թբիլիսիի Ստ. Շահումյանի անվան հայկական թատրոնում։ Հասարակայնության լայն շրջաններում արտիստի դերակատարումը հնչում է իբրև արվեստագետի նոր խոսք։ Ալիխանյանը խոստովանում է. «Ավելի բան քառասուն տարի է, ինչ ես հայ բեմին եմ նվիրված որպես դերասան և խաղացել եմ բազմաթիվ դերեր, ստեղծագործել անհամար տիպեր... սակայն երբեք ես չեմ ապրել ու զգացել այնպիսի նվիրական զգացմունք ու ակնածություն դեպի դերը, ինչ ես ապրել ու զգացել եմ Լենինի, այդ մեծագույն մարդու դեմքը պատկերելու աշխատանքը կատարելիս»։ Շալվա Դադիանին ուներ բոլոր հիմքերն ասելու. «Սրտանց շնորհավորում եմ հայկական թատրոնի կոլեկտիվին նոր նվաճման համար և խորապես երջանիկ եմ, որ իմ պիեսը գտավ այդպիսի հաջողություն եղբայրական հայ թատրոնի բեմում»։





Կայծից հետո ռեժիսյոր Ա. Աբարյանը նույն թատրոնում բեմադրում է Կրեմլյան կուրանտներ ներկայացումը։ Ն. Պոգոդինի տրիլոգիայի երկրորդ մասում Լենինը պատկերված է սովետական պետության տնտեսական, քաղաքական ու կուլտուրական կյանքի և շինարարության առաջին տարիներին։

Լենինի դերը կատարում է Վ. Գալստյանը։ Ապագա հաջողության նախապայմաններից մեկը դերասանը համարել է լենինյան տեսական ժառանգության, կենդանի կերպարի ուսումնասիրությունը, ամենաերկրային, ամենամարդ-մարդու բնավորության կերտումը։ Պարզության, կամքի ու մտքի, խոսքի ու գործի միասնությունը պետք է լիներ կերպարի մեջ։ Ներկայացման լենինյան կերպարը մարմնավորում է կոմունիզմի շինարարության գաղափարը։

1940 թվական։ Հայկական բեմական լենինիանան հարստանում է մի նոր ներկայացմամբ։ Լենինականի Ա. Մռավյանի անվան պետական թատրոնում բեմադրվում է Լենին պիեսը. ռեժիսյորն է Վ. Աճեմյանը, Լենինի դերակատարը՝ Ա. Ոշտունին։ Նա վերստին ընդգծում է կերպարի արտաքինը, ներկայացնում իր հերոսին գյուղացիների ու բանվորների հետ ունեցած զրույցների պահին՝ իբրև պարզ, իբրև մտերիմ մարդու։ Բեմի վրա աչքի է ընկնում կերպարի մարդկայնությունը, անմոռաց են արտիստի ժպիտը, ժեստը, լիաթոք ծիծաղը։ Ոշտունին նոր գծեր բացահայտեց լենինյան բեմական բնավորության մեջ։ Իր այդ հատկություններով էլ նա հանդես եկավ Հայրերի երիտասարդություն բեմադրության մեջ, Երևանի Ա. Միկոյանի անվան պատանի հանդիսատեսի թատրոնի բեմահարթակի վրա (ռեժիսյոր Հր. Ղափլանյան)։ Լենինին թատրոնը ցույց է տալիս կոմերիտմիության III համագումարում, ուր նա արտասանում է իր պատմական ճառը երիտասարդական միությունների խնդիրների մասին։

Լենինականի թատրոնի Լենին բեմադրության մեջ առաջնորդի նոր դերակատարը Արծ. Հարությունյանն է։

Յուրաքանչյուր մարդ, մանավանդ յուրաքանչյուր արվեստագետ, իր սեփական պատկերացումներն ունի լենինյան կերպարի վերաբերյալ։ Պատկերացումների բազմազանությամբ ու հարստությամբ է պայմանավորված դահլիճի, հանդիսականի, գեղագետի մոտեցումը առարկային։ Արծ. Հարությունյանն այն եզրակացության է հանգում, որ Լենինի՝ «տիտանական այդ մարդու կերպարը... սպասում է դեռևս ավելի կատարյալ դրամատուրգի ու դերակատարման։

Մեր կատարածը առաջին երկչոտ քայլերն են»[1]։

Սակայն հաջողությամբ պսակված այդ «երկչոտ» քայլն էլ խոր բավականություն է պարգևում բեմի վարպետներին։ «Այդ օրը իմ ծննդյան օրն եմ համարում»,— գրում է դերասան Ա. Արզումանյանը՝ Լենինի դերակատարը Բաքվի հայկական թատրոնում, Լենինը 1918 թվականին ներկայացման մեջ (ռեժիսյոր Ա. Հովսեփյան)։ Լենինյան կերպարում արտիստն ընդգծում է մարդուն, բացառիկ բարոյական ուժ ներկայացնող անձնավորության դաստիարակման խոշորագույն նշանակությունն արդի մարդու համար։

Այսպես, ահա՛, հայկական թատրոնում, ամեն մի նոր բեմադրությամբ հանդիսականը դիտում է լենինյան կերպարի մի նոր հատկանիշի դրսևորումը։

Ընտանիք ներկայացմամբ, օրինակ, բեմի վրա արտացոլվում է Լենինի պատանեկությունը։ Գ. Աշուղյանը ձգտում է ցույց տալ կերպարի հուզական կողմը, հեղափոխական պայքարի ռոմանտիկայով ոգեշնչված պատանի Վոլոդյայի բնավորությունը։ Բեմադրող Ա. Գուլակյանը լենինյան կերպարը ներկայացնում է նաև Ստանիսլավսկու անվան թատրոնում, Կրեմլյան կուրանտներում, դերասան Տեր-Սեմյոնովի կատարմամբ։ Այդ այն ներկայացումն էր, որ 1956 թ. ցուցադրվեց Մոսկվայում, հայկական արվեստի տասնօրյակին։

Պատանի հանդիսատեսի թատրոնում Ա. Գուլակյանը բեմադրում է Մ. Շատրովի Հանուն հեղափոխության պիեսը։ Լենինի դերակատարներն են Ա. Ջիգարխանյանը և Ջ. Տեր-Կարա-

1. Տե՛ս Լենինի կերպարը հայ բեմում, ժողովածու, էջ 73, Հայկական թատերական ընկերություն, Երևան, 1957։







պետյանը։ Առայսօր լենինյան ամենաթարմ ներկայացումը՝ Երրորդը՝ պաթետիկականն է. Լենինի դերում Բ. Ներսիսյանն է, բեմադրությունը Վ. Աճեմյանինը։

Նիկոլայ Պոգոդինի հռչակավոր տրիլոգիան հայ բեմի վրա գտնում է իր ամբողջական արտահայտությունը։ Երրորդը՝ պաթետիկականը Լենինին պատկերում է նոր տնտեսական քաղաքականության կիրառման տարիներին։ Հարցերն ու պրոբլեմները շատ են, իրադրությունը՝ բարդ, մարդկանց մտածողության ու հոգեբանության մեջ կատարվող տեղաշարժերը ծնում են նոր, է՛լ ավելի ծանր առեղծվածներ։

Լենինյան հանճարը ցույց է տալիս ուղին՝ հարցերի ու առեղծվածների ճիշտ լուծման ուղին։ Բ. Ներսիսյանը բեմում ներկայացնում է մտածող, համեստագույն մարդ Լենինին։

Ի նշանավորումն Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 40-ամյակի, Ա. Սպենդիարյանի անվան Լենինի շքանշանակիր օպերայի և բալետի պետական թատրոնում բեմադրվում է Ա. Բաբաևի Արծվաբերդ արդիական օպերան։ Լիբրետոյի հեղինակներն են՝ Զ. Վարդանյանը, Գ. Բորյանը։ Այս ներկայացման մեջ ստեղծվեց ունկնդրի կողմից ջերմորեն ընդունված Ասք Լենինի մասին երգը։ «Հասարակ» մարդը Լենինին է ուղղում երգը.

Քո եկած ճամփին մատաղ,
Քո բերած կյանքին մատաղ,
Քո խոսքին, խելքին,
Քո արդար գործին մատաղ...
Կրկներգի վերջին տողն է.
Հարազա՛տ, իմաստո՛ւն, Լենին։

Պատմահեղափոխական անցյալը և արդիականությունն արտացոլող հայկական օպերային գրականության մեջ, մանավանդ Լուսաբացին օպերայում պարզորոշ երևան է գալիս լենինյան գաղափարների կենարար ուժը նոր կյանքն արտացոլելու և նոր մարդու կերպարը կերտելու արվեստում։

Հայ կոմպոզիտորները հորինում են երգեր՝ նվիրված Լենինին։

Երաժշտական ավելի բարդ ժանրերում հանդես են գալիս արդի հայտնի ու հռչակված կոմպոզիտորները։ Լայնորեն տարածված է Ա. Խաչատրյանի Ձոն Վ. Ի. Լենինի հիշատակին ստեղծագործությունը։ Ա. Հարությունյանը և է. Միրզոյանը գրում են Կանտատ Լենինի մասին երկը։

Հանրապետության մեջ հսկայական գործ է արվում՝ մասսայականացնելու ժողովրդական երգը, զարգացնելու բարձր ճաշակի, պարզ ու վեհ, բազմաժանր երաժշտություն։ Ունկնդիրները Հայաստանում շատ հաճախ լսում են երաժշտական այն բոլոր երկերը, որոնք սիրված են եղել Վ. Ի. Լենինի կողմից։

* * *

Հայ կերպարվեստը ևս ստեղծում է իր լենինիանան, մեր երկիրը զարդարում հեղափոխության, սոցիալիստական մտքի, սոցիալիստական ու կոմունիստական շինարարության առավել աչքի ընկնող գործիչների հիշատակին կանգնեցված գեղարվեստական կոթողներով։ Լավագույն հատկություններով օժտված մարդն՝ իր բնավորությամբ անմահանում է կերպարվեստի մեջ։

Հայկական ինքնատիպ արվեստի զգացողությամբ, նրա տարրերի օգտագործմամբ, հայկական մարմարով լենինականցի քանդակագործ Ս. Մերկուրովը կերտել է Լենինի մոնումենտալ կերպարը. այն կանգնեցված է Երևանի՝ Լենինի հրապարակում։ Հայ ժողովրդի վերածննդի խորհրդանիշն է այդ բարձրարվեստ ստեղծագործությունը։ Դարձյալ Երևանում, նաև Լենինականում, Գորիսում, Կամոյում վեր են խոյանում Լենինի կերպարի քանդակագործական կերտումները։ Ս. Ստեփանյանը, Ա. Սարգսյանը, Գ. Ահարոնյանը, Հ. Բեջանյանը, Ս. Մանասյանը հետևողական ու հարատև աշխատանքով ստեղծում են առաջնորդի քանդակագործական կերպարը։ Նրանք տարբեր գծեր ու հատկություններ են բացահայտում լենինյան բնավորության մեջ։ Սակայն Լենին-հռետորը, Լենին-առաջնորդը միշտ առկա է հայ քանդակի մեջ։

Արդեն հուզիչ է այն փաստը, որ 1924 թ. հունվարյան մեծ վշտի օրերին Մ. Սարյանը նկարում է Լենինի խոշոր դիմանկարը։ Այն ի ցույց է դրվում բազմահազար աշխատավորների սգո երթին։ Հայտնի է Ս. Առաքելյանի Լենինը Ռազլիվում գործը։ Դ. Նալբանդյանը շատ անգամ անդրադառնում է լենինյան կերպարին, ստեղծում մի շարք կտավներ, որոնց թվում Լենինը և Շահումյանը Ստոկհոլմի համագումարում, Վ. Ի. Լենինը Ա. Մ. Գորկու մոտ (Ապասիոնատա) կոմպոզիցիոն աշխատանքները։

Գեղանկարչության ու գրաֆիկայի մեջ լենինյան կերպարը դառնում է Հ. Ավետիսյանի անընդմեջ որոնումների առարկան. դրանց արգասիքն է Լենինը Նևայի ափին կտավը։ Ինքնատիպ է Հ. Ռուխկյանի Լենինը և Շահումյանը Շվեյցարիայում գործը։

Հ. Կոջոյանը, Ա. Ղարիբյանը, Ռ. Նանուշյանը և ուրիշներ ստեղծում են լենինյան կերպարին նվիրված մեծ թվով երկեր, գրաֆիկ գործեր, պլակատներ։ Հիշարժան են երկու աշխատանք. Ռ. Նանուշյանի պլակատը՝ Փոթորիկն անեղ, թող ուժգին պայթե (Լենինը Գորկու հետ), Վ. Բեգլարյանի՝ Բոլոր ազգերը կհասնեն սոցիալիզմին արտահայտիչ պլակատը, ինչպես և Ռ. Բեդրոսյանի փաստագրությունը։ Սրա նյութն է Լենինը և Հայրենական մեծ պատերազմը (Լենինի հուշարձանի մոտով քայլող մարտիկները գնում են պաշտպանելու Լենինգրադը)։

Կիրառական արվեստում (գորգագործություն և այլն) հատկապես Դ. Ղափանցյանի էսքիզներով հյուսված են լենինյան կերպարին նվիրված, նաև հանրապետության սահմաններից դուրս ճանաչում գտած ստեղծագործություններ։

* * *

Լենինյան գաղափարների մարմնավորումը արվեստում, լենինյան կերպարի գեղարվեստական կերտումը նոր բովանդակություն, նոր էություն է հաղորդում արվեստին։ Ազգային սովետական գեղագետը դուրս է գալիս լայն ասպարեզ, ընդգրկում մինչ այդ անհնար, անիրագործելի գեղարվեստական իդեալների աշխարհը։ Վերանում է ամենայն սահմանափակվածություն արվեստում, արվեստագետի մտքում։ Լենինյան գաղափարները, լենինյան կերպարը ռեալիստական, կուսակցական ու ժողովրդային արվեստի զարգացման մեծագույն խթանն են։

Ակնառու են հայ արվեստի նվաճումները լենինյան կերպարի դրսևորման ու պատկերման ասպարեզում։ Ես կանգ եմ առել նվաճումների վրա։

Վ. Ի. Լենինի ծննդյան հարյուրամյակը նոր հորիզոններ է բացում արվեստի առաջ՝ նոր ստեղծագործություններով ավելի խոր, ավելի ցայտուն կերտելու լենինյան կերպարը, որը մեծագույն պատասխանատվության գործ է։ Այն պահանջում է արվեստագետի հոգևոր ուժերի լարում։ Նրա ստեղծագործական փորձը, դիրքորոշումը, միտքն ու զգացմունքային աշխարհը, առարկայի խոր իմացությունը պետք է հնարավորություն ընձեռեն՝ ստեղծելու լենինյան կերպարն իբրև խոշոր ընդհանրացում։ Գրողը, ռեժիսյորը, դերասանը, նկարիչը, քանդակագործը կոմպոզիտորը անշուշտ, գիտեն, որ լենինյան կերպարն անընդմեջ ու անկանգ զարգանում է միլիոնների գիտակցության մեջ։

Արվեստագետի խնդիրն է՝ հասնել վեհ կերպարի պատկերման միշտ բարձր աստիճանին։

Այս բարդ, բայց ազնիվ խնդրի կենսագործումը կարող է կրկնապատկել գեղարվեստական լենինիանայի նվաճումները հայ արվեստում։

Կ. Մ. ԱՎԵՏԻՍՅԱՆ

# ՅՈԶԵՖ ԴԻՑԳԵՆԻ ՈՒՍՄՈՒՆՔԻ ԼԵՆԻՆՅԱՆ ԳՆԱՀԱՏԱԿԱՆԸ

Յոզեֆ Դիցգենը եվրոպական բանվորական շարժման անցյալ դարի ականավոր տեսաբան գործիչներից է։ Լինելով բանվոր, ինքնուս փիլիսոփա, նա իր գիտակցական կյանքը նվիրաբերեց բանվոր դասակարգի սոցիալական ազատագրման մեծ գործին։ Նրա փիլիսոփայական աշխատություններում, մարտընչող մատերիալիզմի դիրքերից, լուսաբանված է փիլիսոփայական հոսանքների պայքարը։

Դեռևս անցյալ դարի 60-ական թվականներին, երբ Մարքսն ու Էնգելսն զբաղված էին պատմական մատերիալիզմի մշակմամբ, Դիցգենը նկատեց, որ իմացաբանությունը, արտահայտելով մտքի օբյեկտիվ ընթացքը, կոչված է մի այնպիսի միջոց լինելու, որով մարդը պետք է ճանաչի ինքն իրեն, գիտակցի իր հասկացությունների, պատկերացումների հասարակական բնույթը։

Լենինը բարձր էր գնահատում գերմանացի մտածողի մատերիալիստական հայացքները՝ ուղղված ամեն տիպի ռևիզիոնիզմի դեմ։ «Մեր բոլոր ռևիզիոնիստները,— գրում է Վ. Ի. Լենինը,— զբաղվում են մատերիալիզմի հերքումով, ընդ որում ձևացնելով, որ իրենք իսկապես հերքում են միայն մատերիալիստ Պլեխանովին և ոչ թե մատերիալիստ Էնգելսին,— ոչ թե Յոզ. Դիցգենի մատերիալիստական հայացքները,— և այնուհետև՝ որ իրենք մատերիալիզմը հերքում են «նորագույն» ու ժամանակակից «պոզիտիվիզմի, բնագիտության և այլ տեսակետից» (**Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ**, 1958, էջ 7)։

Դիցգենի աշխատություններում հանգամանորեն շարադրված է ճշմարտության պրոբլեմը, որը հանդիսանում է նրա թեորիական ժառանգության առանցքը։ Չնայած այն բանին, որ ճշմարտության վերաբերյալ Դիցգենի ուսմունքը նպաստել է ժամանակի դիալեկտիկական մտածողության հաղթանակին, այնուամենայնիվ, փիլիսոփայության պատմության մեջ չէր գրավի այն տեղը, որն ունի այժմ։ Եվ դա, առավելապես շնորհիվ Լենինի գնահատականի։

Ճշմարտության պրոբլեմը, ինչպես ցույց է տալիս մարդկային իմացության զարգացման պրակտիկան, եղել և մնում է ամեն մի գիտության կենտրոնական հարցը։ Սակայն գիտության համար այն ինքնին նշանակություն ունենալ չի կարող, քանի դեռ այդտեղ հաստատված հասկացությունների սիստեմը



հակասության մեջ չի մտել բնական կամ հասարակական նոր օրինաչափության հետ։

Ընդունելով ֆիզիկական հասկացությունների պատմական զարգացման իմացաբանական բնույթի ճանաչման անհրաժեշտությունը, Նիլս Բորը գրում էր. «Ֆիզիկական գիտությունը կարևոր է նաև նրանով, որ այն ժամանակ առ ժամանակ առիթ է տալիս վերանայելու և կատարելագործելու հասկացությունների մեր սիստեմը, որպես իմացության գործիք» (**Ատոմային ֆիզիկան ու մարդկային իմացությունը**, 1963, էջ 12)։

Դիցգենը, քննելով մարդկային գիտելիքների կոնկրետ բնույթի և ճշմարտության փոխհարաբերության հարցը, նպատակ ուներ ցույց տալ, որ ճշմարտության դիալեկտիկական լուծումն առնչվում է մատերիայի, դրա առավել ընդհանուր հատկությունների՝ ատոմի, մասսայի, էներգիայի կոնկրետ բնագիտական պատկերացումների հետ։ Սրանք հիմնավոր հասկացություններ են։ Իսկ հիմնավոր հասկացություններն ընդհանրական են և տրամաբանական օղակի դեր են խաղում գիտության մասնագիտական հասկացությունների շրջանակներից փիլիսոփայության ոլորտն անցնելու պրոցեսում։

Տեղին է հիշել նորագույն ֆիզիկայի հաստատման հետ կապված ճգնաժամը, երբ մատերիայի կազմավորման վերաբերյալ ձեռք բերված նոր հասկացությունները՝ ատոմի տրոհելիությունը, էլեկտրոնի հարաբերական կայունությունը, էլեկտրամագնիսային մասսան, տարրական մասնիկների փոխադարձ փոխակերպումը և այլն, որոշ բնագետների շրջանում տարակուսանք էին առաջացրել ֆիզիկայի բուն հիմքերի նկատմամբ։

Բնագիտական նոր հայտնագործությունների շնորհիվ օբյեկտիվ իրականության նկատմամբ եղած պատկերացումների պատմական փոփոխությունը հանգեցրեց ֆիզիկայի ճգնաժամին։ Դիալեկտիկական մտածողության նվաճումներին անտեղյակ ֆիզիկոսների մի զգալի մասը կասկածի տակ դրեց աշխարհի մատերիալիստական ըմբռնման բնագիտական հիմունքներին։ «Ժամանակակից ֆիզիկայի ճգնաժամի էությունն այն է,— գրում էր Վ. Ի. Լենինը,— որ հին օրենքներն ու հիմնական սկզբունքները խորտակվում են, գիտակցությունից դուրս գտնվող օբյեկտիվ ռեալությունը մի կողմ է նետվում, այսինքն՝ մատերիալիզմը փոխարինվում է իդեալիզմով և ագնոստիցիզմով» (**Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ**, 1958, էջ 327—328)։

Ի տարբերություն նրանց, ովքեր սահմանափակվում էին իմացության աղբյուրի օբյեկտիվության հաստատմամբ, Դիցգենը քննադատում էր նաև մարդկային իմացության վերջնական սահմանի վերաբերյալ մետաֆիզիկական հայացքները՝ կապված մատերիայի կազմության նոր բնագիտական պատկերացումների հետ։ Նա գտնում էր, որ տվյալ դարաշրջանի բնագիտությունն այն փորձաքարն է, առանց որի հնարավոր չէ իրագործել աշխարհի մատերիալիստական ըմբռնման հիմնական սկզբունքների համաձայնեցումը մարդկային իմացության պատմական զարգացման կոնկրետ բնույթի հետ։

Ուստի, Դիցգենի մոտ իմացության պատմական բնույթի հիմնավորումը կատարվում է հասկացությունների կոնկրետության, դրանցում արտացոլվող օբյեկտիվ ճշմարտության դիալեկտիկական միասնության հարցադրման ձևով։ Դեռ **Մարդու գլխի աշխատանքի էությունը** աշխատության մեջ Դիցգենն արտահայտեց այն միտքը, որ մարդկային գիտելիքների հանդեպ ամեն տեսակ սկեպտիկական վերաբերմունք սկսվում է այնտեղ, որտեղ կասկածի տակ է առնվում դրանց կոնկրետ բովանդակության օրինաչափ կապն իմացության աղբյուրի

միասնական բնույթի հետ, որը մեզ շրջապատող նյութական իրականությունն է։
Մարդկային գիտելիքների սահմաններն ընդունելու, դրանց օբյեկտիվ բո-
վանդակությունը բացասելու միջև սկզբունքային ոչ մի տարբերություն չկա։
Առաջինը, ժխտելով մարդկային գիտելիքների զարգացման ամեն մի հնարավո-
րություն, որևէ նոր ճշմարտության հայտնաբերում, անհնար է դարձնում դրանց
ծագումը հասարակական պրակտիկայից։ Երկրորդը, ենթադրելով հասկացու-
թյունների կտրվածությունն իրականության կոնկրետ բնույթից, մարդկային ի-
մացությունը սահմանափակում է հասկացությունների դոգմատիկական սխե-
մայով։ Երկու դեպքում էլ կասկածի տակ է դրվում իմացության բովանդակու-
թյունը, որի փոփոխությունն ամեն դեպքում օբյեկտիվ ճշմարտություն է։
Անդրադառնալով Բոգդանովի էմպիրիմոնիզմում արծարծվող «հավիտե-
նական ճշմարտության» հարցին, Վ. Ի. Լենինն ընդգծում էր, թե «գոյություն
ունի՞ արդյոք օբյեկտիվ ճշմարտություն, այսինքն՝ կարո՞ղ է արդյոք մարդ-
կային մտապատկերների մեջ լինել այնպիսի բովանդակություն, որը կախում
չունի սուբյեկտից, կախում չունի ոչ մարդուց, ոչ մարդկությունից» (Մատե-
րիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, 1958, էջ 142)։
Դիտելով ճշմարտության օբյեկտիվությունը մտապատկերների այն բո-
վանդակության մեջ, որն իրականության արտացոլումն է, Վ. Ի. Լենինն ամե-
նևին չէր պնդում, որ ճշմարտությունը մտածողության ամեն մի հնարավոր բո-
վանդակությունն է։ Մտապատկերների բովանդակությունն իրական աշխարհի
արտացոլումն է, օբյեկտիվ ճշմարտություն, որը դրսևորվում է մարդու նպա-
տակային գործունեության միջոցով։
Այսպիսով, օբյեկտիվ ճշմարտությունն իմացության մեջ իրականությունն
օրինաչափ արտացոլելու հարց է, երբ «սուբյեկտիվ իդեայից մարդն ընթանում
է դեպի օբյեկտիվ ճշմարտություն «պրակտիկայի» (և տեխնիկայի) միջոցով»
(Լենին, Երկեր, հ. 38, էջ 245)։ Այն որպես մարդկային պատկերացումների մեջ
տրված որոշակի բովանդակություն, երբեք ինքնին չի կարող գոյություն ունե-
նալ, մշտապես լինել ինքն իրեն հավասար, ինքն իրենով որոշվող սուբյեկտիվ
մոմենտ, եթե մշտապես միջնորդավորված է հասարակական պրակտիկայով։
Օբյեկտիվ ճշմարտության ըմբռնման սխալականությունը,— նկատել է Դից-
գենը,— բխում է բնագետների կոնկրետ ճշմարտության աղբյուրը տեսական
ճշմարտության աղբյուրից տարբերելու սուբյեկտիվ փիլիսոփայական սկզբուն-
քից, որն իր արտահայտությունն է գտնում «մտահայեցական ճշմարտու-
թյունների» աղբյուրը մարդկային հոգու խորքերում փնտրելու մեջ (տե՛ս
И. Дицген, Избранные философские сочинения, 1941, стр. 47)։
Ճշմարտության օբյեկտիվ բնույթի վերաբերյալ Դիցգենի տեսակետը խորա-
պես մատերիալիստական է։ Այն էմպիրիկ և տեսական իմացության համար ճա-
նաչում է ճշմարտության մեկ չափանիշ՝ պրակտիկան։ Ճշմարտության հարցում
նրա կոնցեպցիան խորապես դիալեկտիկական է, որովհետև իմացության պրո-
ցեսում նա վճռական դեր է հատկացնում գիտելիքների պատմական սահմանա-
փակության ճանաչմանը, որը պայմանավորվում է իմացության առարկայի
անսպառելիությամբ։ «Այն բանի գիտակցումը,— ասում է Դիցգենը,— որ մեր
գիտելիքները հարաբերական նշանակություն ունեն, հանդիսանում է հենց ա-
ռաջադիմության առավել ուժեղ շարժիչը» (նույն տեղը, էջ 69)։
Իմացության հարաբերական բնույթի, մարդկային միևնույն հասկացու-
թյունների բովանդակության փոփոխելիության շնորհիվ, պատմական մեկ դա-
րաշրջանից հասարակական զարգացման մեկ այլ դարաշրջան անցնելը, Դից-



գենին օգնեց բնության անսպառելիության գաղափարից ընթանալ դեպի ճըշ-
մարտության՝ որպես պատմական պրոցեսի դիալեկտիկական ըմբռնումը։
Սոցիալիստի էքսկուրսիաները իմացության տեսության բնագավառը
ուսումնասիրության մեջ, Դիցգենը Մարքսին և Էնգելսին անվանեց պրոլետա-
րիատի մեծագույն ուսուցիչներ, իսկ նրանց «նորագույն մատերիալիզմը» դրեց
իր գնոսեոլոգիայի հիմքում։ Զարգացնելով «իմացության առարկայի» անսպա-
ռելիության գաղափարը, Դիցգենին միանգամայն տրամաբանական էր թվում,
որ նյութական իրականությունն անսպառելի է հենց իր ճանաչելիության մեջ,
առանց որի իմացության որևէ սահմանի մասին խոսելն անիմաստ է։ Չնայած
այստեղ բացակայում է իրականության անսպառելիության գաղափարից իմա-
ցության անսահմանության գաղափարին անցնելու սիստեմատիկ շարադրան-
քը, ամեն մի իրականի անսպառելիության, իրականության ամեն մի տարրա-
կան «իրի» ունիվերսալ բնույթի վերաբերյալ դատողությունները վկայում են,
որ Դիցգենը դրանց հասել է մատերիայի դիալեկտիկական-մատերիալիստական
ըմբռնման ժամանակ։
Մարդկային իմացության վերաբերյալ ամբողջական պատկերացում կազ-
մելու համար, ուշադրություն պետք է նվիրել Դիցգենի կատեգորիկ պահան-
ջի բնութագրմանը. բնության ունիվերսալության գիտակցումն ուղղակի կա-
պի մեջ է իմացության անվերջական բնույթի վերաբերյալ եզրակացու-
թյան հետ։ Հետամնաց գնոսեոլոգների գլխավոր սխալն այն է,— ասում
է Դիցգենը,— որ նրանք անտեսել են «իրերի այս կապը» (տե՛ս И. Дицген,
Избранные философские сочинения, 1941, стр. 95)։ Սակայն այստեղ
չի պատճառաբանվում, թե ինչու մատերիայի ունիվերսալության գիտակցումը
հասկացությունների դիալեկտիկական զարգացումն ըմբռնելու բանալին է։
Դիցգենի մոտ մարդկային իմացության սահմանների և անսահմանության
փոխհարաբերության հարցն օրգանապես առնչվում է մատերիա կատեգորիայի
հետ։ Դրանում համոզվելու նպատակով վկայակոչենք Մատերիալիզմ և էմպի-
րիոկրիտիցիզմ աշխատությունը, որտեղ Վ. Ի. Լենինը, փիլիսոփայության մեջ
գերիշխող գծի համար, Դիցգենին անվանել է դիալեկտիկական մատերիալիստ,
մեջբերելով նրա հետևյալ միտքը։ «Գիտակցության համար, որ գիտակցել է
իր էությունը, ամեն մի մասնիկ, լինի դա փոշու կամ քարի, թե՛ ծառի մասնիկ,
մինչև վերջը անիմանալի (Unauskenntlihes) մի բան է, այսինքն՝ յուրաքան-
չյուր մասնիկ անսպառելի նյութ է մարդկային իմացական ունակության հա-
մար, հետևապես, մի բան, որ դուրս է գալիս փորձի սահմաններից» (Մատե-
րիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, 1958, էջ 139)։
Իմացության սահմանների և անսահմանության մոմենտների ճանաչումն
այստեղ հիմնավորվում է մատերիայի անսպառելիությամբ, որի համար Լենինը
բարձր է գնահատում Դիցգենին, հակահարված տալով բոլոր նրանց, ովքեր
նենգափոխում էին Դիցգենին, դասում ագնոստիցիզմին հարողների շարքը։
Դիցգենը, մատերիայի կատեգորիան դիտելով մյուս հասկացություններն ընդ-
գրկելու տեսակետից, հանդես է բերում դիալեկտիկական-մատերիալիստական
մոտեցում, գտնելով, որ, շնորհիվ մատերիայի կատեգորիայի, դրանք ստանում
են իրենց փոխադարձ հարաբերության կարգը որոշող ամենաընդհանուր տրա-
մաբանական հիմքը։
«Սուբստանցի դիալեկտիկական շարժումը,— ասում է Հեգելը,— պատճա-
ռականության փոխազդեցության միջոցով դրսևորում է հասկացության անմի-
ջական գենեզիսը, նկարագրում այս վերջինի լինելության աստիճանը» (Ге-

гель, сочинения, т. VI, стр. 6)։ Սուբստանց ասելով, տվյալ դեպքում
Հեգելը հասկանում է հասկացությունների դիալեկտիկական փոխազդեցության
իրական արդյունքը։ Բայց քանի որ սուբստանցի դիալեկտիկան Հեգելի մոտ
հանդես է գալիս որպես հասկացությունների դիալեկտիկայի անմիջական իրա-
կանություն, որտեղ ամեն մի ձևավորվող հասկացություն ստանում է դրսևոր-
ման որոշակի կոնկրետ ձև, բնորոշ է դիալեկտիկական մտածողության համար։
Այստեղ օրինաչափ է, լինի դա իդեալիստ Հեգելի, թե մատերիալիստ Դիցգենի
մոտ, անցումը սուբյեկտիվ դիալեկտիկայից օբյեկտիվ դիալեկտիկային։

Առօրյա բանականության տեսանկյունից սուբյեկտիվության կախումն ար-
տաքին իրականությունից, կարող է պարադոքս թվալ։ Սակայն մարդկային ի-
մացության զարգացման բնապատմական ընթացքը, լինելով օբյեկտիվ իրա-
կանության ճանաչողության պատմություն, պարբերաբար, գիտական առաջ-
ընթացին համապատասխան, վերանայում է հասկացությունների գոյություն
ունեցող սիստեմը։ Ամեն մի ճշմարիտ մտածողության համար, լինի այն փի-
լիսոփայական, թե ընդհանրապես, մարդկային որոշակի սերնդի ճշմարիտ
մտածողության անմիջական նախադրյալը՝ նախապես կուտակված մտավոր
նյութն է, որն արմատակալել է մարդկանց գոյության նյութական և հասարա-
կական պայմանների մեջ։

Սուբստանցի դերի գնահատման հարցում Դիցգենն սկզբունքորեն տար-
բերվում է Հեգելից։ Նա գտնում է, որ սուբստանցի-մատերիայի ճանաչողու-
թյան մեջ անհրաժեշտ է տեսնել մարդու ներքին հոգևոր աշխարհի ինքնաճա-
նաչման հիմքը և սահմանը։ Այլապես, ինչպես հասկանալ Դիցգենին, երբ մա-
տերիայի անսպառելիության գիտակցումը նա դիտում է որպես մարդու կողմից
իմացական հնարավորությունների սահմանափակությունը ճանաչելու հիմք։
Կրկնելով Սպինոզային, Դիցգենն ասում է. «Գոյություն ունի միայն մեկ
սուբստանց, այն ունիվերսալ է, անվերջ և բացարձակ»։

Մատերիայի ունիվերսալ, բացարձակ ու անսահման բնույթի ճանաչումը
ենթադրում է դրա շուրջ գոյություն ունեցող մարդկային պատկերացումների և
հասկացությունների հարաբերականությունը, այն, որ իմացության շրջանակ-
ները, որպես կանոն, ընդլայնվում են հարաբերական ճշմարտությունները յու-
րացնելու միջոցով։ Ամեն մի տրամաբանության կվինտ-էսենցիան,— ասում է
Դիցգենը,— այն է, որ դրա հասկացությունները, լինելով հարաբերական ճըշ-
մարտություններ, բացարձակ ճշմարտության առանձին արտահայտություններ
են, որոնք որքան էլ ձգտեն բացարձակ ճշմարտության ատրիճանական բացա-
հայտմանը, երբեք չեն հասնի դրա լիակատար արտացոլմանը։ Բացարձակ ճըշ-
մարտության այս նույնացումը մատերիայի կատեգորիային, օրինաչափ է
Դիցգենի մոտ, քանի որ մարդկային իմացության հարաբերական բնույթի վե-
րաբերյալ նրա եզրակացությունը հասունացել է մատերիայի անսպառելիու-
թյան գաղափարի հիման վրա։

Դիցգենի համոզմամբ մատերիան մեր իմացության «անսահման» օբյեկտն
է, բայց այն անսահման է ոչ ավելի, քան յուրաքանչյուր առանձին մատերիան
ու առանձին ուժը (տե՛ս И. Дицген, Избранные философские сочинения,
1941, стр. 104)։

Նշանակում է՝ առանձին որակների մեր պատկերացումների հարաբերա-
կան բնույթն իր մեջ մշտապես պարունակում է բացարձակ ճշմարտության ինչ-
որ հատիկ, որովհետև անսահման է նաև ինքը՝ առանձին որակը, իրը, երև-
վույթը։



Մարդկային իմացության սահմանների և անսահմանության մոմենտների
բացատրությունը Դիցգենի մոտ աստիճանաբար կոնկրետանում է. ի վերջո
նա հանգում է բացարձակ և հարաբերական ճշմարտությունների փոխադարձ
պայմանավորվածության գաղափարին։ Նա հայտնում է այն միտքը, որ բա-
ցարձակ ճշմարտությունն ընդհանրացված ճշմարտություն է։ Հարաբերական
ճշմարտությունների յուրացման եղանակով բացարձակ ճշմարտության հաս-
նելու Դիցգենի այս դրույթը լուրջ կռվան էր ուղղված՝ դիալեկտիկական մատե-
րիալիզմի հակառակորդների դեմ։ Հարաբերական և բացարձակ ճշմարտու-
թյունների դիալեկտիկայի բացահայտումը խոշոր քայլ էր դարաշրջանի բնա-
գիտական հայտնագործությունները դիալեկտիկական մատերիալիզմի հայե-
ցակետից ընդհանրացնելու և իմաստավորելու համար, այն հետագայում ճա-
նապարհ հարթեց ագնոստիցիզմի, մետաֆիզիկայի և էկլեկտիզմի իմացաբա-
նական արմատները մերկացնելու համար։ Լենինն ըստ արժանվույն գնահատեց
մասնավորապես Դիցգենի՝ ճշմարտության պրոբլեմի դիալեկտիկական-մատե-
րիալիստական մեկնաբանությունը։

Ճշմարտության հարցում քննադատելով Բոգդանովին, Վ. Ի. Լենինը, իր
վճռական առարկությունները հիմնավորելու նպատակով, վկայակոչեց Ֆ. Էն-
գելսին և Յ. Դիցգենին։ Լենինը գրում էր. «Բացարձակ ճշմարտությունը,— ա-
սում է Յ. Դիցգենը էքսկուրսիաների մեջ,— մենք կարող ենք տեսնել, լսել, հո-
տոտել, շոշափել, անտարակուսորեն նմանապես իմանալ, բայց նա ամբողջու-
թյամբ չի մտնում (geht nicht auf) իմացության մեջ»... Եվ հետո «Մենք միայն
հարաբերականորեն (ռելյատիվ կերպով) կարող ենք իմանալ բնությունն ու
նրա մասերը, որովհետև ամեն մի մաս, թեև հանդիսանում է բնության հարա-
բերական մասը միայն, այնուամենայնիվ ունի բացարձակի բնույթ, ինքնին
բնական ամբողջի բնույթ (des Naturganzen an sich) որպիսի ամբողջը չի
սպառվում իմացությամբ...» (Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ, 1958,
էջ 159)։

Բացարձակ և հարաբերական ճշմարտության դիալեկտիկական միասնու-
թյունն ըստ Դիցգենի բխում է մատերիայի բացարձակ անսահմանության և
որոշակի կոնկրետ նյութական երևույթի միջև գոյություն ունեցող դիալեկտիկա-
կան կապից։ Մերկացնելով ագնոստիցիզմը, Դիցգենն ստիպված էր մշտապես
ընդգծել, որ մեր հարաբերական պատկերացումների բովանդակությունը որո-
շակի է։

Վեր հանելով Մախի, Ավենարիուսի և Պետցոլդի ռելյատիվիզմը, Լենինը
նկատում է, որ մարդկային իմացության հարաբերական բնույթի ետևում, ան-
տեսելով բացարձակ ճշմարտությունը, մախիստները փաստորեն անտեսում են
մարդկային իմացության պատմական բնույթը, որը չի կարող պատմական լի-
նել, եթե այն որոշակի, օբյեկտիվ, հետևաբար և բացարձակ ճշմարտության
զարգացումը չէ։ Այս իմաստով բացարձակ ճշմարտությունն ինչ-որ վերջնա-
կան սահման չէ, որին մոտենում է մեր իմացությունն օբյեկտիվ իրականու-
թյան որոշակի կարգի, երևույթների, որակների, օրինաչափությունների ասպա-
րեզում, այլ մի սահման, որի որոշակիությունն անխախտ է մնում մարդկային
իմացության ցանկացած պատմական աստիճանում։

Դիցգենի ժառանգության մեջ գլխավորը նրա ուսմունքն է ճշմարտության
վերաբերյալ։ Նա հարաբերական ճշմարտությունը դիտեց որպես պատմական
պրոցեսում մատերիայի անսպառելիության մեջ թափանցելու մեր իմացության
անվերջական ձգտում, ըմբռնեց օբյեկտիվ ճշմարտության անհրաժեշտությու-

․․․նը, որը մարդկային իմացության տվյալ աստիճանից ավելի բարձր աստիճանի անցնելու հենակետ է։

Նկատի ունենալով փիլիսոփայական մտքի ամբողջ պատմական զարգացմամբ ձեռք բերված որակի և քանակի, սուբստանցի, ակցիդենցիայի, իրի և հատկության, պատճառի և հետևանքի կատեգորիաները, Դիցգենը եզրակացնում է, որ վերոհիշյալ կատեգորիաների հոսունությունը և փոփոխելիությունը միայն բոլոր մտքերի և հասկացությունների անհրաժեշտ փոփոխության ու փոխադարձ կապակցության օրինակ են..., ունիվերսալ կյանքի արտացոլում (տե՛ս И. Дицген, Избранные философские сочинения, 1941, стр. 211)։

Որպեսզի փիլիսոփայական մտքի պատմության մեջ ցույց տար մարդկային մտքի պատմությունը, Դիցգենը բացահայտեց փիլիսոփայական կատեգորիաների հարաբերական բնույթը յուրաքանչյուր պատմական դարաշրջանում, նշեց մտքերի և հասկացությունների հոսունության դիալեկտիկական բնույթը։ Նա հասկացությունների հոսունությունը չի դիտում միայն դրանց պատմական սահմանների տեսանկյունից, նա պահանջում էր ճանաչել նաև հարաբերական ճշմարտության իրավունքը։ Նա, առաջին հերթին, այն դիտում է օբյեկտիվ իրականության, որպես ունիվերսալ բնույթով պայմանավորված իմացաբանության օբյեկտ։ Այլապես ինչպես կարող են դրանք «ունիվերսալ կյանքի արտացոլումը» լինել, եթե օժտված չեն փոխադարձ հոսունությամբ, փոխադարձ անցմամբ։ Հասկացությունների հոսունությունը ներքին կապի մեջ է գտնվում օբյեկտիվ ճշմարտությունն արտացոլելու հատկության հետ։ Դրանք բացի ճշմարտություններից, փոխանցման ուրիշ հիմք չունեն և միևնույն ճշմարտության տարբեր արտացոլումներն են։

Դիցգենի մարդկային հասկացությունների փոխադարձ անցման տեսակետը վկայում է, թե որքա՜ն խոր է թափանցել նա գնոսեոլոգիայի բնագավառը, որ նույնիսկ օբյեկտիվ ռեալության ունիվերսալ բնույթի ըմբռնումը դիտում էր որպես «հասկացության մասին գիտության հիմք» (Նույն տեղը, էջ 213)։

Դիցգենի կարծիքով նոր գնոսեոլոգիայի խնդիրն է՝ ըմբռնել, թե ինչպես մեր հասկացությունները, արտացոլելով օբյեկտիվ ռեալությունը, մշտապես հարաբերական են մնում վերջինի՝ «ունիվերսալ» բնույթի հանդեպ։

Ճշմարտության հարցում մեկնաբանելով Ֆ. Էնգելսի և Յ. Դիցգենի հայացքները, Վ. Ի. Լենինը գրում էր. «Էնգելսի և Դիցգենի այս բոլոր հայտարարություններից պարզ երևում է, որ դիալեկտիկական մատերիալիզմի համար անանցանելի սահման գոյություն չունի հարաբերական ու բացարձակ ճշմարտությունների միջև» (Լենին, Երկեր, հ. 14, էջ 170)։ Օբյեկտիվ իրականության և մարդկային իմացության օրենքների ընդհանրությունը չի տանում նրանց միջև եղած հարաբերական տարբերության ժխտմանը, որի դեմ առարկում է Դիցգենը, ամեն կերպ ջանալով, իհարկե, ոչ առանց մասնակի սայթաքումների, ձևակերպել այդ տարբերության գնոսեոլոգիական բնույթը, «Որ այդ հակադրությունը,— գրում է Լենինը,— չպետք է լինի «ծայրահեղ» չափազանցված, մետաֆիզիկական, դա անվիճելի է (և դրա ընդգծման մեջ է դիալեկտիկական մատերիալիստ Դիցգենի մեծ վաստակը)։ Այս հարաբերական հակադրման բացարձակ սահմանները հենց այն սահմաններն են, որոնք որոշում են գնոսեոլոգիական հետազոտությունների ուղղությունը» (Նույն տեղը, էջ 311)։



# ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ «ՕԳՆՈՒԹՅԱՆ» ԲՆՈՒՅԹԸ

Գ. Լ. ԵԳԱՆՈՎ

Օգնություն հասկացությունը ենթադրում է մարդասիրական, բարի, անշահախնդիր արարք, վկայում լավի, առաջադիմականի, թույլին ձեռք մեկնելու մասին։ Այստեղ առկա են երկու անիրավահավասար կողմեր՝ մեկը ուժեղ է, օգնելու ընդունակ. երկրորդը՝ անուժ, օգնության կարոտ։ Խորհելով այսպես, մենք ցանկանում ենք կարծել, որ ուժեղը հնարավորության սահմաններում թույլին տալիս է անկանխակալ օգնություն։ Դա այսպես է ընկալվում, և մենք չենք հեռանում ճշմարտությունից, երբ խոսքը վերաբերում է մարդկային սովորական փոխհարաբերություններին։

Սակայն օգնություն հասկացության նման պատկերացումը մթագնվում, պարզապես անհասկանալի է դառնում, երբ այն դիտում ենք իմպերիալիստական աշխարհի միջպետական հարաբերությունների ոլորտում, երբ փոփոխվում է այս հասկացության բովանդակությունը, մարդկանց ներաշխարհում առաջացնելով հակասական զգացումներ։

Օգնություն կատեգորիան, իր «տնտեսական» ածանցյալով, կապիտալիստական աշխարհի միջպետական հարաբերություններում ի հայտ եկավ երկրորդ համաշխարհային պատերազմից հետո։ Այն դրսևորվեց տվյալ ժամանակաշրջանը բնորոշող երկու խոշորագույն իրադարձությունների՝ սոցիալիստական լագերի կազմավորման ու ամրապնդման, իմպերիալիզմի համաշխարհային գաղութային սիստեմի փլուզման հետևանքով։ Ստեղծված պայմաններում կապիտալիստական պետությունների տնտեսական օգնության կատեգորիան նոր գործոն դարձավ միջազգային տնտեսական հարաբերություններում։

Սակայն տնտեսական այդ նոր կատեգորիան իրականում հազվադեպ էր նպատակային դրսևորվում։ Այսպես. գաղութատեր տերություններն իրենց տիրապետության տակ գտնված երկրների նկատմամբ ցույց են տալիս թելադրանքի քաղաքականությունից նահանջելու բացահայտ նշաններ։ Միևնույն ժա-

մանակ, զարգացող պետությունների տնտեսական օգնությունը բնավ չի խարսխվում անշահախնդրության վրա, այլ հետապնդում է բացառապես նեոգաղութատիրական նպատակներ։ Այսպիսով, կապիտալիստական «օգնությունը» հարաբերությունների հարկադրական ձև է, որը հետապնդում է որոշակի շահադիտական նպատակներ։

«Զրկվելով գաղութներից,— ասում է Լ. Ի. Բրեժնևը,— իմպերիալիզմը անցնում է ժողովուրդների շահագործման առավել խորամանկ ու նուրբ մեթոդների։ Իմպերիալիզմը ուժ ու միջոց չի խնայում մարդկանց մտքերի համար մղվող պայքարում. սոցիալիզմի ազդեցության աճը իմպերիալիստներին ստիպում է իրենց գաղափարական զենքը, իրենց պրոպագանդան մշտապես հարմարեցնել փոփոխվող իրադրությանը» (Սոցիալիզմի մեծ հաղթանակների 50 տարին, Մ. 1967, էջ 39)։

Կապիտալիստական երկրներն իրականում մտադիր չեն աջակցել զարգացող երկրների տնտեսական առաջադիմությանը, եթե չլիներ սոցիալիզմի հզոր լագերը, որն անշահախնդիր, անհրաժեշտ օգնություն է ցույց տալիս անկախության ուղին բռնած ժողովուրդներին։ Այս ամենը վկայում է, որ կապիտալիստական աշխարհի միջպետական հարաբերություններում օգնություն հասկացությունը բովանդակում է բոլորովին այլ իմաստ, որը, ըստ էության, ընդհանուր ոչինչ չունի բարոյական այդ բարձր գաղափարի հետ։

Գաղութային երկրների հանդեպ գաղութակալ տերությունների գլխավոր, արտաքին տնտեսական գործողությունը կապիտալի արտահանումն է։ Այն թելադրվում է նախ շահույթի, ներդրված կապիտալի անհապաղ փոխհատուցման վիթխարի տնտեսական խթաններով։ Արտաքին տնտեսական ամեն մի գործողություն ունի իր որոշակի քաղաքական նպատակը, ուստի, դժվար է որոշել այդ գործարքների տարբերությունը։ Կապիտալի արտահանումը նախ՝ տնտեսական գործողություն է, որն ունի որոշակի քաղաքական նկատառում, սակայն տնտեսական կողմը գերակշռող է և դրանք էությամբ միահյուսվում են։

Տնտեսական օգնության գործողությունը յուրովի է դրսևորվում։ Կապիտալիստական երկրների միջպետական տնտեսական հարաբերություններում այն, առաջին հերթին, գլխավորապես կիրառվում է քաղաքական նպատակներով, որտեղ կապիտալի արտահանման կամ այլ գործարքի նկատառումը կարող է և չլինել։ Այս տեսակետից փոքրիշատե ճիշտ է տնտեսական օգնության այն ֆորմուլը, որն առաջարկել է ամերիկացի պրոֆեսոր Ռոզենշտայն Ռոդանը։ Նա գրում է, որ «օտարերկրյա կապիտալի արտահանումը և օգնությունը հոմանիշներ չեն։ Իսկն ասած, օգնությունը կազմում է կապիտալի ներհոսի միայն այն մասը, որ չի խթանվում շուկայի պայմաններով»։

Այսպիսով, առաջին հերթին, անհրաժեշտ է ճշգրտել տնտեսական օգնության քաղաքական, իսկ հետո՝ բուն տնտեսական կողմը։ Արդյունաբերապես զարգացած կապիտալիստական երկրի տնտեսական օգնությունը որևէ զարգացող պետությանը, գործարք է, որը չի թելադրվում տնտեսապես խթանող նկատառումներով։ Նոր պայմաններում իմպերիալիստական մոնոպոլիաներին զարգացող երկրներում անհրաժեշտ է ո՛չ միայն պահպանել նախկին դիրքերը, այլև դրանք ավելի ամրապնդել, ընդլայնել։ Այս է զարգացող պետություններին կապիտալիստական տերությունների կողմից ցույց տրվող տնտեսական օգնության աղբյուրները։ Իմպերիալիզմի տնտեսական քաղաքականությունը տվյալ



հարցում ենթադրում է՝ զարգացող երկրների տնտեսական և քաղաքական ասպարեզից դուրս մղել սոցիալիստական համագործակցության պետություններին, թուլացնել սոցիալիստական գաղափարների ներգործությունը երրորդ աշխարհում։

Բացի այդ, յուրաքանչյուր կապիտալիստական երկիր, այստեղ ձգտում է նվաճել իր մրցակցի դիրքերը։ Վերջապես, իմպերիալիզմը զարգացող երկրների էկոնոմիկայում ամեն ինչ անում է ամրապնդելու մասնավոր ձեռնարկատիրական սեկտորը, կառավարման ոլորտում պաշտպանելու ռեակցիոն ռեժիմները։ Այս նպատակների իրագործումն անհնար էր հին տնտեսական և քաղաքական հարաբերությունների շրջանակներում։ Դրանց իրականացումը հնարավոր է տնտեսական օգնության լծակը կիրառելու պայմաններում։ Այս է պատճառը, որ կապիտալի աշխարհում տվյալ հարցին հսկայական նշանակություն են տալիս։ Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության «օգնության ղեկավարներից մեկը՝ Վալտեր Շեելը հայտարարել է. «օգնության քաղաքականությունը մի երևույթ է, որը զարգանում է իր սեփական օրենքներով։ Այդ քաղաքականությունը ինչ որ միջին բան է արտաքին քաղաքականության և տնտեսական քաղաքականության միջև» (Aussenpolitik, 1962, № 5, s. 292)։

Տնտեսական օգնության մասին ստեղծված է հարուստ գրականություն։ Նպատակ չունենալով այն հատուկ քննության հարց դարձնել, նշենք միայն, որ դրա գերակշռող մասը նվիրված է զարգացող երկրներին ցույց տրվող պաշտոնական շրջանների կողմից խրախուսվող կապիտալիստական տնտեսական օգնության գովաբանմանը։ Հրապարակի վրա կան ո՛չ միայն մասնագետների, այլև բավական պատասխանատու անձանց հետազոտություններ և բնութագրումներ, որտեղ որոշ դեպքերում ուղղակի կամ անուղղակի դրսևորվում է կապիտալիստական տնտեսական օգնության իրական իմաստը։ Գրականության մի մասը նախատեսված է ո՛չ միայն զարգացող երկրների, այլև իրենց սեփական երկրների ընթերցող հասարակայնության լայն մասսաների համար և ունի պրոպագանդիստական բնույթ։ Մյուսը՝ հասցեագրված է նրանց, ովքեր անմիջապես զբաղվում են այդ հարցերով։ Մի կողմ թողնելով պրոպագանդիստական-ջատագովող գրականությունը, դիմենք արևմտյան այն գործիչների կարծիքին, որոնք փորձում են պարզաբանել կապիտալիստական տնտեսական օգնության բուն նպատակը։ Կապիտալի երդվյալ պաշտպանները և լիբերալ ընդդիմախոսները միաանական են այն հարցում, որ կապիտալիստական երկրների հիմնական նպատակն է՝ ամուր պատնեշ կանգնեցնել զարգացող պետություններին սոցիալիստական երկրների կողմից ցույց տրվող օգնության ճանապարհին։

Այստեղ կկամենայինք նշել միայն տվյալ հարցում գոյություն ունեցող երկու տենդենցի մասին։ Այսպես, մեծ վտանգ է համարվում սոցիալիստական երկրների կողմից ցույց տրվող տնտեսական օգնությունը և գաղափարական ազդեցությունը, որոնք զարգացող երկրներում կարող են նպաստել ամեն տեսակ կապիտալիստական հարաբերությունների վերացմանը։ Նման տեսակետի կողմնակիցները կոչ են անում ստեղծել արդյունավետ հակակշիռ՝ ընդդեմ զարգացող երկրներում սոցիալիստական համագործակցությանը, սոցիալիստական պետությունների և սոցիալիստական գաղափարների ներթափանցմանը։ Ֆրանսիական «էնդյուստրի է տրավո դուտրմեր» հանդեսը գրել է՝ «Ժամանակն է, որ արևմուտքը մշակի ոչ միայն մեծահոգի, այլև տրամաբանական դոկտրինա այն

ժողովուրդների նկատմամբ, որոնք անվիճելիորեն ներգրավված են կոմունիզմի խստագույն, բայց արդյունավետ իրագործման մեջ»: Հին աշխարհի փաստաբաններից ոմանք ճգնում են հավաստիացնել, որ կապիտալիստական հարաբերությունները անսասան են, բխում են մարդու էությունից, ժխտում սոցիալիստական գաղափարների հաղթանակի հնարավորությունը զարգացող երկրներում: Արևմտագերմանական դիվանագետ Վիլհելմ Հաազեն, ընդունելով, որ «Մարքսի ուսմունքի համար բարենպաստ հող հատկապես գոյություն ունի ինդուստրացման պրոցեսում գտնվող զարգացող երկրներում», հակված է կարծելու, որ այդպիսի «վտանգը» մեծ չէ: Սակայն, ի տարբերություն իր շատ կոլեգաների, այս տեսաբանը, այնուամենայնիվ, չի համարձակվում բացեիբաց պնդել, որ կապիտալիստական հարաբերությունները երրորդ աշխարհում մնում են այն նույն տեսքով, ինչպես նա կուզենար տեսնել: Նման հակակոմունիստորեն տրամադրված հեղինակների, ինչպիսին է Հաազեն, մտահոգում է, որ միայն կոմունիստական գաղափարներ չլինեն, մնացածը՝ ինչ լինում է լինի: Նա գտնում է, որ կոմունիզմի դեմ «պաշտպանողական առողջ ուժ են ներկայացնում իսլամը, հինդուիզմը և բուդդիզմը՝ միացված ուժգին նացիոնալիզմի հետ»:

Կապիտալիստական տերությունների միջև համառ պայքար է մղվում նաև տնտեսական ներդրման ոլորտների համար և այդ գործում դրանց քիչ ծառայություն չի մատուցում իրենց իսկ հորինած տնտեսական օգնության կոնցեպցիան: Նույնիսկ եվրոպական տնտեսական ընկերակցության մեջ, որտեղ Եվրոպայի մի շարք երկրներ ասես միավորված են տնտեսական շահերի ընդհանրությամբ, հատկապես պայքար է ընթանում Ֆրանսիայի և Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության միջև՝ Ֆրանսիայի նախկին աֆրիկական գաղութներում դիրքերի ուժեղացման համար, որոնք այժմ միակցվել են ընդհանուր շուկային: Ֆրանսիան ձգտում է ամրապնդել իր ավանդական տնտեսական դիրքերն աշխարհի այդ շրջանում, դրա համար օգտագործելով ո՛չ միայն իր կապիտալը, այլև եվրոպական ընդհանուր շուկայի զարգացման ֆոնդի կապիտալը, որտեղ Արևմտյան Գերմանիայի վճարը հավասար է ֆրանսիականին:

Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունը հետապնդում է հակոտնյա նպատակներ՝ Ֆրանսիային դուրս մղել իր նախկին գաղութներից, օգտագործելով եվրոպական տնտեսական ընկերակցության լծակները, Ֆրանսիայի հետ համահավասար վճարումներ կատարելով ընդհանուր շուկայի զարգացման ֆոնդի մեջ: Այդ պայքարը փոփոխակի հաջողությամբ տեղի է ունենում մինչև այսօր: Իմպերիալիստական տերություններն իրենց պարտնյորների ամեն տեսակ վրիպումներն օգտագործում են, որպեսզի դրանց դուրս մղեն գրավված տնտեսական դիրքերից: Նման օրինակ կարող է ծառայել 1956 թ. անգլո-ֆրանս-իսրայելական ագրեսիան ընդդեմ Արաբական Միացյալ Հանրապետության: Ագրեսորների պարտության շնորհիվ Մերձավոր և Միջին Արևելքի երկրներում խախտվեցին դրանց երբեմնի տնտեսական դիրքերը: Այս հանգամանքը անմիջապես օգտագործեցին Միացյալ Նահանգները և Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունը, որոնք ամեն ինչ արին՝ աշխարհի այդ շրջանում իրենց անգլիական ու ֆրանսիական պարտնյորների հարկադրված նահանջի հետևանքով առաջացած, «վակուումը» լցնելու: Կապիտալիստական աշխարհում միմյանց դուրս մղելու փաստերը եզակի չեն:

Տնտեսական օգնության բնավ ոչ անշահախնդիր բնույթն առանձնապես



երևան է գալիս, երբ խոսքը վերաբերում է այն բանին, թե էկոնոմիկայի զարգացման ինչպիսի ձև ընտրել, մասնավո՞ր, թե՞ պետական: Բնական է, որ կապիտալիստական երկրներն ամեն կերպ օժանդակում են մասնավոր սեկտորին, հատկապես այն երկրներին, որտեղ բարենպաստ պայմաններ են ստեղծվում էկոնոմիկայի տվյալ ձևի համար: Կապիտալիստական աշխարհի գործիչները հասկանում են, որ զարգացող երկրներում էկոնոմիկայի մասնավոր սեկտորի խրախուսումը որոշ իմաստով արտադրության կապիտալիստական եղանակի պրոպագանդումն է, արգելք սոցիալիստական գաղափարների ներթափանցման համար:

Օգնության լավագույն ձևը զարգացող առանձին երկրներում Արևմտյան Գերմանիայի ֆեդերալ կառավարությունը համարում է մասնավոր էկոնոմիկայի աշխուժացումը: Այդ նպատակով ԳՖՀ-ի կառավարությունը տվյալ պետությունների հետ կնքում է համաձայնագրեր, արտոնյալ պայմաններով վարկեր է տրամադրում, ապահովում մաքսային արտոնություններ, երաշխիքներ՝ «քաղաքական և տնտեսական վտանգի» հանդեպ:

Սակայն նոր կյանքի համար արթնացած ժողովուրդները մեծ կասկածանքով են վերաբերվում այն տնտեսաձևին, որն անցյալում նրանց ոչ մի լավ բան չի բերել և հազիվ թե կարողանա խոստանալ ապագայում: Զարգացող երկրների առաջավոր մտավորականության և աշխատավոր խավերի հզոր դիմադրությունն իմպերիալիստական պետություններին ստիպում է որոնել ռեակցիոն խավեր և նրանց անցկացնել իշխանության գլուխ: Այստեղ նույնպես որոշակի դեր է խաղում տնտեսական օգնությունը: Այդ է վկայում հետևյալ խոստովանությունը: «Երիտասարդ անկախ պետություններին «օգնություն» ցույց տալու Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության քայլերը ներդրում են դրանց գալիք քաղաքական կարգի ստեղծման գործում: Միևնույն ժամանակ, դրանք նաև անմիջական ավանդ են երիտասարդ շատ պետությունների քաղաքական անվտանգության ասպարեզում, որոնց ճակատագրից մենք չենք կարող զատել մեր սեփական ճակատագիրը: Այդ ջանքերը, այսպիսով, մեր սեփական գոյության համար, մեր քաղաքական ամենօրյա պայքարի մի մասն են կազմում...» (Lasparlament, 29 օգոստոսի, 1962):

Հետաքրքրական է, թե որտեղից են զարգացած արդյունաբերական տերությունները միջոցներ հայթայթում դրանց տնտեսական օգնություն ցույց տալու համար: Աղբյուրները շատ են, ուստի, ուշադրություն դարձնենք ամենակարևորների վրա: Իմպերիալիստական պետությունները զարգացող երկրների հետ առևտուր անելիս առևտրից հսկայական շահույթ են ստանում հիմնականում այն կորուստների հաշվին, որ ունենում են զարգացող երկրները նախկին գաղութատեր պետությունների հետ առևտուր անելիս, և, համապատասխանաբար, այն նոր շահույթների հաշվին, որոնք վերջինները ձեռք են բերում նույն առևտրի միջոցով: Այդ առևտրի հիման վրա են դրանք կազմակերպում զարգացող երկրների տնտեսական օգնությունը: Ընդ որում, նախկին գաղութակալ տերությունները տնտեսական օգնության միջոցով ձեռք են բերում նաև որոշակի քաղաքական առավելություններ: Այլ կերպ ասած, փաստորեն զարգացող երկրների հաշվին կապիտալիստական տերությունները դրանց «մեծահոգի» օգնություն են ցույց տալիս: Արևմտյան հայտնի տնտեսագետներից Գուննար Մյուրդալը վկայում է, որ «գրեթե հակաբնական կլիներ, եթե կապիտալը հրակայական գումարներով և իր բարի կամքով հոսեր դեպի թույլ զարգացած եր-

կըրները՝ դրանց տնտեսական զարգացմանը նպաստելու համար» (G. Murdal,
Development and Underdevelopment Cairo, *1956*, p. *50*)։

Որ դա այդպես է, պերճախոս վկայում են անողոք փաստերը։ Այսպես, Եվ-
րոպական տնտեսական ընկերակցությունը սկզբունք է դարձրել զարգացող եր-
կըրների և դրանց միակցված երկրների բացասական արտաքին առևտրական
հաշվեկշիռները ծածկել դրանց օգնություն ցույց տալու ճանապարհով։ Այդ
գործով հիմնականում զբաղվում է զարգացման ֆոնդը։ Ընդհանուր շուկային
առընթեր «օգնության» այդ շտաբը, որը հատկապես ստեղծվել է միակցված
երկրների համար, օգնություն է ցույց տալիս խրախուսանքներ տրամադրելու
ձևով։ Նույնիսկ հաշվի առնելով ցույց տրված օգնությունը, Եվրոպական ընդ-
հանուր շուկայի անդամ երկրների շահույթները նշանակալի են։ 1958—1962
թթ. եվրոպական տնտեսական ընկերակցության անդամ երկրները բոլոր թույլ
զարգացած երկրներին օգնություն ցույց տալու համար տրամադրել են 581 մլն
դոլար։ Մինչև 1962 թ. մայիսի 31-ը այդ ֆոնդից ֆինանսավորվեց 145 սոցիա-
լական օբյեկտ (դպրոցներ, հիվանդանոցներ, քաղաքային կոմունալ կառույ-
վածքներ)՝ 130 մլն դոլար գումարով և 104 տնտեսական օբյեկտ (փողոցներ,
նավահանգիստներ, կամուրջներ, գյուղատնտեսական կառուցվածքներ)՝ 170
մլն դոլար գումարով։ Մինչ այդ գործում էին մոտ 80 մլն դոլար գումարով
օբյեկտներ։ Եվ դա զարգացող բոլոր երկրների գծով, մինչդեռ միմիայն մար-
սային քաղաքականության հիման վրա Եվրոպայի տնտեսական ընկերակցու-
թյան երկրները անհամեմատ ավելի մեծ շահույթ են ստացել։
Կատարելագործելով տնտեսական օգնության ձևերն ու եղանակները, կա-
պիտալիստական պետություններն այն դարձրել են զարգացող երկրները նեո-
թափանցելու կարևորագույն միջոցներից մեկը։ Այդ ուղղությամբ այսօր կա-
մուրջ է գցված էպիզոդիկ օգնությունից դեպի լայն և համապարփակ քաղաքա-
կանություն։ Արդեն հիշատակված Վալտեր Շեելը հայտարարել է. «Մենք այժմ
տնտեսական օգնություն ցույց տալու առանձին ակտերից շրջադարձ ենք կա-
տարում այդ օգնության այնպիսի քաղաքականության, որը նշանակում է
իմպրովիզացիայից անցնել սիստեմատիկ գործունեության։

Առանձին, հատկապես Ընդհանուր շուկայի անդամ առաջատար երկրները,
ստեղծել են հսկայական վարչական ապարատ, որը մասնավորապես զբաղվում
է զարգացող երկրներին «օգնություն» ցույց տալու հարցերով։ Եվրոպական
տնտեսական ընկերակցության շրջանակները դրանց համար փոքր են թվում
թեկուզ այն պատճառով, որ դիմելով տնտեսական օգնության ձևին, յուրա-
քանչյուր երկիր հետապնդում է իր անհատական շահերը։ Եվրոպական ընդհա-
նուր շուկան միշտ չէ, որ կարող է հաշվի առնել դրանցից յուրաքանչյուրի շա-
հերը։ Այն կարող է նեցուկ հանդիսանալ միայն առանձին դեպքերում։ Թե որ-
քան հզոր է ընկերակցությունը, բավական է հիշատակել առաջատար երկրնե-
րում տնտեսական օգնությամբ զբաղվող դրա ապարատի վարչական կառուց-
վածքը։

Ֆրանսիայում այդ հարցերով զբաղվում են. արտաքին գործերի մինիստ-
րությանն առընթեր պետական քարտուղարությունը, որը «հատկապես վարում
է Ֆրանսիային հետաքրքրող պետությունների գործերը», համագործակցության
մինիստրությունը, հանրապետության պրեզիդենտին առընթեր Աֆրիկա-Մալ-
գաշյան գործերի գլխավոր քարտուղարությունը, որի մեջ մտնում են Ֆրան-
սիայի պրեզիդենտը, պրեմիեր-մինիստրը, արտաքին գործերի մինիստրը,
համագործակցության մինիստրը, արտաքին գործերի պետական քարտուղարը,



ընկերակցության և Աֆրիկա-Մալգաշյան գործերով հանրապետության պրեզիդենտի գլխավոր քարտուղարը։

Տնտեսական օգնության վարչական ապարատն ավելի ճյուղավորված է Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությունում։ Դեռևս 50-ական թթ. այդ հարցերով սկսեցին սիստեմատիկաբար զբաղվել մոտ 250 ոչ-կառավարչական հիմնարկություններ։ Դրանց գործունեությունը միավորելու համար 1961 թ. աշնանը տնտեսական համագործակցության մինիստրությանն առընթեր ստեղծվեց կոորդինացիոն կենտրոն, որի նպատակն էր՝ սերտ կապ պահպանել բազմաթիվ կիսապետական և մասնավոր կազմակերպությունների, ընկերությունների և ինստիտուտների հետ, որոնք զբաղվում են զարգացող երկրների ժամանակակից պրոբլեմներով՝ կապված Արևմտյան Գերմանիայի տնտեսական, քաղաքական և գաղափարական էքսպանսիոն նպատակների հետ։

Բացի այդ, Բոննի մինիստրությունների ապարատում (տնտեսության, ֆինանսների մինիստրություններ) գոյություն ունեն «օգնության» հատուկ ենթակոմիտեներ (մինչև տնտեսական համագործակցության մինիստրության ստեղծումը, «օգնության» հարցերի կենտրոնական կառավարական օրգանը միջմինիստրական հատուկ կոմիտեն էր)։ Տնտեսական համագործակցության մինիստրությունն իր պրակտիկ գործունեության մեջ նախ և առաջ հենվում է Թույլ զարգացած երկրների հետ համագործակցության ասոցիացիայի վրա, որի վարչությունը գտնվում է Մայնի Ֆրանկֆուրտում։ Արևմտագերմանական մոնոպոլիստական կապիտալի առաջատար միավորումների վարչություններին առընթեր ստեղծված են «օգնության» քաղաքականության հետ կապված հարցերի հատուկ կոմիտեներ ու խմբեր։ Այդպիսի կազմակերպություններից է գերմանական առևտրա-արդյունաբերական միության վարչությանն առընթեր կազմավորված «Թույլ զարգացած երկրների օգնության գործնական խումբը»։

Տնտեսական օգնության գծով վարչական նշանակալի ապարատ է ստեղծված նաև ուրիշ երկրներում։ Այսպես, Իտալիայում գործում է միջազգային տնտեսա-տեխնիկական համագործակցության ազգային կոմիտե, Բելգիայում՝ զարգացման բնագավառում համագործակցության բյուրո, Հոլանդիայում՝ օտարերկրյա պետություններին տեխնիկական օգնություն ցույց տալու բյուրո։

Եվ այսպես, զարգացող երկրները շահե՞լ են արդյոք հետպատերազմյան ժամանակաշրջանում կապիտալիստական երկրների հետ հաստատած փոխհարաբերությունների նոր ձևից։ Ինչպես հայտնի է, երբ գաղութատիրության ծաղկման շրջանում մետրոպոլիաների և դրանց գաղութների տնտեսական փոխհարաբերությունները կառուցվում էին վերջինների նկատմամբ առաջինների բացարձակ թելադրանքի վրա, այն ծայրահեղ շահագործում էր, միակողմանի գործարք։ Այժմ, մետրոպոլիաներ ու գաղութներ հասկացությունները կերպարանափոխվել են, փոխվել են և այն փոխհարաբերությունները, որոնք անցյալում համարվում էին «բնական» ու «նորմալ»։ Այժմ այդ հարաբերությունները չեն հիմնվում մեկի նկատմամբ մյուսի անվերապահ թելադրանքի վրա։ Սակայն չպետք է մոռանալ, որ այս նոր կատեգորիան, վերջին հաշվով, ծառայում է իմպերիալիստական պետությունների և մոնոպոլիաների շահերին, որոնք պարզապես հարկադրված են դիմել փոխհարաբերությունների նոր ձևի, բնավ չփոխելով իրենց նպատակները։

# ՀԱԿԱԿՈՄՈՒՆԻԶՄԸ ՌԵԱԿՑԻԱՅԻ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ Է

Ս. Կ. ՊԱՊՅԱՆ

ՏԵՍՈՒԹՅԱՆ ՄԻ ՔԱՆԻ ՀԱՐՑԵՐ: ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՊԱՅՔԱՐՈՒՄ ՉԿԱ ԽԱՂԱՂ ԳՈՅԱԿՑՈՒԹՅՈՒՆ: «ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅՈՒՆՆ ԱՐԵՎՄՈՒՏՔՈՒՄ»: ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԻՄՆԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ: ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ԺԱՆԴԱՐՄԻ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆԸ: ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ:

*Կոմունիստական և բուրժուական գաղափարախոսությունների միջև ծավալված անզիջում պայքարը արդիականության բնորոշ հատկանիշներից է, հասարակության հոգևոր կյանքի բովանդակությունը։ Մեր անհանգիստ դարում, երբ սոցիալական տեղաշարժերը բովանդակում են հասարակական բազմարնույթ խնդիրներ, երբ պատմական մենամարտում կապիտալիզմը կորցնում է իր վերջին դիրքերը, հին աշխարհի պաշտպանները դիմում են ամեն միջոցի՝ արատավորելու կոմունիզմի գաղափարախոսությունը և պրակտիկան։ Չգտնելով արդիականության շատ պրոբլեմների պատասխանները, բուրժուական գաղափարախոսներն իրենց պրոպագանդիստական մեքենան կենտրոնացնում են սոցիալիզմի և կոմունիզմի քննադատության վրա։ Նրանք ձգտում են կեղծ ինֆորմացիայի միջոցով մոլորեցնել, շեղել մասսաների ուշադրությունը։ Այդ նպատակին է ծառայեցված գաղափարական ներգործման, հասարակական կարծիքի մշակման ողջ սիստեմը։ Ինֆորմացիայի հարուստ զինանոցը, որը հենվում է ֆինանսական և տեխնիկական հզոր բազայի վրա, հակակոմունիզմի գաղափարախոսներին հնարավորություն է ընձեռում հոգեկան գերության մեջ պահել կապիտալիստական երկրների բնակչության դեռևս հին մտածելակերպից չձերբազերծված զգալի խավեր։*

*Ինֆորմացիայի տոտալության պայմաններում, երբ սովորական ընթերցողների և ունկնդիրների համար դժվար է ստուգել այս կամ այն հաղորդագրության ճշմարտությունը, համեմատել փաստերը՝ սուտը, կեղծիքը որոշ ներգործություն են ունենում։ Բուրժուական պրոպագանդիստական ապարատը մեծ ջանքեր է վատնում կապիտալիզմի համար շահավետ փաստերի խմբավորման, ինֆորմացիայի զանազան ձևերի միջոցով իր գաղափարական թույնը տարածելու մարդկանց շրջաններում։ Բուրժուական պրոպագանդան հաճախ է քողարկվում «բարյացակամության», «համամարդկային օբյեկտիվության» դիմակի տակ, ջանում հակառակորդին թելադրել իր համար շահավետ եզրակացություններ, հասկացություններ, չափանիշներ։ Օրինակ, սոցիալիզմի և կապիտալիզմի օրոք կենսամակարդակի հարցը մատուցվում է համեմատության ձևով՝ թե ի՞նչ կարելի է գնել աշխատավարձով։ Այստեղ լռության է մատնվում այն ճշմարտությունը, որ կենսամակարդակը բնորոշվում է ցուցանիշների մեծ շրջանակով և ամենևին չի հանգում դրանցից որևէ մեկին։ Այդ ցուցանիշներից են թե՛ ժողովրդական սպառումն ու ռեալ աշխատավարձը, բնակչությունից գանձվող հարկերը, բնակարանային պայմանները, կուլտուրական պահանջների բավարարումը, բժշկական սպասարկումը, կրթությունը և կենսաթոշակային ապահովումը։ Խուսափելով ցուցանիշների այսպիսի լայն շրջանակի շուրջ համեմատություններ կատարելուց, բուրժուական պրոպագանդիստները ձգտում են նեղացնել բանավեճի շրջանակները, այնպիսի մոտեցում երևան բերել, որը խանգարեր լիակատար բացահայտելու սոցիալիզմի փորձը ժողովրդական բարեկեցության բնագավառում, ցուցադրելու աշխատավորների բարօրության նկատմամբ պետության հոգատարության մասշտաբները, սոցիալիզմի օրոք հանրային սպառման ֆոնդերի տեղն ու նշանակությունը և այլն։*

*Ժամանակակից պայմաններում, սոցիալիստական երկրների նկատմամբ, իմպերիալիզմի գլխավոր գործելակերպն է՝ միջամտելու միջոցով հասնել սոցիալիստական հասարակարգի գաղափարական հիմքի քայքայման։ Այժմ հակակոմունիզմի գաղափարախոսները, որպես կանոն, չեն համարձակվում բացարձակ հանդես գալ սոցիալիստական կարգերի դեմ, հասկանալով, որ այդ տակտիկան չի կարող լայն հեղինակություն վայելել։ Քողարկելով քայքայիչ նպատակները, նրանք պատրաստ են «ճանաչելու» սոցիալիզմի որոշ հաջողություններն ու նվաճումները, բայց միայն իրենց մեկնաբանմամբ, իրենց «ուղղումներով»։ Նրանք ճգնում են կոմունիզմի գաղափարները, սոցիալիստական շինարարության պրակտիկան այնպես նենգափոխել, որպեսզի այն ընդունելի լինի բուրժուազիայի համար։*

*Արտասահմանում մեր հակառակորդները հարաճուն տագնապ են ապրում, տեսնելով, թե ինչպես են Հոկտեմբերյան հեղափոխության, կոմունիզմի գաղափարները ավելի ու ավելի մեծ ներգործություն ունենում համաշխարհային զարգացման ընթացքի վրա։ Հակակոմունիզմի ամերիկյան «մասնագետներից» մեկը՝ Արթուր Մեյերհոֆը Համոզմունքի ստրատեգիան գրքում գրել է. «Մենք բախվեցինք կոմունիզմի սպառնալիքի հետ, հենց որ դա ծնվեց... Սակայն այսօր այդ սպառնալիքն ավելի մեծ է, քան անցյալ տարի, ավելի մեծ, քան անցյալ ամիս, ավելի մեծ, քան անցյալ շաբաթ... իր առաջին երերուն քայլերն անելու ժամանակից կոմունիզմը տիրում էր մեծ տերիտորիաների և ավելի արագ էր կողմնակիցներ գտնում, քան մարդկության պատմության մեջ ամեն մի կրոն կամ քաղաքական այլ շարժում»։ Շարունակելով իր միտքը, նա ընդգծում է. «Մեր ինֆորմացիայի ծրագիրը կամ հոգեբանական ներգործության ծրագիրը (անվանեք այն, ինչպես ցանկանում եք) ազգային պաշտպանության առաջին գծի կարևոր տարրն է։ Ես սա ասում եմ այն պատճառով, որ թեև ամենքին հայտնի է, որ մենք ջերմամիջուկային դարն ենք թևակոխել, սակայն նույնքան էլ ճշմարիտ է այն, որ մենք համոզման դարն ենք թևակոխել։*

*Սոցիալիստական երկրները «էրոզիայի» ենթարկելու տակտիկական գծին համապատասխան՝ հակակոմունիզմը մշակել է հատուկ ծրագիր, որի նպատակն է՝ բազմապատկել բուրժուական գաղափարախոսության արտահանումը սոցիալիստական երկրներ, օգտագործել ամեն հնարավորություն գաղափարապես ներազդելու, ամենից առաջ՝ բնակչության այն շերտերի ու խմբերի վրա, որոնք, ըստ հակակոմունիստների հաշիվների, կարող են անկայուն լինել։ Բուրժուական գաղափարախոսները երբեմն հանդես են գալիս «վերդասակարգային» տեսության դրոշի տակ։ Նրանք մոռանում են, որ մարդկությունը ոչ մի «երրորդ» գաղափարախոսություն չի մշակել, և, ընդհանրապես, դասակարգային հակասություններով բզկտվող հասարակության մեջ չի կարող լինել արտադասակարգային կամ վերդասակարգային գաղափարախոսություն։*

*Բուրժուազիայի գաղափարախոսները դիմում են ամեն միջոցի՝ սևացնելու Սովետական Միության անցած ուղին։ Աչք փակելով պատմական կոնկրետ իրողությունների առջև, նրանք ջանում են ժխտել Սովետական Միության, սոցիալիստական մյուս պետությունների պատմական նվաճումները տնտեսության, մշակույթի, գիտության և տեխնիկայի բնագավառներում։ Բայց չէ՞ որ հենց սովետական իշխանությունը, որը բուրժուական գուշակներն անվանում են «անարդյունավետ տնտեսական սիստեմ», կարողացավ պատմական կարճ ժամանակահատվածում մեր հետամնաց ու չքավոր երկիրը դարձնել հզոր ու հարուստ, որը հաջողությամբ մրցակցում է կապիտալիզմի առաջին երկրի՝ ԱՄՆ-ի հետ։*

*Արդի հակակոմունիզմի կարևոր գծերից է անձի ազատության ու դերի մասին մարքս-լենինյան տեսության խեղաթյուրումը։ Մեր դասակարգային հակառակորդները պնդում են, որ կոմունիզմը իբր ճնշում է անհատին, անխուսափելի կոնֆլիկտ ստեղծում անձի և հասարակության միջև։ Նրանք հաճախ ստիպված են խոստովանել մեր հաջողությունները նյութական արտադրության ոլորտում, սակայն իսկույն վերապահում են անում, որ իբր դրանք ձեռք են բերվել մար-*

գու ազատության և իրավունքների սահմանափակման հաշվին։ Ֆրանսիական ռեակցիոն գործիչ Ժան Լակրուան քարոզում է այն մտայնությունը, թե մարքսիզմը «մոռացել է մարդուն», իսկ նրա հայրենակից Ռայմոն Արոնը անհիմն եզրակացնում է, որ «ամերիկյան պրոլետարիատն ավելի մեծ չափով է ազդում Սպիտակ տանն ընդունվող որոշումների, քան սովետական բանվորները՝ Կրեմլում ընդունվող որոշումների վրա»։ Փաստերը ցույց են տալիս հակառակը։ Ո՞ւմ հայտնի չէ, որ ԱՄՆ-ում տարբեր սահմանափակումների հետևանքով պրեզիդենտական ընտրությունների ժամանակ 15 միլիոն քաղաքացիներ զրկվում են ձայնի իրավունքից, իսկ 50 միլիոն բանվորներ և մանր ֆերմերներ չեն կարողանում կոնգրեսում ընտրել և ոչ մի ներկայացուցիչ։ Յուրաքանչյուր անկանխակալ մարդ գիտե, որ Սովետական Միությունում բանվորները, կոլտնտեսականները, ժողովրդական ինտելիգենցիան մասնակցում են պետության կառավարմանը, քննարկում կարևորագույն օրենքների նախագծերը։ Կոմունիստական կուսակցությունը մշտապես խորհրդակցում է ժողովրդի հետ, արտահայտում նրա կամքը։

Կապիտալիստական մոտ 40 երկրներում կոմունիստական և բանվորական կուսակցություններն արգելված են, գտնվում են ընդհատակում։ Իմպերիալիստները բռնության միջոցով սահմանափակում են աշխատավորների դեմոկրատական իրավունքները։ Իմպերիալիզմի ռեակցիոն քաղաքագետները Սովետական Միությանն ու սոցիալիստական մյուս երկրներին մեղադրում են հեղափոխություն արտահանելու մեջ։ Արևմուտքին քաջ հայտնի է, որ կոմունիստները դեմ են հեղափոխության արտահանմանը, այն դիտում են որպես տվյալ երկրի դասակարգային ուժերի կոնֆլիկտի արտահայտություն։

ԱՄՆ-ում լայնորեն տարածված է «կոմունիզմի ուսումնասիրությունը», որն իր առջև խնդիր է դրել նենգափոխել կոմունիստների գաղափարներն ու գործերը։ Այդ նպատակի համար այնտեղ ծառայում են մի քանի հազար «մասնագետներ»։ 1961 թ. ԱՄՆ-ի պրեզիդենտի պահանջով ամերիկյան դպրոցներում մտցված հակակոմունիզմի դասընթացի բաղկացուցիչ մասն է հանդիսանում ռուսերենի ու ՍՍՀՄ մյուս ժողովուրդների լեզուների դասավանդումը։ Բարձրագույն ուսումնական հաստատությունների հատուկ ֆակուլտետներում սոցիալիստական երկրներն ուսումնասիրող ուսուցիչներ և առանձին «մասնագետներ» են պատրաստում։ Ներկայումս ԱՄՆ-ում, Անգլիայում, ԳՖՀ-ում և մի շարք այլ երկրներում չկա փոքրիշատե խոշոր ուսումնական հաստատություն, որտեղ չլինի «սովետաբանության» ամբիոն կամ բաժանմունք։

Իմպերիալիստական երկրներում, առանձնապես ԱՄՆ-ում և ԳՖՀ-ում, ստեղծվում են տասնյակ հիմնարկներ, որոնք մասնագիտանում են հակակոմունիզմի տեսության, ծրագրի, տակտիկայի ու ստրատեգիայի մշակման մեջ։ ԱՄՆ-ում այդպիսի հիմնարկներ են ստեղծված, մասնավորապես, Կոլումբիայի, Վաշինգտոնի, Հարվարդի, Իլլինոյսի, Պենսիլվանիայի, Ինդիանայի, Ջորջհեմսի համալսարաններին առընթեր հետազոտական ինստիտուտների ու կենտրոնների անվան տակ։ Բազմաթիվ ուսումնական հաստատություններում գործում են «ռուսաց լեզվի և Ռուսաստանի ուսումնասիրման կենտրոններ»։ Մինչև անգամ Հավայան կղզիներում գտնվող Հոնոլուլու քաղաքի համալսարանում հատուկ դասընթացներ կան անդրկովկասյան և միջինասիական սովետական հանրապետությունների, ինչպես նաև ՍՍՀՄ-ի և Ասիայի երկրների փոխհարաբերությունների ուսումնասիրման նպատակով։ Արևմտյան Գերմանիայում հակակոմունիզմի մասնագետների մի հսկայական խումբ աշխատում է ավելի քան 90 ինստիտուտում, ընկերություններում, արխիվներում, համանման ուրիշ կազմակերպություններում։

Պրոպագանդիստների, պրոֆեսիոնալ հետախույզների, դիվանագետների բանակը, հակակոմունիզմի կենտրոնների մշակած հետևություններն ու հանձնարարականները մուծում է իր զինանոցը, որպեսզի մամուլի, կինոյի, հեռուստատեսության, ռադիոհաղորդումների միջոցով գաղափարական պրովոկացիաներ կազմակերպի։ Տրտեսական նպատակներով են օգտագործվում միջազգային տնտեսական, գիտական, կուլտուրական և տուրիստական կապերը։ Սոցիալիզմի թշնամիները չեն խորշում տարագիր թափթփուկների, պրովոկատորների, հայրենամերժ կոսմոպոլիտների ծառայություններից։

Ամերիկյան իմպերիալիստները ուժ և միջոցներ չեն խնայում, որպեսզի իրենց դրոշի տակ համախմբեն միջազգային ռեակցիայի բոլոր գաղափարախոսներին։ 1953 թ. ստեղծվեց ամերիկյան «Յուսիա» ինֆորմացիոն գործակալությունը, որն ավելի քան 120 երկրներում 250 բաժանմունք ունի։ Այն ֆինանսավորվում և ղեկավարվում է Վաշինգտոնի կողմից։ Գործակալությունում ղեկավար պոստեր են զբաղեցնում պետդեպարտամենտի, Պենտագոնի և կենտրոնական հետախուզական վարչության հետ կապված մարդիկ։ Նրանց տնօրինության տակ է գտնվում, մասնավորապես, «Ամերիկայի ձայն» ռադիոկայանը, որ հաղորդումներ է տալիս 50 լեզուներով։ Գործակալությունն արտասահմանում հրապարակում է 22 թերթ և 55 ամսագիր։ Վերջերս այն կազմեց և 80 երկրներ ուղարկեց, այսպես կոչված՝ «կոմունիզմի դասագրքեր»։ Վաշինգտոնում 1955 թվականից լույս է տեսնում ինֆորմացիոն գործակալության գլխավոր տպագիր օրգանը՝ «Կոմունիզմի պրոբլեմները» ամսագի-



րը, որը վերածվել է միջազգային ռեակցիայի յուրատեսակ խոսափողի։

Հակակոմունիզմի պրոպագանդման նպատակներով միջազգային ռեակցիան ամբողջությամբ օգտագործում է բուրժուական գիտությունը, գրականությունը, մամուլը, կինոն, ռադիոն, հեռուստատեսությունը, եկեղեցին։ Սակայն չնայած ռեակցիոներների ջանքերին՝ ամենուր աճում և ամրապնդվում է մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ազդեցությունը։

Սոցիալական տարբեր կարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցությունը մարդկային հասարակության զարգացման օբյեկտիվ անհրաժեշտություն է։ Սակայն խաղաղ գոյակցությունը չի նշանակում, որ դադարեցվում է դասակարգային պայքարը, որ վերացվում է գաղափարական պայքարը։ Դասակարգային տեսակետից հակադիր գաղափարախոսությունների խաղաղ գոյակցությունն անհնար է, անհաշտելի են դրանց միջև եղած հակասությունները։ Գաղափարական պայքարում կոմունիստական և բանվորական կուսակցությունները մերկացնում են կոմունիզմին խորթ գաղափարներն ու հայացքները, լայնորեն պրոպագանդում ամենաառաջավոր ուսմունքը՝ մարքսիզմ-լենինիզմը։

Մարքսիզմ-լենինիզմի անաղարտության համար մղվող պայքարում կուսակցականության խստիվ պահպանումը եղել և մնում է ՍՄԿԿ քաղաքականության անկյունաքարը։ Կուսակցության քաղաքականությունը հիմնված է գիտական հիմքերի, հասարակական և միջպետական հարաբերությունների ռեալ հաշվառման վրա։ Եթե միջպետական հարաբերություններում հնարավոր են զիջումներ, ապա գաղափարախոսության, սկզբունքային հարցերում չի կարող լինել ոչ մի զիջողություն։

Արդի էտապում սոցիալիզմի և կապիտալիզմի միջև մղվող գաղափարական պայքարի ոլորտում պատերազմի և խաղաղության հարցը հիմնականն է։ Իզուր չէ, որ խաղաղ գոյակցության և հասարակության կյանքից պատերազմների բացառման կոչերը վիթխարի ժողովրդականություն են վայելում։ Իմպերիալիստական բուրժուազիան և նրա գրչակները կանգ չեն առնում մասսաների շրջանում կեղծիքներ տարածելու ոչ մի միջոցի առջև։ Նրանք ամեն կերպ ձգտում են «ապացուցել», որ խաղաղ գոյակցությունը սոսկ մանյովր է, կոնյունկտուրային դիվանագիտական միջոց։ Նրանք աշխատավորների գիտակցությունը թունավորում են հակակոմունիստական այդ գաղափարով։

Ըստ երևույթին հույսը դնելով որոշ մարդկանց վատ հիշողության վրա, իմպերիալիստական պրոպագանդան ՍՍՀՄ խաղաղասիրական քաղաքականությունը, երկրորդ համաշխարհային պատերազմից առաջ, բացատրում է նրա թուլությամբ։ Այժմ աղմկելով Սովետական Միության ուժի ու հզորության վերաբերյալ, նրանք, այնուամենայնիվ, ձգտում են հին փաստարկներով հերքել խաղաղ գոյակցության գաղափարը, բարբաջելով, թե երբ Սովետական Միությունը ավելի ուժեղանա, իբր, կհրաժարվի խաղաղության իր քաղաքականությունից։

Այժմ, երբ իմպերիալիստների արկածախնդրական կուրսը պարտություն է կրում, Արևմուտքում առանձնապես աճում է պահանջարկը կապիտալի աշխարհի գաղափարախոսական պաշտպանների նկատմամբ։ Այդ առնչությամբ բավական պարզորոշ է արտահայտվել անգլիական բուրժուական «Թայմս» թերթը։ 1967 թ. դեկտեմբերի 23-ի համարում գրված է, որ գլխավոր հույսը պետք է դնել ո՛չ թե քաղաքական գործիչների ու դիվանագետների, այլ գիտնականների, սոցիոլոգների և հոգեբանների վրա։

Համաշխարհային տիրապետության ֆաշիստական հավակնորդների ջախջախումը դաս չեղավ «ուժի դիրքից» ելնող քաղաքականության անդրօվկիանոսյան գաղափարախոսների համար։ Կոմունիզմը ոչնչացնելու և յանկիների իմպերիալիզմի համաշխարհային տիրապետություն հաստատելու ցանկությունը մնում է որպես անդրօվկիանոսյան «կատաղիների» հիմնական գաղափարը։ «Մենք ավելի շուտ ամբողջ աշխարհը կխորտակենք, քան թույլ կտանք ապրելու կոմունիզմի օրոք»,— հայտարարում է Բ. Գոլդուոտերը։ Ամերիկյան մոնոպոլիաների գլոբալ ստրատեգիայի պլաններն ավելի պատկառելի ձևով է շարադրում ԱՄՆ-ի նախկին պետական քարտուղար Դ. Ռասկը։ «Հարկ է, որ մենք հոգանք,— ասել է նա,— ամբողջ մոլորակի, նրա հողերի, ծովերի, մթնոլորտի և նրա շրջակա տարածության համար»։

Հակակոմունիզմի գլխավոր նպատակն է՝ խոչընդոտել կապիտալիզմի կործանման և ժողովուրդների դեմոկրատական ու սոցիալիստական զարգացման ուղուն անցնելու օրինաչափ, օբյեկտիվ պրոցեսին։ Իմպերիալիզմը փորձում է ամեն գնով ետ խլել իր կորցրած դիրքերը, վերականգնել կապիտալիստական սիստեմը, որպես միակ և համապարփակ սիստեմ, ջախջախել հեղափոխական ուժերը։ Այդ դիտավորություններին համապատասխան՝ հակակոմունիստները պայքար են մղում երեք ճակատով։ Առաջինը՝ ՍՍՀՄ և սոցիալիզմի դեմ ուղղված պայքարի ճակատն է։ Հակակոմունիզմի քաղաքական դիվերսիաների Երկրորդ ճակատը ուղղված է ազգային-ազատագրական շարժման դեմ։ Երրորդը՝ համաշխարհային բանվորական շարժման, կապիտալիստական երկրների առաջադիմական ուժերի դեմ։ Իմպերիալիստական երկրների, ամենից առաջ՝ ԱՄՆ-ի քաղաքականությունը արդի փուլում ունի վառ արտահայտված հակակոմունիստական, հակասովետական բնույթ։

Հակակոմունիզմի դրսևորումները բազմազան են։ Սակայն դրա տեսությունն ու պրակտիկան, ամենից առաջ՝ պատերազմների ու պատերազմական պրովոկացիաների նախապատրաստում է ընդդեմ Սովետական Միության, սոցիալիզմի մյուս երկրների։ Իմպերիալիզմը պատրաստ է մարդկության նկատմամբ ամենածանր հանցագործությունը կատարել հանուն իր ղառանցալի նպատակի։ «Հարկ չկա վախենալու հրթիռա-միջուկային պատերազմից,— ասել է ԱՄՆ-ի ռեակցիոն քաղաքական գործիչ Բ. Գոլդուոտերը։— Գլխավորը տոտալ հաղթանակն է կոմունիզմի դեմ մղվող պայքարում»։ «Պատերազմը սարսափելի բան է, բայց խաղաղությունը նույնպես սարսափելի է»,— հայտարարել է ամերիկյան առաջատար ռազմական տեսաբաններից մեկը՝ Գ. Կանը։ Եվ սրանք պարզապես խոսքեր չեն։ Հակակոմունիզմը, որ առանձնապես բարգավաճում է ԱՄՆ-ում, ռազմական վիթխարի ծրագիր ունի։ Դրա ագրեսիվ էությունը դրսևորվում է սպառազինությունների անզուսպ մրցավազքով և բազմամիլիոն բանակն անընդհատ հզորացնելով, հարձակման ստրատեգիական միջոցների զարգացմանը առանձնակի ուշադրություն նվիրելով, ագրեսիվ ռազմա-քաղաքական տարբեր բլոկներ կազմելով, երկրի ո՛չ միայն էկոնոմիկայի, այլև պետական, հասարակական, հոգեկան կյանքի միլիտարիզացումով, նրա բնակչությանը հոգեբանորեն պատերազմի նախապատրաստելով։

Ֆրանսիացի սոցիոլոգ Ռայմոն Արոնն իր «Խաղաղություն և պատերազմ» գրքում ջանում է «ապացուցել», որ խաղաղության գործում չկա և ոչ մի հույս, որ պատերազմն, իբր, անխուսափելի է։ Եվ քանի որ այդ այդպես է, ուրեմն, հարկավոր է հաշտվել ջերմամիջուկային պատերազմի հետ։ Խաղաղության և դեմոկրատիայի թշնամիների նպատակը պարզ է։ Նրանք ձգտում են ահաբեկել ժողովուրդներին։ Ժամանակակից ամերիկյան ֆաշիստները՝ անդրօվկիանոսյան նացիզմի հայրեր Բերչի ու Ռոքուելի բարեկամներն ու համախոհները, հիստերիկ ճիչեր են արձակում՝ «ավելի լավ է մեռնել կապիտալիզմի հետ, քան ապրել սոցիալիզմի ժամանակ», «ավելի լավ է գոյություն չունենալ, քան գոյակցել»։

Ամբողջովին կեղծ «կոմունիստական սպառնալիքի» դեմ պայքարելու անվան տակ ԱՄՆ-ում առասպելական միջոցներ են ծախսվում։ Թեկուզ այն փաստը, որ հետպատերազմյան ժամանակաշրջանում այդ նպատակով ծախսվել է մեկ տրիլիոն 150 միլիարդ դոլար, ինքնին պերճախոս վկայություն է։ «Հենց հանուն հակակոմունիզմի,— նշել է ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցության գլխավոր քարտուղար Հես Հոլլը,— մեր ժողովրդի ուսերին բարդում են անընդհատ ավելացող ռազմական բյուջեներ, որոնք արյունաքամ են անում լուսավորության սիստեմը, խղճուկ փշրանքներ թողնում հասարակ մարդկանց սոցիալական ապահովման համար, բայց փոխարենը հարստացնում մի բուռ մոնոպոլիստների»։ Կոմունիզմի, ամենից առաջ՝ ՍՍՀՄ և մյուս սոցիալիստական երկրների դեմ ուղղված պայքարն ստիպում է մեծացնել ամերիկյան բանակի թիվը, ավելացնել միջուկային և հրթիռային զենքի պաշարները, ստրատեգիական ավիացիայի պարկը և ատոմային ստորջրյա նավատորմը։ Ըստ ամերիկյան պաշտոնական տվյալների, ԱՄՆ-ի զինված ուժերը, ընդհանուր առմամբ, ներկայումս ունեն 6700 ռազմական օբյեկտ։ Դրանցից 2200-ը, ըստ օտարերկրյա մամուլի հաղորդագրության, տեղաբաշխված է Արևմտյան Եվրոպայում, Հեռավոր Արևելքում, Հարավ-Արևելյան Ասիայում, սոցիալիստական երկրների սահմաններին մոտ գտնվող շրջաններում։

Վերջին շրջանում կոմունիզմի դեմ պայքարելու դրոշի տակ իմպերիալիստներն ամենահրեշավոր հանցագործություններ կատարեցին։ Ծավալվեց ագրեսիա հեղափոխական Կուբայի դեմ, իրագործվեց զինված ներխուժում Դոմինիկյան Հանրապետություն, ագրեսիա սանձազերծվեց կորեական ժողովրդի դեմ, իսկ այժմ կեղտոտ պատերազմ է մղվում Վիետնամում։

Հակակոմունիզմի նպատակներին են ծառայում, այսպես կոչված՝ «ճկուն հակազդեցության» քաղաքականությունը, «սահմանափակ պատերազմների» և ագրեսիվ բնույթի այլ տեսություններ, որ կոչված են արդարացնելու ուրիշ սուվերեն պետությունների գործերին ունեցած իմպերիալիստների միջամտությունը։

«Ես հաստատ համոզված եմ, որ ազատության հորիզոնների ընդլայնման համար մղվող պայքարում... խոսքերն ու գաղափարները նույնքան կարևոր են, որքան հացն ու թնդանոթները,— վերջերս հայտարարեց ԱՄՆ-ի կոնգրեսի միջազգային կազմակերպությունների և շարժումների գործերի ենթահանձնաժողովի նախկին նախագահ Դանտե Ֆեսսելը։— Մենք չենք կարող հուսալ, որ միմիայն ռազմական ու տնտեսական ծրագրերի օգնությամբ կհասնենք մեր արտաքին քաղաքականության նպատակներին։ Իմ կարծիքով, այժմ աշխարհում մղվող պայքարի ելքը, վերջին հաշվով, լուծվելու է մարդկանց գիտակցությամբ»։

Այժմ,— ասված է ՍՄԿԿ Կենտկոմի 1968 թ. ապրիլյան պլենումի որոշման մեջ,— երբ իմպերիալիստները սկսում են գիտակցել, որ ի վիճակի չեն զենքի ուժի միջոցով հաղթել Սովետական Միությանը և սոցիալիստական մյուս երկրներին, որ նրանց անխուսափելի պարտություն է սպասում սոցիալիզմի հետ տնտեսական մրցության մեջ ևս, նրանք կոմունիզմի դեմ



պայքարում գլխավոր հույսը դնում են գաղափարական դիվերսիաների վրա։

Չհրաժարվելով սպառազինությունների մրցավազքից, Արևմուտքն ազդարարեց «գաղափարների պատերազմ» վարել սոցիալիստական պետությունների դեմ։ Իմպերիալիստական պետությունների կառավարող շրջանները պետական քաղաքականության մակարդակի են հասցնում «հոգեբանական պատերազմը»։

Փաստերը վկայում են, որ արևմտյան տերությունների կառավարող շրջանները չեն բավարարվում նրանով, որ հակակոմունիզմ են պրոպագանդում միմիայն իրենց երկրներում։ Օգտագործելով զանազան միջոցներ (օրինակ՝ ռադիոպրոպագանդան, տուրիզմը), նրանք, իրենց արտահայտությամբ, ձգտում են «գաղափարների պատերազմը» փոխադրել հակառակորդի «տերիտորիա»։ Առաջին հերթին իմպերիալիստներն իրենց հույսը դնում են սովետական ժողովրդի գաղափարական զինաթափման վրա, ժողովուրդ, որը նոր աշխարհի ուղի է հարթում ամբողջ մարդկության համար։ Նրանք փորձում են սասանել մեր մարդկանց հավատը կոմունիզմի հաղթանակի անխուսափելիության նկատմամբ, մեզ պարտադրել գաղափարախոսությունների խաղաղ գոյակցության գաղափարը, տարբեր բնույթի գաղափարական դիվերսիաներով ճիշտ ուղուց շեղել նոր աշխարհը կառուցողներին։

Հակակոմունիստներն իրենց հույսը դնում են ռևիզիոնիստական, նացիոնալիստական և քաղաքականապես տհաս տարրերի վրա։ Այդպիսի տակտիկան պատահական չէ։ Ինչպես աջ, այնպես և ձախ աղանդավորական բնույթի ռեֆորմիզմը, ռևիզիոնիզմը միշտ թշնամական հոսանքներ են եղել բանվորական շարժման, սոցիալիզմի համար, այդ պատճառով իմպերիալիստական ռեակցիան միշտ ակտիվորեն պաշտպանել է դրանք։ Աջ ռեֆորմիստական տարրերը ձգտում են բանվոր դասակարգին, ժամանակակից հեղափոխական շարժումը ծառայեցնել բուրժուազիայի շահերին։ «Ձախ» ռևիզիոնիստները փորձում են հեղափոխական շարժումը ենթարկել մանր բուրժուազիայի, մանր բուրժուական քաղաքականության շահերին, հանդես են գալիս բանվոր դասակարգի առաջատար դերի վերաբերյալ գաղափարի դեմ, ժխտում հասարակական զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները, քաղաքականության ասպարեզում կանգնած են սուբյեկտիվիզմի և արկածախնդրության դիրքերում։ Պատահական չէ, որ նման գործողությունները խրախուսվում են հակակոմունիզմի կողմից։

Իմպերիալիստական պրոպագանդան ի վիճակի չէ առաջ քաշելու այնպիսի գաղափարներ, որոնք կարողանային հրապուրել ժողովրդական լայն մասսաներին։ «Թեև Ամերիկան ունի պրոպագանդիստների ամենամեծ բանակը, որ երբևէ իմացել է աշխարհը,— գրել է պրոֆեսոր Ջ. Մանսեն,— այդուհանդերձ, ընդհանուր գանգատ է լսվում, թե այդ բանակն անհրաժեշտ և արդյունավետ զինամթերքի պակաս է զգում։ Այո՛, կոմունիզմի համեմատությամբ դա իսկապես այդպես է»։

Ձգտելով հաղթահարել գաղափարական սնանկությունը, գաղափարական փակուղինները, բուրժուազիան իր գործունեությունը զարգացնում է մի շարք բնագավառներում։ Նախ և առաջ, փորձեր են արվում ամեն կերպ այժմեականացնել բուրժուական գաղափարները, դրանց օգնությամբ արդարացնել կապիտալիստական կարգերը։ Կոմունիզմի գաղափարներին հակադրվում են «ժողովրդական կապիտալիզմի», «կապիտալի դեմոկրատականացման», «սեփականության դիֆուզիայի» տեսությունները։ Ըստ նորագույն բուրժուական հայացքների, կապիտալիստական երկրներում, իբր, տեղի է ունեցել «եկամուտների հավասարակշռում»։ Դասակարգերը «չքացել են» և փոխարկվել առասպելական հատուկ շերտերի, խմբերի։ Իմպերիալիստական պրոպագանդան ձգտում է կեղծել, խեղաթյուրել և գռեհկացնել կոմունիստական հայացքները։ Որպես կոմունիստական հայացքներ են մատուցվում Դյուրինգի բռնության տեսությունը, որ ժամանակին մերկացրել են Մարքսն ու Էնգելսը, «հեղափոխության արտահանման» տրոցկիստական տեսությունը և այլն։ Բուրժուական գրչակները հակակոմունիզմի խոր ճգնաժամից դուրս գալու ելք են որոնում, փորձելով «սինթեզել» բուրժուական և սոցիալիստական տեսությունները, դրանք «հիբրիդացնել» կապիտալիզմի ու սոցիալիզմի իբր թե տեղի ունեցող «կոնվերգացման» (մերձեցման) հիման վրա։ Հակակոմունիզմի ջատագովներն իրենց գաղափարա-քաղաքական սնանկությունը ճգնում են հաղթահարել պատմությանն արդեն հայտնի «գողացված լոզունգների» տակտիկայով։ Կապիտալի հոգևոր զինակիրները խեղաթյուրում են դեմոկրատիայի, խաղաղության, ազատության, քաղաքակրթության, ազգերի ինքնորոշման հասկացությունների քաղաքական էությունը, իրենց գաղափարների ամլությունը սքողում «հոգեբանական պատերազմի» միջոցների կատարելագործմամբ։

Բուրժուական գաղափարախոսները հույս ունեն ազդել կամազուրկ, բարոյապես անկայուն և քաղաքականապես տհաս մարդկանց համոզմունքների վրա։ Նրանք հարձակվում են գաղափարախոսության կուսակցականության, սոցիալական կյանքի պրոցեսների ու երևույթների նկատմամբ սկզբունքային, հետևողական դասակարգային մոտեցում ցուցաբերելու անհրաժեշտության վերաբերյալ մարքսիստական-լենինյան լոզունգի վրա, քարոզում են ինչ-որ «բացարձակ ազատության» ընդհուպ մինչև սոցիա-

լիզմի երկրներում հակասոցիալիստական գործունեության ազատությունը, ամեն կերպ խրախուսում դեմոկրատիայի անարխիստական ըմբռնումը։ Հենց այդպես վարվեցին նրանք սոցիալիստական Չեխոսլովակիայի նկատմամբ։

Միջազգային ռեակցիան համառ փորձեր է անում թուլացնելու սոցիալիզմի լագերի երկրների միասնությունը։ Այդպիսի գրոհներն իրագործվում են սոցիալիզմի երկրների հասարակական կյանքը «դեմոկրատականացնելու», «լիբերալացնելու» խորամանկ լոզունգների տակ։ Կատաղի ատելություն տածելով կոմունիստների հանդեպ, իմպերիալիստական ուժերը սոցիալիզմի երկրներում դեմոկրատիայի «կատարելագործման» նպատակով երազում են այստեղ տեսնել «ընդդիմադիր կուսակցություններ»։ Հակակոմունիստներն հովանավորում են այդպիսի «կուսակցություններին», սոցիալիստական իրականության քննադատներին։ Դեռ ավելին, մեր հակառակորդներն այն հույսն են փայփայում, թե «լիբերալացման» և «դեմոկրատացման» լոզունգների տակ սոցիալիզմի երկրներում կստեղծվեն ուժեր, որոնք հարմար պահին հանդես կգան սոցիալիզմի դեմ։ Գերմանացի ականավոր գրող-հումանիստ Բերտոլդ Բրեխտը հակակոմունիզմն անվանում էր քաղցկեղային ուռուցք մարդկության մարմնի վրա։ Ցավոք, մարդկանց այդ հրեշավոր հիվանդության դեմ պայքարելու դեռևս արդյունավետ միջոցներ չկան։ Սակայն այդպիսի սոցիալական վարակի աղբյուրները, հարուցիչները և կրող-բացիլները հայտնի են ամբողջ աշխարհին։ Աշխարհում կան նաև հակակոմունիզմի դեմ պայքարելու հզոր, հուսալի միջոցներ։ Դրանք պատկանում են սոցիալիստական պետություններին, ամբողջ աշխարհի ազատասեր ժողովուրդներին։

Սակայն աններելի կարճատեսություն կլիներ չնկատել այն վնասը, որը կարող է հասցնել բուրժուական պրոպագանդան կոմունիզմի կառուցման գործին, եթե ցուցաբերվի անհոգություն, մշտական անհաշտ պայքար չմղվի։ Սովետական Միությունում բուրժուական գաղափարախոսության համար սոցիալական հող չկա։ Բայց դա չի նշանակում, որ թշնամական պրոպագանդան չի կարող քայքայիչ ազդեցություն ունենալ մեր հասարակության որոշ մասի վրա։ Իմպերիալիզմի գաղափարախոսները փորձում են հենվել մասնավոր սեփականատիրական, նացիոնալիստական և հնի այլ մնացուկներ կրողների, բարոյապես անկայուն, երկդիմի մարդկանց վրա, որոնք այս կամ այն կերպ քողարկում են իրենց արատները։

Իրականացնելով կոմունիզմի ծավալուն կառուցման ղեկավարությունը, մեր կուսակցությունը բարձր պահանջներ է ներկայացնում գաղափարական ճակատի բոլոր աշխատողներին։ Հակակոմունիզմի դեմ անզիջում, սկըզբունքային, հարձակողական պայքարը՝ կուսակցության գաղափարական ճակատի առաջնահերթ խնդիրն է։





# «ՈՒՂԵՂՆԵՐԻ ՀՈՍՔԸ» ԼԱՏԻՆԱԿԱՆ ԱՄԵՐԻԿԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

Է. Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

«Ուղեղների հոսքը», որի հայտանիշներն առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ պատահական բնույթ ունեին, այժմ սպառնացին չափերի է հասել Եվրոպայում, Ասիայում, Լատինական Ամերիկայի երկրներում։

«Ուղեղների տեղատվություն», «ուղեղներ քամել», «խակ գլուխների շահագործում», «ուղեղների տոնավաճառ» և այլ տերմինների երևան գալը, առաջին հերթին, կապված է ԱՄՆ-ի հետ, որի կողմից տարվող գիտության կողոպուտի պետական քաղաքականությունը տարածվել է կապիտալիստական բոլոր երկրներում։

Բարձրորակ մասնագետներին, գիտնականներին զարգացող երկրներից գայթակղել-տանելը, գիտատեխնիկական ազգային ռեսուրսների հափըշտակումը շահագործման մի ձև է, որն ուղղակիորեն սպառնում է նոր զարգացող երկրների քաղաքակրթությանը։ Կորցնելով մասնագետներին, տուժած ազգն ի վիճակի չի լինում համակշռել գիտական կադրերի վրա ծախսած ժամանակն ու միջոցները և, ի վերջո, զրկվում է նրանցից։

Լատինական Ամերիկայի երկրներում, բացառությամբ Կուբայից, ուր իշխում է ԱՄՆ-ի տընտեսական, կուլտուրական և ռազմական ուժը, «ուղեղների հոսքը» գիտական հետամնացության, տգիտության, այդ աշխարհամասի թըշվառ վիճակի անմիջական պատճառներից մեկն է դարձել։ Հյուսիսամերիկյան ներգաղթի դեպարտամենտի տվյալների համաձայն, 1961—65 թթ. ժամանակաշրջանում, Լատինական Ամերիկայի երկրներից (առանց Կուբայի) ԱՄՆ են ներգաղթել բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող 28.714 տարբեր մասնագետ, ինչպես նաև բարձրորակ բանվորներ։ Այս տվյալները նվազեցված են, որովհետև Հյուսիսամերիկյան ներգաղթ կազմակերպող իշխանությունները չեն հաշվառում Ճամայկայից և Անտիլյան արշիպելագի մյուս երկրներից եկողներին, այն դեպքում, երբ վերջինների «ավանդը» «ուղեղների տեղափոխման» գործում, 1961—1964 թթ., կազմում է 2.556 մարդ։ Ընդ որում, լատինաամերիկացի մասնագետներ չեն համարվում նրանք, ովքեր ժամանակավորապես ԱՄՆ են եկել մի երրորդ երկրից՝ Իսպանիայից, Ֆրանսիայից և այլն, ու մնացել այնտեղ ընդմիշտ։ Տվյալներ չկան նաև Պուերտո-Ռիկոյից։ Այսպիսով, մոտ 40 հազարի է հասնում 1961—1965 թթ. ԱՄՆ ներգաղթած լատինաամերիկյան մասնագետների թիվը։

* * *

Այսպես կոչված՝ սերուցքի հայթայթման պրոցեսն ընդգրկում է բազմաթիվ մասնագիտություններ։ Հիշյալ տարիներին ԱՄՆ եկած լատինաամերիկացիների ընդհանուր թվի 40 տոկոսը համալսարանական բարձրագույն կրթություն ունեցող մասնագետներ են, 60 տոկոսը՝ միջին մասնագետներ ու որակավորված բանվորներ։

Նշված ժամանակաշրջանում ԱՄՆ են ներգաղթել 3.773 բժիշկ, 2.588 կրտսեր բուժաշխատող, 5.287 ուսուցիչ (բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող), 2.987 հաշվապահ, 2.403 ինժեներ, 790 դասախոս և հրահանգիչ, 409 քիմիկոս, 374 դեղագործ, 354 ճարտարապետ, 172 գյուղատնտեսության բնագավառի գիտնական, 109 տնտեսագետ, 81 անասնաբույժ, 80 բիոլոգ և այլն։

Բացի այդ, հայտնի է, որ 1964 թ. լատինաամերիկյան գիտնականներից ԱՄՆ-ում հետազոտական աշխատանքներով զբաղված են եղել քիմիայի բնագավառում՝ 203, բիոլոգիայի՝ 120, ֆիզիկայի՝ 98, մաթեմատիկայի՝ 74, գյուղատնտեսության՝ 26, այլ բնագավառներում՝ 118 հոգի։

Հյուսիսամերիկյան մոնոպոլիաները գերադասում են տաղանդավոր գիտնականներին «ներմուծել» հեռանկարային տարիքում, ստեղծագործական ուժերի ծաղկման շրջանում, երբ նրանք արդեն գիտելիքների տեսական և գործնական որոշակի պաշար են ձեռք բերել։ Օրինակ, Չիլիի գիտնականների մեծ մասը, որն աշխատում է ԱՄՆ-ի գիտահետազոտական կենտրոններում, 27—30 տարեկան է, մյուս, ոչ-պակաս կարևոր, խումբը՝ 38—40, երրորդ աննշան մասը՝ 27-ից ցածր և 48-ից բարձր տարիք ունեն։ Անհրաժեշտ է նշել նաև, որ լատինաամերիկյան գիտնականների գրեթե կեսն իրենց երկրների համալսարանների նախկին դասախոսներն են։ Այս չափանիշով է կատարվում նաև գրադարանավարների, բժիշկների, ուսուցիչների, իրավաբանների, էլեկտրիկների, ատամնատեխնիկների, երաժիշտների, գծագրողների, երկրաբանների և այլոց ընտրությունը։

Քանակական ցուցանիշների համաձայն, ԱՄՆ-ին, ամենից ավելի, մասնագետներ են տրվել Հարավային Ամերիկան՝ 15.168 հոգի, այնուհետև Անտիլյան արշիպելագի երկրները (Ցամայկա, Հայիթ, Դոմինիկյան Հանրապետություն)՝ 5.653, ապա Կենտրոնական Ամերիկայի՝ 3.994 և, վերջապես, Մեքսիկան՝ 3.899 հոգի։ Տվյալները ցույց են տալիս, որ մեկ մլն բնակչի համեմատ, առաջին տեղը գրավում են Անտիլյան արշիպելագի երկրները (451 հոգի), ապա Կենտրոնական Ամերիկան (282), Մեքսիկան (95) և Հարավային Ամերիկան (92)։ Այստեղից կարելի է եզրակացնել, որ ամենից ավելի, կորուստներ են կրում Լատինական Ամերիկայի ամենաաղքատ երկրները։

Լատինական Ամերիկայի համար «ուղեղների տեղատվությունը» ԱՄՆ իրոք ազգային աղետ է, որի հետևանքով գնալով վատթարանում են ժողովրդի կյանքի պայմանները, արդյունաբերության և գյուղատնտեսության ոլորտում իջնում է աշխատանքի արտադրողականությունը, խաթարվում գիտության ու կուլտուրայի զարգացումը, կրճատվում բուժսպասարկումը, ավելանում բնակչության անգրագիտությունը։ Ողբերգական չափերի է հասնում բժիշկների պակասը։ Մինչդեռ, ԱՄՆ է մեկնում լատինաամերիկյան երկրների յուրաքանչյուր տարվա շրջանավարտների 8 տոկոսը։ Եթե այս տոկոսը բաժանելու լինենք երկրների վրա, ապա կըստացվի, որ Հայիթը՝ թողնում են շրջանավարտ բժիշկների 48 տոկոսը, Պանաման՝ 40, Դոմինիկյան Հանրապետությունը՝ 37, Սալվադորը, Գվատեմալան, Նիկարագուան, Էկվադորը՝ 20—40 տոկոսը։ 1964 թ. միայն Դոմինիկյան Հանրապետությունը ԱՄՆ-ին է տվել 300 բժիշկ (այնքան, որքան ԳՖՀ-ն)։ 1967 թ. ԱՄՆ մեկնելու վիզա են ստացել լատինաամերիկացի 600 բժիշկ։ Այնինչ, ըստ առողջապահության համաշխարհային կազմակերպության տվյալների (1967 թ.), Լատինական Ամերիկայի երկրներում հիվանդությունից և թերսնումից ամեն տարի մեռնում են 600 հազար երեխա, իսկ 37 տոկոսը՝ ֆիզիկապես լիարժեք չէ։ Դժվար չէ պատկերացնել բնակչության բուժսպասարկումը, եթե Հայիթի բժիշկների մոտ կեսը փախել է ԱՄՆ և այդ երկրի յուրաքանչյուր 10 հազար բնակչին ընկնում է մոտ 0,7 բժիշկ (1965 թ.)։

Լատինական Ամերիկան ԱՄՆ-ին է մատակարարում բարձրորակ դասախոսներ և ուսուցիչներ, երբ լատինաամերիկացիների 50 տոկոսը անգրագետ է, ուսուցիչների 40 տոկոսը՝ դիպլոմավորված չէ, 1.400 բրազիլացի երեխաներից միայն մեկն է համալսարանական կրթություն ստանում։ Մի՞թե Լատինական Ամերիկայի երկրների տնտեսական, սոցիալական, կուլտուրական և քաղաքական զարգացմանը չեն արգելակում այն տխուր տվյալները, որոնց համաձայն 1951—60 թթ. ընթացքում Արգենտինայից արտագաղթել են ԱՄՆ բարձրագույն ուսումնական հաստատություններն ավարտած ինժեներների 80 տոկոսը, քիմիկոսների՝ 6, բժիշկների՝ 5 և ճարտարապետների՝ 3 տոկոսը։ Մեքսիկան այնքան մասնագետ է տվել ԱՄՆ-ին, որքան Ֆրանսիան և Իտալիան։ ԱՄՆ-ում աշխատում են մոտ 50 բրազիլացի գիտնական, ըստ որում, այնպիսի նշանավոր գիտնականներ, ինչպես Սերխիո Պորտոնը, որը զբաղվում է լազերի ճառագայթների ուսումնասիրությամբ կամ ատոմային էներգիայի փորձագետ Մարսիրիս Ջիոգետոին։

Եթե նկատի առնենք, որ մի մասնագետի պատրաստման վրա միջին հաշվով ծախսվում է 25 հազար դոլար (իսկ մի շարք այլ գործոնների առկայությամբ այն հասնում է 40—50 հազարի), միջին մասնագետի վրա՝ 12,5 հազար, ապա ուրեմն 1961—65 թթ. ընթացքում Լատինական Ամերիկայի երկրները անվերադարձ կորցրել են 500 մլն դոլար։ Իսկ եթե ելնենք արտագաղթածների ռեալ թվից (40 հազար), «ուղեղներ քամելը» նրանց նստել է 650 մլն դոլար։

Վերջերս համաշխարհային մամուլի էջերում մեծ տեղ է հատկացվում գիտնականների արտագաղթը ծնող պատճառների ուսումնասիրությանը։ Հետաքրքրական է նշել, որ Ֆրանսիան 1960 թ. գիտատեխնիկական զարգացման անկախության քաղաքականություն է վարում։ Նա կարողացել է բլոկադայի ենթարկել «ուղեղների հոսքը» և ԱՄՆ-ին ամենից քիչ մասնագետներ է տվել։ Անգլիան և Իսրայելը այդ ուղղությամբ ևս արդեն քայլեր են անում. 1968 թ. հուլիսի 1-ից երեք տարով արգելվել է անգլիացի գիտնականներին ԱՄՆ տեղափոխվել, իսկ Իսրայելում օրենք



է հրատարակվել, ըստ որի երկիրը թողնել ցանկացող մասնագետը, առաջին հերթին, պետք է վճարի դրամական փոխհատուցում։ Լատինական Ամերիկայի երկրներում նման փորձերը դեռևս անհետևանք են մնում։ Լատինաամերիկյան 21 հանրապետություններից միայն Բրազիլիային է հաջողվել ԱՄՆ-ի հետ համաձայնության գալ 22 ֆիզիկոսների վերադարձնելու համար։

Ֆորդի Ֆոնդով կատարված էսեքսի 2300 շրջանավարտների (1966 թ.) հարցափորձը, ինչպես նաև «ուղեղների հոսքի» կապակցությամբ 1967 թ. կայացած Լոզանի կոնֆերանսի նախօրեին) Փարիզի «Մոնդ» թերթի հետազոտությունները գիտնականների ԱՄՆ ներգաղթելու հիմնական պատճառներն այսպես են բացատրում. «Համալսարանի կառուցվածքի, լաբորատոր սարքավորումների հետամնացության, գիտահետազոտական աշխատանքների համար չնչին հատկացումներ, ԱՄՆ-ում հարուստ փորձ ձեռք բերելու ցանկություն և ԱՄՆ-ի համեմատությամբ ցածր աշխատավարձ»։ Արգենտինյան գիտնական Ա. Բեռնարդոն գտնում է, որ լատինաամերիկյան մասնագետների ԱՄՆ ներգաղթելու պատճառներն են՝ անինքնավստահությունը, իր երկրի հանդեպ հավատ չունենալը, գիտական տրադիցիաների բացակայությունը, նյութական անհաղթահարելի դժվարությունները, աշխատանք գտնելու անհնարինությունը։

Դոկտոր Շարլ Կիդը (ԱՄՆ) գիտության ու տեխնիկայի գծով ֆեդերալ սովետի քարտուղարը՝ լատինաամերիկյան գիտնականների արտագաղթի վերաբերյալ հանրահայտ գործերի հեղինակը, հիշատակում է, որ լատինաամերիկյան մասնագետներին ԱՄՆ-ում հրապուրում է՝ բարձր աշխատավարձը, անձնական ազատությունը, քաղաքական կայուն վիճակը, համալսարաններում ու արդյունաբերության մեջ իրականացվող գիտահետազոտական լայնածավալ ծրագիրը։ Իրոք, Լատինական Ամերիկայի շատ երկրներում «կաուդիլիզմի» ծաղկման հետևանքով, չկա քաղաքական կայունություն. բայց հետաքրքրական է, թե ինչու դոկտոր Կիդը պարզություն չի մտցնում այդ հարցում և չի խոսում այն մասին, որ Լատինական Ամերիկայում ռազմադիկտատորական բոլոր ռեժիմները արմատավորվում են եթե ոչ ԱՄՆ-ի ու նրա ծովային հետևազորի անմիջական օգնությամբ, ինչպես այդ եղավ, ասենք, Դոմինիկյան Հանրապետությունում, ապա, համենայն դեպս, նրանց լիովին համաձայնությամբ։ Մի՞թե Արբենսի կառավարությունը Գվինեայում, Ժոաո Գուլարտինը Բրազիլիայում չտապալվեց այն բանի հետևանքով, որ նրանք առաջ քաշեցին դեմոկրատական, տնտեսական և քաղաքական էական վերափոխումների ծրագիր։

Վերջապես, մի՞թե կարելի է ԱՄՆ-ի «քաղաքական կայունությունը» և «անձի ազատությունը» լուրջ պատճառաբանություններ համարել, եթե «ազատ աշխարհի այս միջնաբերդում» Վիետնամի պատերազմի և զովերգված երկկուսակցության սիստեմի փլուզման պատճառով տիրում է կառավարական և վալյուտաֆինանսական ճգնաժամ, եթե մահափորձեր են արվում քաղաքական գործիչների վրա և նրանք բանտ են նետվում, եթե ողջ Ամերիկան ցնցվում է նեգրական հուզումներից ու սարսափով սպասում բողոքի ավելի ուժգին ելույթների՝ ընդդեմ ռասայական խտրականության։

Լատինական Ամերիկայի երկրները, մի կողմից՝ լինելով Հյուսիսամերիկյան կապիտալի հումքային հավելուկի և շահավետ հավելվածի ոլորտ, մյուս կողմից՝ հսկայական գումարներ ներդնելով բանակը պահելու համար, ի վիճակի չեն պատշաճ ուշադրություն նվիրելու գիտական կադրերի պատրաստմանը և այնպիսի մասշտաբի ամեն տեսակ հետազոտական աշխատանքներ կատարելու, որոնք հոգային նրանց ազգային կարիքները։ Արևմտյան կիսագնդի միակ բացառությունը սոցիալիստական Կուբան է, որը կարողացավ ո՛չ միայն փոխհատուցել մասնագետների կորուստը, այլև հեղափոխության տարիներին բավականաչափ ավելացնել նրանց թիվը։ 1959 թ., օրինակ, երկրում կար 6.286 բժիշկ, 1959—65 թթ. բժիշկների հոսքը հասնում էր 1975 հոգու (այստեղ չի հաշվված հեղափոխության առաջին օրերին երկիրը թողած բժիշկների խումբը)։ Հեղափոխական կառավարության պատասխան միջոցառումների շնորհիվ շրջանավարտ բժիշկները 1959—67 թթ. 3.167 հոգի էին, իսկ ներկայումս նրանց ընդհանուր թիվը՝ 7.318 է։

Կուբան այն զարգացող սակավաթիվ երկրներից մեկն է, որը կատարում է Յունեսկոյի որոշումը՝ դպրոցական հասակ ունեցող բոլոր երեխաների համար ստեղծում ուսման պայմաններ (դասարաններ, ուսուցիչներ)։ Այն բատիստական ռեժիմից գրեթե մեկ մլն անգրագետ էր ժառանգել (979207)։ Սոցիալական այդ չարիքը արմատախիլ անելու նպատակով կազմակերպված մասսայական կամպանիայի շնորհիվ անգրագետների տոկոսը այժմ 4-ից չի անցնում։ 1967 թ. Կուբայի 7,5 մլն բնակչից ուսման ոլորտն է ընդգրկվել 2,5 մլն։ Եթե 1959 թ. երկրում կար 17.355 ուսուցիչ, ապա այժմ կա՝ 41.922։ Երեք համալսարաններում սովորում են մոտ 30 հազար ուսանող։ Կուբայի երիտասարդությունը բարձրագույն կրթություն է ստանում արտասահմանյան 12 երկրներում՝ ՍՍՀՄ-ում, ԳԴՀ-ում, Չեխոսլովակիայում և այլուր։

Հանրահայտ է, որ արտասահմանյան մասնագետներ ձեռք բերելը ավելի ձեռնտու ու էժան է նստում, քան տեղում պատրաստելը։ ԱՄՆ-ը

ձգտում է ուրիշ երկրներից գիտնականներ ըստանալ նաև այն պատճառով, որ այդ երկրում 35 մլն բնակիչ, նյութական անբարենպաստ պայմանների հետևանքով, ի վիճակի չեն բարձրագույն կրթություն ստանալ։ Բացի այդ ռասսայական խտրականության նկատառումներով միլիոնավոր նեգրերի, պուերտորիկացիների, մեքսիկացիների և այլ ազգությունների համար բարձրագույն ուսումնական հաստատությունների դռները փակ են։

Ուղեղների գիտակցական և կանխամտածված շահագործման մասին է վկայում նաև այն փաստը, որ 1965 թ. ԱՄՆ-ի կոնգրեսը հավանություն տվեց ազգային քաղաքականության այն օրենքին, որը պարգևնում է բոլոր ձեռնարկատիրություններ ու մեծ արտոնություններ տալիս գիտության, տեխնիկայի և արվեստի բնագավառում իրենց ունակություններով աչքի ընկած ԱՄՆ ներգաղթող նշանավոր գիտնականներին։ Այդ օրենքի համաձայն 1968 թ. ԱՄՆ-ը արտասահմանյան բարձրորակ մասնագետների համար (բացի Կուբայից ու Լատինական Ամերիկայի երկրներից եկողների, որոնց մեկնումը ԱՄՆ կապվում է փոքր սահմանափակումների հետ) ամեն տարի պետք է ապահովի 34 հազար վիզա։

Ընդ որում, արտասահմանյան մասնագետներին գրավելու ԱՄՆ-ի ձեռնարկած բոլոր միջոցները չեն խանգարում նրանց չտեսնված ցինիզմով այնպիսի խաղեր խաղալու, ինչպես 1967 թ. լատինաամերիկյան մասնագետներ պատրաստելու նպատակով Պունտա դել Էստեում հրավիրված խորհրդակցությունում արված առաջարկությունն էր կամ 1968 թ. Վաշինգտոնի ապրիլյան խորհրդակցությունը, որտեղ պրեզիդենտ Ջոնսոնն առաջարկեց հնգամյա պլան մշակելու համար բարձր մակարդակի մասնագիտական հանձնաժողով կազմակերպել, որը Արևմտյան կիսագնդի այդ երկրներում կարագացնի ինտեգրացիան և կիրականացնի սոցիալական ու տնտեսական հեղափոխություն։

Հյուսիսային հարևանի հետ լատինաամերիկյան երկրների հարաբերությունների դառը փորձը ցույց է տալիս, որ բոլոր այդ պլանները, վերջին հաշվով, վնասում են իրենց։

Լատինական Ամերիկայի հասարակական լայն շրջանները հանգում են այն եզրակացության, որ ինտելեկտուալ ռեսուրսների շահագործումից և ԱՄՆ-ի կախվածությունից ազատվելու ամենաարդյունավետ միջոցները տարբեր սոցիալ-քաղաքական կառուցվածք ունեցող պետությունների միջև գիտատեխնիկական և կուլտուրական համագործակցություն ստեղծելն է։

Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները, որոնք տնտեսական հզոր պոտենցիալ ունեն գիտահետազոտական աշխատանքների համար, գիտության բոլոր ասպարեզներում մասնագետներ պատրաստելու գործում ակնառու հաջողությունների են հասել, պատրաստ են Լատինական Ամերիկայի երկրների հետ փոխադարձաբար օգտակար և հավասար իրավունքներով համագործակցություն ստեղծելու։



# ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ԿՅԱՆՔ

Ա. Հ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի կազմակերպական-կուսակցական աշխատանքի բաժնի վարիչ

## ԿՈՒՍԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԵՐԻ ԲԱՐՁՐԱՑՄԱՆ ՀԱՄԱՐ

Հանրապետության սկզբնական կուսակցական կազմակերպություններում ավարտվեցին հաշվետվություններն ու ընտրությունները, որոնք ամենուր ընթացան ՍՄԿԿ XXIII համագումարի և Կենտկոմի պլենումների որոշումների անշեղ կատարման նշանաբանով, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստման կապակցությամբ առաջացած քաղաքական ու աշխատանքային պաթոսի պայմաններում։ Այդ հաշվետու-ընտրական ժողովները մի անգամ ևս ցուցադրեցին կուսակցական կազմակերպությունների աճող դերը բանվորական կոլեկտիվների կյանքում, հրատապ տնտեսական-քաղաքական խնդիրների լուծման բնագավառում։ Կոմունիստները բազմակողմանիորեն քննարկեցին կուսկազմակերպությունների գործունեությունը, ամփոփեցին հաշվետու ժամանակաշրջանում իրենց կատարած կազմակերպական ու քաղաքական գործունեության արդյունքները։

Ժողովների մեծ մասն անցավ փոխադարձ պահանջկոտության, ծավալուն քննադատության ու ինքնաքննադատության, կուսկազմակերպությունների աշխատանքի կարևորագույն հարցերի վերաբերյալ կարծիքների փոխանակության գործարար մթնոլորտում։ Ժողովներն ընթացան պատշաճ կազմակերպվածությամբ և կոմունիստների ակտիվությամբ։ Մտքերի փոխանակությամբ հանդես են եկել ավելի քան 29 հազար կոմունիստ՝ համարյա յուրաքանչյուր երեք մասնակցից մեկը։

Լայն ու բազմազան էր հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստների քննարկած հարցերի բնույթը։ Արդյունաբերական ձեռնարկությունների կոմունիստներն իրենց հոգսերն ունեն, կոլտնտեսությունների ու սովխոզների կոմունիստներն՝ իրենց։ Տարբեր էին այն հարցերը, որ քննարկեցին կառույցների, տրանսպորտի, գիտության ու կուլտուրայի հիմնարկությունների կոմունիստները։

Սակայն այդ զանազանակերպ ու բազմաթիվ հարցերը կոմունիզմի կառուցման տարբեր մարզերի կենսագործունեության այն օղակներն են, որոնց հաջող լուծումով, օրըստօրե հզորանում և ծաղկում է մեր մեծ հայրենիքը։

Արդյունաբերական ձեռնարկությունների կոմունիստների ուշադրության կենտրոնում էին տնտեսական ռեֆորմի արմատավորման, աշխատանքի գիտական կազմակերպման, տեխնիկական պրոգրեսի արագացման հարցերը։ Հաշվետու ժամանակաշրջանում Հայաստանի արդյունաբերությունը բնութագրվում է աճման բարձր տեմպերով։ 1968 թ. գերակատարվել է արդյունաբերական արտադրանքի ծավալի ընդլայնման պլանը, կատարված են նաև արտադրանքի ինքնարժեքի իջեցման և շահույթների ստացման առաջադրանքները։

Անցյալ տարի հանրապետության արդյունաբերության մի շարք ճյուղեր անցան պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստեմին, ձեռնարկությունների մեկ երրորդից ավելին աշխատեց նոր եղանակով, որոնք թողարկեցին հանրապետության արդյունաբերական արտադրանքի 70 տոկոսը։

Տնտեսական ռեֆորմը ուժեղացրեց աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը, մեծ ասպարեզ բացեց նախաձեռնության համար և օժանդակեց հասարակական արտադրության արդյունավետության բարձրացմանը։ Այդ են վկայում արդյունաբերական բազմաթիվ ձեռնարկությունների հաջողությունները։ Այսպես, Լենինականի Մայիսյան ապստամբության անվան տեքստիլ կոմբինատի կուսկոմի քարտուղար Մ. Թևանյանի զեկուցման մեջ, կոնֆերանսի պատգամավորների ելույթներում տրվեց կոմբինատի կուսկազմակերպության գործունեության ճիշտ վերլուծությունը։ Արտադրանքի իրացման պլանը՝ կոմբինատի աշխատանքի գլխավոր ցուցանիշը, կատարված է։ Անցած 11 ամսվա ընթացքում լրացուցիչ կերպով արտադրվել է մեկուկես միլիոն մետր պատրաստի գործվածք։ Հաշվետու ժամանակաշրջանում կոմբինատի ֆաբրիկաներում գործարկվել են բարձր արտադրողական 139 մեքենաներ ու հաստոցներ, մոդեռնացված են սարքավորման 800 միավորներ, արտադրության մեջ ներդրված է 423 ռացիոնալիզատորական առաջարկություն՝ 230 հազար ռուբլի տնտեսական արդյունավետությամբ։ Երեք եռամսյակ անընդհատ ձեռնարկությունն իր ձեռքում է պահել մրցմամբ նվաճած ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ դրոշը։

Ակներև է, որ վերջին տարիներս կուսակցական կազմակերպությունները ավելի են կոփվել և ի վիճակի են իրոք զբաղվելու յուրաքանչյուր մարդով, վճռականորեն ներգործելու արտադրության բոլոր տեղամասերի վրա, որի օրինակ կարող է ծառայել Քաջարանի՝ Լենինի շքանշանակիր պղնձա-մոլիբդենային կոմբինատի կուսակցական կազմակերպության գործունեությունը։

Պաշտպանելով Մոսկվայի, Լենինգրադի և երկրի մյուս քաղաքների առաջավոր ձեռնարկությունների նախաձեռնությունը՝ հնգամյա պլանը ժամկետից շուտ՝ մինչև 1970 թ. նոյեմբերի 7-ը կատարելու նպատակով, քաջարանցիները, կուսկազմակերպության գլխավորությամբ, լայն մրցություն են ծավալել ստանձնած նոր պարտավորությունները կատարելու համար։ Ամեն ինչում այստեղ տոն են տալիս կոմունիստները։ Հատուկ ուշադրություն է հատկացվում հանքերի տեխնիկական հագեցվածությանը, որի շնորհիվ հանքագործների հերոսական ջանքերով ժամկետից երկու ամիս շուտ շահագործման հանձնվեց 2085-րդ հորիզոնագիծը։ Սակայն արտադրության բարձր տեմպը, նրա ռիթմը



խանգարվեց անցյալ տարվա հունիսի 9-ի և սեպտեմբերի 1-ի երկրաշարժերով, որը լուրջ վնաս հասցրեց կոմբինատին։

Այդ դժվար օրերին ակնբախ դրսևորվեց կուսկազմակերպության անձնվեր պատրաստակամությունը, կոմունիստների պարտքի ու բարձր պատասխանատվության զգացմունքը։ Կտրուկ միջոցներ ձեռնարկվեցին բանվորական աղետների հետևանքները վերացնելու նպատակով, ամենադժվար տեղամասերը կոմունիստներ ուղարկվեցին։ Արդյունքները չուշացան. հանքարանը՝ կոմբինատի կարևորագույն օբյեկտներից մեկը, սկսեց արտադրանք տալ, հանքաքարի տասամսյա պլանը գերակատարվեց զգալի չափով։

Հաշվետու-ընտրական ժողովները կրկին անգամ ցույց տվին, որ չի կարելի բավարարվել ձեռք բերածով, ապավինել ինքնահոսին, որ, ընդհակառակը, անհրաժեշտ է մշտապես կատարելագործել մասսաների շրջանում տարվող կազմակերպական ու քաղաքական աշխատանքը, չզիջել նվաճած դիրքերը, հասնել ավելի մեծ հաջողությունների։ Ում չէ հայտնի հանրապետության փառաբանված ալյումինի գործարանը, որը տասնյակ անգամներ սոցիալիստական մրցության մեջ նվաճել է առաջին տեղը, աչքի ընկել գերազանց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով, բայց անցյալ տարի չկատարեց պետական առաջադրանքները։ Ինչպես պարզվեց հաշվետու-ընտրական ժողովում, գործարանի կուսկոմը, արտադրամասային կուսակցական կազմակերպությունները խիստ թուլացրել են ուշադրությունը աշխատանքի կազմակերպման նկատմամբ, սոցիալիստական մրցությունը ձևական բնույթ է կրել, հոգ չի տարվել աշխատողների նյութական ու բարոյական խրախուսման համար։ Կուսակցական կոմիտեն մակերեսորեն է զբաղվել բանվորների նյութական խթանման և աշխատավարձի հարցերով, անբավարար աշխատանք է տարել կադրերի հետ (լուրջ սխալներ կան նրանց ընտրության և դաստիարակման գործում)։ Ստեղծված դրության ճիշտ գնահատությունը, աշխատանքի ոճի ու մեթոդների արմատական վերակառուցումը հնարավորություն կտան ալյումինագործներին կրկին իրենց պատվավոր տեղը գրավելու հանրապետության առաջավոր ձեռնարկությունների շարքում։

Վերջին տարիներս շատ լավ գործեր են կատարել նաև կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կազմակերպությունները։ Գյուղի աշխատավորներին հաջողվել է անբարենպաստ եղանակի պայմաններում աճեցնել առատ բերք, բարձրացնել անասնապահության մթերատվությունը։ Կոմունիստները կազմակերպական մեծ աշխատանք են ծավալել մասսաների շրջանում, նրանց մոբիլիզացրել արտադրական առաջադրանքների հաջող կատարման համար և հասել նրան, որ կատարվել ու գերակատարվել են հացահատիկի, մսի, կաթի, ձվի, բոստանային կուլտուրաների, շաքարի ճակնդեղի պետական գնումների պլանները։

Գյուղի կոմունիստները հաշվետու-ընտրական ժողովներում լրջորեն խոսում էին այն մասին, թե ինչպես ավելի լավ կատարել ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան պլենումի (1968 թ.) որոշումները։ Հատուկ ուշադրություն նվիրվեց այնպիսի խնդիրների վրա, ինչպիսիք են՝ գյուղատնտեսական կուլտուրաների բարձր և կայուն բերքի ստացումը, հողերի ռացիոնալ օգտագործումը, արտադրանքի ինքնարժեքի իջեցումը, արտադրության մեջ գիտության ու առաջավոր փորձի նվաճումների հմուտ և արագ արմատավորումը և այլն։

Հանրապետության կոլտնտեսություններում ու սովխոզներում կուսկազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովները ցույց տվին, որ գյու-

զանտեսական արտադրության ոլորտում իրոք բարձրացել է կոմունիստների դերը, նրանք սկսել են ավելի լավ զբաղվել գյուղի զարգացման հոգսերով։

Անցած տարիների լավ գործունեությամբ աչքի է զարնում, օրինակ, Ապարանի շրջանի Վարդենուտ գյուղի կոլտնտեսության կուսակցական կազմակերպությունը, որն իր ուշադրությունը կենտրոնացրել է կազմակերպական հարցերի վրա։ Կոլտնտեսության կոմունիստները ճիշտ են գլխավորում մասսաների գործունեությունը։ Արտադրության առավել դժվարին տեղամասերում բարձրացել է կոմունիստների վճռական դերը, նրանց պատասխանատվությունը՝ հանձնարարված գործի համար։ Կոլտնտեսության 26 կոմունիստներից 20-ն անմիջականորեն աշխատում են արտադրության մեջ։ Այժմ արդեն Վարդենուտի կոլտնտեսությունը բավականին ամրապնդվել է, ունի բարձր ցուցանիշներ, հաջողությամբ է կատարում իր պլանները։

Հաշվետու-ընտրական ժողովները միաժամանակ ցույց տվին, որ թեև շատ կուսկազմակերպություններ իրենց գործունեությունը վարում են կուսակցության XXIII համագումարի պահանջների ոգով, այնուամենայնիվ որոշ կուսկազմակերպությունների դերն իրենց կոլեկտիվների կյանքում դեռևս աննշան է։

Արտաշատի շրջանի Կալինինի անվան բանջարաբուծական սովխոզն այսօր էլ առաջավոր տնտեսություն համարել չի կարելի։ Սակայն վերջին ժամանակներս սովխոզի կուսակցական կազմակերպության գործունեության մեջ նկատելի են տեղաշարժեր։ Կազմակերպությունը զբաղվում է կադրերի տեղաբաշխման ու դաստիարակման, արտադրության կարևորագույն տեղամասերում կոմունիստների ավանգարդային դերի ապահովման հարցերով։ 1968 թ. սովխոզն առաջին անգամ կատարեց բանջարեղենի վաճառքի պետական պլանը։ Բայց ուրախացնում է ոչ միայն կոլեկտիվի արտադրական հաջողությունը, այլև այն, որ կոմունիստները դրսևորում են ինքնաքննադատական վերաբերմունք, պատասխանատվության բարձր զգացում տնտեսության գործերի վիճակի համար։ Տարակույս չկա, որ կուսկազմակերպության գործունեության ուժեղացումը ավելի դրականորեն կազդի սովխոզի կոլեկտիվի ինչպես արտադրական ցուցանիշների, այնպես էլ կյանքի մյուս կողմերի վրա։

Դժբախտաբար, այդ բանը չի կարելի ասել Արտաշատի շրջանի Արարատ, Բաղրամյանի անվան, Արտաշատ, Այգեստան, Մրգավան, Ներքին Դվին գյուղերի և մի շարք այլ կոլտնտեսությունների կուսկազմակերպությունների վերաբերյալ։ Այդ տնտեսությունների արտադրական ցուցանիշները չափազանց ցածր են. 1968 թ. մեկ հեկտարից նրանց խաղողի բերքը կազմել է 12—22 ցենտներ։ Այդ տնտեսությունների ղեկավարները ցածր բերքատվությունը բացատրում են խիստ անբարենպաստ եղանակներով։ Բայց չէ որ նույն պայմաններում Քաղցրաշեն գյուղի կոլտնտեսությունը մեկ հեկտարից ստացել է 144 ցենտներ խաղող։ Նշանակում է՝ պատճառն այլ է։ Հիշյալ տնտեսություններում ցածր է աշխատանքի կարգապահությունը, աշխատունակ բնակչության զգալի մասը չի մասնակցում հանրային արտադրությանը։ Եվ դա զարմանալի չէ, որովհետև կուսակցական կազմակերպությունները թույլ աշխատանք են տանում մասսաների շրջանում, հաշտվում են շատ կոմունիստների կողմից իրենց պարտականությունների անփույթ վերաբերվելու հետ, իսկ կուսկազմակերպությունների բյուրոները, քարտուղարները նրանց նկատմամբ անհրաժեշտ պահանջկոտություն չեն ցուցաբերում։

Կուսկազմակերպության շրջկոմները պետք է պարզեն գործերի վիճակը



յուրաքանչյուր կոլտնտեսային և սովխոզային կուսկազմակերպությունում, նրանց մշտական կոնկրետ օգնություն ցույց տան, հասնեն այն բանին, որպեսզի բոլոր կազմակերպություններն ակտիվանան, բարձրացվի նրանց գործունակությունը, ուժեղացվի նրանց ազդեցությունն արտադրական կյանքի, աշխատավոր մասսաների կոմունիստական դաստիարակության վրա։

Հաշվետու ժամանակաշրջանում զգալիորեն ակտիվացել են հանրապետության կառույցների կուսակցական կազմակերպությունները։ Նրանք որոշակի աշխատանք են տանում պետական պլանների կատարման համար կոլեկտիվներին մոբիլիզացնելու նպատակով, սկսել են ավելի շատ հոգատարություն ցուցաբերել բանվորների համար նորմալ պայմաններ ստեղծելու նկատմամբ, համառ ջանքերով արագացնում են շինարարության տեմպերը։ Սակայն, դեռևս շատ ձեռնարկություններում կան լուրջ թերություններ։ Ժամանակին շահագործման չեն հանձնվում բնակելի տները, արդյունաբերական, կուլտուր-կենցաղային օբյեկտները, ցածր է աշխատանքի որակը, մեխանիզմներն անբավարար են օգտագործվում, վատ է աշխատանքի կազմակերպումը։

Կուսակցական կազմակերպությունները, շրջկոմները և քաղկոմները պետք է վճռական միջոցներ ձեռնարկեն արագացնելու շինարարության տեմպերը, բարձրացնելու շինարարական աշխատանքների որակը, իջեցնելու ինքնարժեքը, անպայման կատարելու հնգամյակի առաջադրանքները։

Նոր ինչ ավարտված հաշվետու-ընտրական ժողովների արդյունքները ցույց տվին, որ զգալիորեն ուժեղացել է կոմունիստների ուշադրությունը ներկուսակցական կյանքի հարցերի նկատմամբ։ Զեկուցումների ու ելույթների համար բնորոշ էր հասունացած պրոբլեմների արծարծումն ու դրանց քննարկումը։ Զեկուցումներում ավելի քիչ էին տաղտկալի ինքնահաշվետվությունները, սնամեջ, շաբլոն հավաստիացումները։ Բացի այդ. հաշվետու-ընտրական ժողովներում քննարկվեցին նաև կուսակցության շարքերի աճի և երիտասարդ կոմունիստների դաստիարակության հարցերը։ Եվ դա հասկանալի է, որովհետև աշխատանքի հաջողությունը զգալի չափով որոշում է կուսակցական կազմակերպությունների որակական կազմը։ Վերջին տարում մեր հանրապետությունում զգալիորեն բարելավվեց ՍՄԿԿ շարքերն ընդունելու և երիտասարդ կոմունիստների դաստիարակության գործը։ 1968 թվականին հանրապետական կուսակցական կազմակերպությունը համալրվեց 4577 նոր անդամներով, որոնց ճնշող մեծամասնությունն անմիջականորեն արտադրության ոլորտում զբաղված մարդիկ են, բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության և ինտելիգենցիայի արժանավոր ներկայացուցիչները։ Այսպես, ընդունվածների թվում բանվորներն ու գյուղացիները կազմում են 56,7 տոկոս, ընդ որին ՍՄԿԿ շարքերն ընդունված մտավորականների և ծառայողների ավելի քան 75 տոկոսը ինժեներա-տեխնիկական աշխատողներ են։

Հաշվետու տարում կուսշարքերն ընդունվածների մեջ ավելացավ նաև կանանց (21,8 տոկոս) և կոմերիտականների (35,4 տոկոս) թիվը։ Առանձնապես հավանության արժանի է Երևանի Լենինյան շրջանի, Կիրովականի քաղաքային, Ալավերդու, Կալինինի, Ղուկասյանի և մի շարք այլ շրջանների կուսակցական կազմակերպությունների գործունեությունը։ Այդ կազմակերպությունները մեծ ուշադրություն են նվիրել արտադրության առաջավորներին կուսակցության շարքերն ընդունելու հարցին։ Զարմանալի չէ, որ ընդունվածների թվում բանվորներն ու գյուղացիները կազմել են 65—75 տոկոս։

Դժբախտաբար, մի շարք կուսակցական կազմակերպություններում պատ-

շաճ ուշադրություն չեն դարձնում կուսակցական աշխատանքի այդ կարևորագույն բնագավառի վրա։ Թալինի, Շամշադինի, Արթիկի, Մարտունու շրջաններում 1968 թ. կուսշարքերն ընդունվածների մեջ զգալի չափով իջել է բանվորների ու գյուղացիների տոկոսը։ Կուսակցական կազմակերպությունները, քաղկոմներն ու շրջկոմները, ՍՄԿԿ XXIII համագումարի ցուցումներին համապատասխան պետք է առաջիկայում հասնեն այն բանին, որ բանվորները գերակշիռ տեղ գրավեն կուսակցության սոցիալական կազմում, ուժեղացնեն ընդունելությունը կոմերիտականներից, բանվորական և կոլտնտեսային առաջավոր երիտասարդներից, բարձրացնեն կանանց թիվը ընդունվողների կազմում։

Կուսակցական հաշվետու-ընտրական շատ ժողովներում մատնանշվել է, որ վերջին ժամանակներս ավելի ու ավելի է զարգանում ներկուսակցական դեմոկրատիան, իրոք պահպանվում են կուսակցական կյանքի լենինյան նորմերը, կիրառվում են ՍՄԿԿ կանոնադրության պահանջները, զգալիորեն ակտիվացել են կուսակցական մասսաները։

Ուշագրավ է, որ հաշվետու զեկուցումներում և կոմունիստների ելույթներում ներկուսակցական դեմոկրատիայի հարցերը քննվում են ոչ թե մեկուսի, այլ սերտորեն շաղկապված կուսակցական կյանքի հրատապ և կենսական խնդիրների հետ։ Բնականաբար, ժողովներում լուրջ զրույցներ եղան ոչ միայն կոմունիստների անձնական օրինակի, նրանց ավանգարդային դերի բարձրացման վերաբերյալ, այլև այն մասին, որ կուսակցության յուրաքանչյուր անդամ պետք է բարձր պահի այդ վեհ կոչումը և պրակտիկ գործերով ապացուցի իր նվիրվածությունը կուսակցությանը, իր ամբողջ գիտելիքներն ու եռանդը նվիրաբերի կոմունիզմի շինարարության գործին։

Երևանի, Կիրովականի, Լենինականի, Ախուրյանի, Կալինինոյի, Հոկտեմբերյանի և այլ շրջանների մի շարք կուսակցական կազմակերպությունների հաշվետու-ընտրական ժողովներում նշվեցին, որ երբեմն լիբերալ վերաբերմունք է ցուցաբերվում այն կոմունիստների նկատմամբ, ովքեր իրենց վարքագծով վնասում են կուսակցության հեղինակությանը։ Ժողովականները միանգամայն իրավացիորեն կուսկազմակերպությունների նորընտիր բյուրոներից, կոմիտեներից, քարտուղարներից պահանջում էին խստորեն պատժել նրան, ով խախտում է կուսակցական ու պետական կարգապահությունը։ Քաղաքային և շրջանային կոմիտեները, բոլոր կուսակցական կազմակերպությունները պետք է վտարեն ՍՄԿԿ անդամի կոչումն արատավորող անձերին, սրբությամբ պահպանեն կուսակցության շարքերի անաղարտությունը։

Հաշվետու-ընտրական ժողովներն իրավամբ մեծ ուշադրություն դարձրին կուսակցական կազմակերպությունների գաղափարական հարցերին։ Լուրջ ուշադրություն նվիրվեց հատկապես գաղափարական-դաստիարակչական և մասսայական-քաղաքական աշխատանքին, աշխատավորների կոմունիստական դաստիարակությանը, քննարկվեցին կոմունիստների մարքս-լենինյան կրթության հարցերը, ամփոփվեց այդ բնագավառում կուտակված դրական փորձը, միջոցառումներ նշվեցին տեղ գտած թերությունները վերացնելու համար։

Ինչպես զեկուցումներում, այնպես էլ շատ կոմունիստների ելույթներում նշվում էր, որ վերջին ժամանակներս գաղափարական աշխատանքի բովանդակությունը հարստացել է և դարձել ավելի նպատակասլաց։ Կուսակցական կազմակերպություններն ավելի լավ են զբաղվում քաղաքական ինֆորմացիայի և պրոպագանդայի, աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության



հարցերով, հմտորեն են պայքարում հակակոմունիզմի գաղափարական դիվերսիաների դեմ։ Հանրապետության կուսակցական կազմակերպությունները հետայսու պետք է ավելի լավ օգտագործեն պրոպագանդայի և գաղափարական ներգործության բոլոր միջոցները, վճռական հակահարված տան բուրժուական գաղափարախոսության ոտնձգություններին և սովետական մարդկանց դաստիարակեն լենինիզմի գաղափարների, կոմունիզմի գործին նվիրվածության ոգով։

Կուսակցության անդամների աշխարհայացքի ձևավորման, նրանց քաղաքական ակտիվության բարձրացման ասպարեզում մեծ դեր է վերապահված կուսակցության լուսավորության սիստեմին։ Հաշվետու-ընտրական ժողովները հաստատեցին, որ քաղաքական կրթության սիստեմի վերակառուցումը, քաղաքական ուսուցման օղակներում հաստատուն կարգի սահմանումը նպաստում են ունկնդիրների ակտիվության բարձրացմանը, գիտելիքների ավելի հիմնավոր յուրացմանը։ Անցած ուսումնական տարվա արդյունքները ցույց տվին, որ իրոք բարձրացել է ուսուցման գաղափարական մակարդակը։ Բայց, ինչպես արդարացիորեն նշվում էր ժողովներում, առանձին կոմունիստներ շարունակում են անպատասխանատու վերաբերմունք ցույց տալ իրենց գաղափարական-տեսական մակարդակի բարձրացման գործին, մի շարք կուսակցական կազմակերպություններ պարզապես ինքնահոսի են թողել քաղուսուցումը, ձախողվում են պարապմունքները, կան նաև իրենց պարտականություններին անփույթ վերաբերվող պրոպագանդիստներ։

Ներկայումս, երբ ամենուրեք նախապատրաստվում են ըստ արժանվույն դիմավորելու Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը, կուսակցական կազմակերպությունների պարտականությունն է՝ ավելի լայնորեն պրոպագանդել մարքս-լենինյան ուսմունքը, կազմակերպել լենինյան տեսական ժառանգության, լենինիզմի խոր ուսումնասիրությունը։

Ժողովներում կոմունիստներն անդրադարձան նաև հասարակական կարգը, սոցիալիստական համակեցության կանոնները խախտողների դեմ մղվող պայքարում կուսակցական կազմակերպությունների դերի ուժեղացմանը։ Առանձնապես ընդգծվեց կուլտուրայի օջախների աշխատանքը բարելավելու, երիտասարդության ժամանցը ճիշտ կազմակերպելու, նրա հետ տարվող աշխատանքի ձևերն ու մեթոդները կատարելագործելու, նրա հոգևոր պահանջները լիովին բավարարելու անհրաժեշտությունը։

Բարձրագույն ուսումնական հաստատությունների, գիտա-հետազոտական և մյուս ինստիտուտների կոմունիստներն իրենց ժողովներում նշում էին, որ կուսակցական կազմակերպությունները նկատելիորեն բարելավել են գիտական հետազոտությունների կազմակերպումը, որի շնորհիվ բարձրացել է նրանց արդյունավետությունը, ուժեղացել է գիտության նշանակությունը արտադրության կազմակերպման բնագավառում։ Դրա հետ միասին ժողովներում միանգամայն ճիշտ մատնանշվեց, որ կուսակցական կազմակերպությունները պետք է մեծ դեր խաղան քիչ հետազոտված բնագավառների, առանձնապես հասարակական կյանքի բնագավառների ուսումնասիրությունը կազմակերպելու ասպարեզում։ Անհրաժեշտ է գիտնականներին ավելի ակտիվորեն ներգրավել սոցիոլոգիական հետազոտությունների ոլորտը, ավելի լայնորեն օգտագործել դրանց արդյունքները կուսակցական աշխատանքում։

Հաշվետու-ընտրական ժողովներում կոմունիստները շատ քննադատական դիտողություններ արին հանրապետության կուսակցական տնտեսական

մարմինների, առանձին մինիստրությունների ու գերատեսչությունների հասցեին։ Առանձնապես սուր քննադատության ենթարկվեց Երևանի քաղաքային սովետի գործկոմը՝ քաղաքային տրանսպորտի աշխատանքն անբավարար կազմակերպելու համար։ Շատ ժողովներում լուրջ քննադատության ենթարկվեցին արդյունաբերական շինարարության և գյուղական շինարարության մինիստրությունները՝ շինարարական օբյեկտների գործարկման ժամկետները ձախողելու, աշխատանքի ցածր որակի, կառուցվող օբյեկտները մեխանիզմներով, շինանյութերով անբավարար չափով ապահովելու համար։ Ժողովներում կոնկրետ թերությունների համար քննադատվեցին գյուղատնտեսության, բնակչության կենցաղային սպասարկման, ավտոմոբիլային տրանսպորտի մինիստրությունները, «Հայգյուղտեխնիկայի» միավորումը և այլ մինիստրություններ ու գերատեսչություններ։

Կուսակցական օրգանների հաշվետվություններն ու ընտրություններն անցան բարձր մակարդակով, ՍՄԿԿ Կենտկոմի հրահանգի անշեղ կատարման նշանաբանով։ Կոմունիստները պատասխանատվության լիակատար ըմբռնումով մոտեցան կուսկազմակերպությունների կոմիտեների, բյուրոների և քարտուղարների նոր կազմի ընտրություններին. ընտրվեցին առավել հասունացած, ակտիվ և եռանդուն կոմունիստներ։

Կուսակցական կազմակերպությունների 4359 քարտուղարներից փոխվել են 1261-ը (28,9 տոկոսը), որը վկայում է կուսկազմակերպությունների քարտուղարների կազմի հետագա կայունացումը։ Քարտուղարների թվում նկատելիորեն աճեց կանանց թիվը (24,4 տոկոսը)։ Քարտուղարների որակական կազմի զգալի բարձրացման մասին է խոսում նրանց կրթական մակարդակը։ 1910 քարտուղար ունեն բարձրագույն, 354-ը ոչ լրիվ բարձրագույն, 1744-ը միջնակարգ կրթություն։ Միայն 5 քարտուղար ունեն տարրական կրթություն։ Արդյունաբերական ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների ու սովխոզների սկզբնական կուսակցական կազմակերպությունների քարտուղարներ են ընտրվել՝ ճնշող մեծամասնությամբ ժողովրդական տնտեսության մասնագետներ, հմուտ բանվորներ ու կոլտնտեսականներ, մարդիկ, որոնք մեծ հեղինակություն են վայելում իրենց կոլեկտիվներում։

Կուսակցության քաղաքային ու շրջանային կոմիտեները, հանրագումարի բերելով կուսակցական հաշվետու-ընտրական ժողովների արդյունքները, պետք է հանգամանորեն ամփոփեն կոմունիստների քննադատական դիտողություններն ու առաջարկությունները, միջոցառումներ նշեն դրանց կենսագործման ուղղությամբ, կուսակցական կազմակերպություններին իրազեկ պահեն նրանց դիտողությունների ու առաջարկությունների կատարման ընթացքի մասին։ Անհրաժեշտ է հոգատարություն ցուցաբերել կուսակցական կազմակերպությունների նորընտիր քարտուղարների նկատմամբ, նրանց համար կազմակերպել սեմինարներ, մշտական օգնություն ցույց տալ նրանց պրակտիկ աշխատանքում, սովորեցնել ղեկավարման արվեստը։

Կուսակցական հաշվետու-ընտրական ժողովները նոր էտապ հանդիսացան սկզբնական կուսկազմակերպությունների կազմակերպական և քաղաքական ամրապնդման ասպարեզում, նպաստեցին հանրապետության աշխատավորների ստեղծագործական ուժերի հետագա մոբիլիզացմանը՝ ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների, հնգամյակի չորրորդ տարվա առաջադրանքների հաջող կատարման համար մղվող պայքարում։

# ԼԵՆԻՆՅԱՆ ԺԱՌԱՆԳՈՒԹՅԱՆ ՅՈՒՐԱՑՄԱՆ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

Գ. Խ. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

ՀԿԿ Երևանի քաղաքային կոմիտեի
պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

Երևանի կուսկազմակերպության քաղլուսսիստեմի ընթացիկ ուսումնական տարին սկսվեց լենինյան թեմատիկայով։ Անդրանիկ պարապմունքը նվիրվեց Վ. Ի. Լենինը և հայ ժողովրդի ազատագրությունը թեմայի ուսումնասիրմանը։

Լենինյան տեսական ժառանգության ուսումնասիրությանը լուրջ ուշադրություն է նվիրվում քաղուսուցման բոլոր օղակներում։ Տարրական և միջին օղակի դպրոցներում այն ուսումնասիրվում է ծրագրային թեմաների հետ սերտորեն շաղկապված, իսկ բարձր օղակում ուշադրությունը կենտրոնացվում է Վ. Ի. Լենինի աշխատությունների, ՍՄԿԿ պատմության, լենինիզմի ուսումնասիրության վրա։ Այստեղ սովորողները հետաքրքրությամբ են ուսումնասիրում «Կուսակցական շինարարության սկզբունքները», «Նոր տիպի կուսակցության լենինյան ուսմունքը», «Վ. Ի. Լենինը ՍՄԿԿ և եղբայրական կուսակցությունների փոխհարաբերությունների զարգացման ու ամրապնդման մասին» և այլ ակտուալ թեմաներ։

Լենինյան գաղափարական ժառանգության նկատմամբ աշխատավորների հետաքրքրությունը բավարարելու նպատակով, քաղաքի գործարաններում, ֆաբրիկաներում, ուսումնական ու գիտական հաստատություններում ստեղծվել և ստեղծվում են լենինյան ժողովրդական դպրոցներ, որտեղ աշխատավորական լայն խավերը (մանավանդ նրանք, ովքեր ընդգրկված չեն քաղաքական լուսավորության սիստեմում) հանգամանորեն ծանոթանում են Լենինի կյանքին և հեղափոխական գործունեությանը։ Լենինյան դպրոցների օրինակելի ծրագրով նախատեսվում է ուսումնասիրել Վ. Ի. Լենինի կենսագրությունը, նրա «Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ, Մեծ նախաձեռնություն, Սովետական իշխանության հերթական խնդիրները և այլ աշխատությունները։

Կուսակցական կազմակերպություններն իրենց ամենօրյա պրոպագանդիստական աշխատանքում լայն տեղ են հատկացնում լենինյան ուսմունքի, առաջնորդի հսկայական գաղափարական ժառանգության ուսումնասիրու-

թյանն ու մասսայականացմանը, ջանում են կոմունիստներին, բոլոր աշխատավորներին դաստիարակել Վ. Ի. Լենինի հերոսական և ազնիվ կյանքի օրինակներով։

Կուսակցության քաղաքական լուսավորության ցանցի գործունեության մեջ կան նաև լուրջ թերություններ։ Դրանցից առաջինն այն է, որ տարրական և միջին օղակի դպրոցները կարճ ժամանակով են գործում և ուսումնական տարվա ընթացքում կրճատվում է նրանց թիվը։ Այսպես, անցյալ ուսումնական տարվա սկզբին քաղաքի կուսկազմակերպություններում գործում էին 263 տարրական տիպի և 560 միջին օղակի դպրոցներ, սակայն, առաջիններից 22-ը և վերջիններից 14-ը ուսումնական տարվա ընթացքում դադարեցին գործելուց։ Այս լուրջ թերությունը, ամենից շատ նկատվում է Լենինյան շրջանի կուսկազմակերպություններում։

Երկրորդ թերությունը՝ ուսուցման հաջորդականության և հետևողականության կարգի խախտումը կամ շրջանցումն է։ Ըստ կարգի, անցյալ ուսումնական տարվա վերջերին քաղաքի կուսկազմակերպություններում գործող միջին օղակի 546 դպրոցները պետք է ավելանային կուսակցական ուսուցման տարրական օղակի դասընթացն ավարտած 161 դպրոցներով, մինչդեռ, ավելացան ընդամենը 49-ով։ Ավելին, տարրական տիպի և միջին օղակի դպրոցների մի մասն ուսումնական ծրագրերն ավարտելուց հետո պարզապես շրջանցել է իր հաջորդ աստիճանը և միանգամից վերածվել բարձր տիպի տեսական սեմինարի։ Այս երևույթը վնաս է հասցնում կոմունիստների սիստեմատիկ քաղաքական ուսուցմանը, դժվարացնում քաղլուսցանցի գործունեության ղեկավարման և վերահսկողության գործը։ Չէ՞ որ ուսուցման յուրաքանչյուր օղակ ունի իր կայուն ծրագիրը, խնդիրները։ Տվյալ օղակի դպրոցն իր ծրագիրն ավարտելուց հետո միայն պետք է անցնի հաջորդ օղակին, որպեսզի կոմունիստները սիստեմատիկ քաղաքական կրթությամբ անհրաժեշտ խոր գիտելիքներ ստանան։

Կուսշրջկոմները և սկզբնական կազմակերպությունները պետք է հասնեն այն բանին, որպեսզի բոլոր դպրոցները լավ գործեն, առաջնորդվեն ծրագրերով, պարապմունքները շարունակեն կանոնավոր՝ ընդհուպ մինչև ուսումնական տարվա ավարտը։ Անհրաժեշտ է բարձրացնել պահանջկոտությունն ունկնդիրների նկատմամբ. նրանց կուրսից կուրս փոխադրումները կատարել ստուգումների, իսկ ավարտելը՝ քննությունների և ավարտականներ տալու միջոցով։ Եթե ունկնդիրը չի յուրացրել ծրագրով նախատեսված թեմաները, չի կարելի նրան փոխադրել հաջորդ կուրս կամ ավարտական վկայական տալ։ Այդպիսի ընկերները քաղաքական կրթությունը պետք է շարունակեն իրենց ունակություններին համապատասխան դպրոցներում։

Ներկայումս գործող քաղաքական ուսուցման ցանցը համապարփակ է և ամեն մի կոմունիստ կարող է ընտրել իր գիտելիքներին համապատասխան օղակ։ Բարձրագույն օղակում ուսուցման գլխավոր ձևը տեսական պրոբլեմային և մեթոդոլոգիական սեմինարներն են, որոնց թեմատիկայում հիմնական տեղ է հատկացված Վ. Ի. Լենինի աշխատություններին, ՍՄԿԿ պատմության, քաղաքատնտեսության և փիլիսոփայության հրատապ պրոբլեմներին, կոմունիստական շինարարության կարևորագույն հարցերին։ Այս օղակում սովորում է ուսուցման սիստեմի ունկնդիրների 65 տոկոսը։ Երևանում գործում է պրոբլեմային և մեթոդոլոգիական 950 սեմինար։ Մարքս-լենինյան տեսությունն անհատական պլանով ուսումնասիրում են 5388 հոգի, այդ թվում



2000-ը սեմինարավարներ և կոնսուլտանտներ են։ Ընդամին, մեր լավագույն սեմինարավարներից են Վ. Վարդազարովը, Մ. Առաքելյանը, Վ. Մարտինովը, Վ. Ջուլհակյանը, Վ. Պարոնիկյանը, Հ. Ինճիկյանը, Գ. Ջահուկյանը և ուրիշներ։

Մարքս-լենինյան տեսությունն անհատական պլանով ուսումնասիրողների հետ կոնսուլտացիաները բարձր մակարդակով են անցկացնում Ա. Հովհաննիսյանը (Կիրովի անվան քիմիական կոմբինատ), պրոֆեսոր Գ. Բրուտյանը (Վ. Բրյուսովի անվան մանկավարժական ինստիտուտ), Գ. Փահլևանյանը (Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչություն), Գ. Հովհաննիսյանը (տրիկոտաժի № 1 ֆաբրիկա), դոցենտ Փ. Ենգոյանը (պետհամալսարան) և մյուսները։

Որոշ հիմնարկ-ձեռնարկություններում սեմինարավարները հերթական թեմայի հանգուցային հարցերը բաժանում են առանձին ունկնդիրների միջև՝ «նախապատրաստվելու և ելույթ ունենալու համար»։ Այս անօգուտ պրակտիկան, բնականաբար, պասսիվության է մատնում ունկնդիրների մեծամասնությանը։ Սեմինարներում ընդգրկված ստեղծագործական ինտելիգենցիայի որոշ ներկայացուցիչներ փոխանակ մարքս-լենինյան տեսությունն կապելու իրենց հակումներին առնչվող հարցերի հետ, միակողմանիորեն հրապուրվում են կողմնակի խնդիրներով։ Օրինակ, մի քանի տարի է, ինչ կոմպոզիտորների միության կոմունիստներն ընդգրկված են միջազգային դրության հարցերն ուսումնասիրող սեմինարում, որը, տեղին է ասել, փաստորեն վեր է ածվել թեմատիկ լեկտորիումի, իսկ գրողների միությունում կոմունիստների քաղաքական ուսուցումը մինչև վերջին ժամանակները բոլորովին կազմակերպված չէր։

Սխալներ կան նաև սեմինարների և անհատական պլաններով ուսումնասիրվող թեմաների ընտրության գործում. խախտվում է հաջորդականությունը՝ պարզ թեմայից դեպի ավելի բարդ թեմաներն անցնելու խելացի սկզբունքը։ Անհատական պլանով ուսուցման գործը որոշ տեղերում դուրս է մնացել կուսկազմակերպությունների վերահսկողությունից։ Կոնսուլտանտների մի զգալի մասը քիչ է հանդիպում ունկնդիրների հետ կամ բոլորովին չի հանդիպում։

Անճնշում խողովակների և մետաղին գործարանների, Հայաստանի պատմության թանգարանի, բժշկական ինստիտուտի և մի շարք այլ հիմնարկությունների ու ձեռնարկությունների կուսկազմակերպություններ անուշադիր են անհատական պլանով ուսումնասիրողների և կոնսուլտանտների նկատմամբ։

Կուսակցության շրջկոմները, քաղլուստունը և քաղլուսկաբինետները պարտավոր են խմբային կոնսուլտացիա-ստուգումներ կազմակերպել, ի հայտ բերել ինքնուրույն ուսումնասիրությամբ թույլ զբաղվողներին, պահանջելով նրանցից՝ կատարելու կուսակցության կանոնադրական պարտականությունը։

Երևանի քաղուսուցման սիստեմում կուտակված է մեթոդոլոգիական սեմինարների որոշ փորձ։ Ակներև է, որ քաղաքական ուսուցումը օգնում է գիտաշխատողներին՝ ավելի խոր յուրացնելու դիալեկտիկական մատերիալիզմը։ Այդ առումով ուսանելի է ֆիզիոլոգիայի (սեմինարավար՝ ակադեմիկոս Ս. Կարապետյան), կուրորտոլոգիայի (սեմինարավար՝ պրոֆ. Գ. Աղաջանյան), օրթոպեդիայի և տրավմատոլոգիայի ինստիտուտների (սեմինարավար՝ համալսարանի դասախոս Ա. Գևորգյան), 6-րդ բուժմիավորման (սեմինարավար՝ պրոֆ. Մ. Խաչատրյան), ռադիոբիոլոգիայի սեկտորի (սեմինարավար՝ Ռ. Հարությունյան) և այլ սեմինարների փորձը։

Սակայն չի կարելի նորմալ համարել, երբ այդ սեմինարներում հաճախ տվյալ գիտության հարցերի մեթոդոլոգիական ուսումնասիրությունը վերածվում է ֆիզիկայի, մաթեմատիկայի, կենսաբանության, կիբեռնետիկայի, քիմիայի տարբեր պրոբլեմների մասնագիտական ուսումնասիրության, քիչ ուշադրություն է նվիրվում փիլիսոփայական պրոբլեմների ուսումնասիրությանը, ընդհանրացմանը, իրենց գիտական հետազոտությունների և համապատասխան գիտական պրոբլեմների փիլիսոփայական-մեթոդոլոգիական վերլուծությանը:

Հաճախ մեզանում մեթոդոլոգիական սեմինարները չեն տարբերվում պրոբլեմայինից, չէ՛ որ պրոբլեմային սեմինարները ուսումնասիրում են կուսակցության պատմության, քաղաքատնտեսության, փիլիսոփայության, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման այս կամ այն հարցերը, իսկ մեթոդոլոգիական սեմինարները՝ տվյալ գիտության փիլիսոփայական, մարքս-լենինյան մեթոդոլոգիական վերլուծությունը միայն:

Քաղաքական ուսուցման բարձրագույն օղակում կարևոր տեղ ունի քաղկոմի մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանը: Այստեղ ընդգրկված են շուրջ 950 ունկնդիր. դասախոսական աշխատանքի են ներգրավված որակյալ մասնագետներ: Սակայն, չնայած այս ամենին, ունկնդիրների մի մասը բացակայում է պարապմունքներից, չկա շենքային անհրաժեշտ հարմարություն: Կուսակցության շրջկոմները և սկզբնական կուսկազմակերպությունները պետք է հետաքրքրվեն, թե իրենց երաշխավորած մարդիկ ինչպես են հաճախում համալսարանի պարապմունքներին, արդյոք կատարո՞ւմ են ուսումնական առաջադրանքները:

Քաղուսուցման գործում նկատված թերություններից են նաև՝ պարապմունքների ձախողումները և ուսուցման միասնական օրերի խախտումը:

Ռադիոցանցի, երկաթուղային կայարանի, «Պոլիվինիլացետատ» գործարանի, պետհամալսարանի, անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտի և մի քանի այլ ձեռնարկությունների սկզբնական կուսկազմակերպությունները անբավարար են զբաղվում քաղուսուցման ցանցով: Դա է պատճառը, որ այդ կազմակերպությունների դպրոցներում և սեմինարներում ընկած է կարգապահությունը, երբեմն էլ պարապմունքներն անցնում են անհետաքրքրական, չեն կանխվում բացակայությունները: Հիդրոպոմպերի գործարանի, պետկրկեսի, տրիկոտաժի № 1 ֆաբրիկայի կուսկազմակերպությունների դպրոցների և սեմինարների շատ ունկնդիրներ հաճախ պարապմունքների են գալիս անպատրաստ, հանձնարարված գրականությունը չընթերցած: Պարզ է, որ այս ամենը բացասաբար է անդրադառնում ուսման ծրագրի յուրացման վրա: Գրեթե նույնն է վիճակը «Հայմարմար» և հրշեջ ընկերության կոմբինատների, քիմիական ռեակտիվների գործարանի, № 1 շինտրեստի, № 2 տպարանի, կոշիկի «Մասիս» ֆիրմայի № 9 մասնաճյուղի կուսակցական կազմակերպություններում:

Առանձին պրոպագանդիստներ պահանջկոտ չեն իրենց և ունկնդիրների նկատմամբ. նրանք, որպես կանոն, բավարարվում են ունկնդիրների մակերեսային պատասխաններով:

Կուսակցական կազմակերպությունները չպետք է հաշտվեն նման երևույթների հետ: Անհրաժեշտ է կուսակցական ժողովներում և բյուրոյի նիստերում պարբերաբար քննարկել քաղուսուցման հետ կապված հարցեր, կոնկրետ միջոցներ ձեռնարկել գոյություն ունեցող թերությունների վերացման համար:



Սակայն այդպես չեն վարվում, մանավանդ, գիտահետազոտական ինստիտուտների և բուհերի շատ կուսկազմակերպություններ, որոնք անցած մեկուկես տարում կոմունիստների քաղուսուցման հետ կապված հարցեր չեն քննարկել:

Անհրաժեշտ է ուժեղացնել պահանջկոտությունը պրոպագանդիստների նկատմամբ: Պետք է հասնել այն բանին, որ, ասենք, տարրական քաղդպրոցում պրոպագանդիստը միշտ լինի ակտիվ դերում, թեմայի բոլոր հիմնական հարցերը պարզաբանի ունկնդիրներին, նրանց սովորեցնի գրականությունից ինքնուրույնաբար օգտվելու և կոնսպեկտ կազմելու ձևերն ու մեթոդները:

Պրոպագանդիստական և ագիտացիոն աշխատանքը պետք է ունենա նպատակասլաց ուղղություն, հարձակողական բնույթ, մարդկանց ներշնչի լենինյան լավատեսություն, ոգեշնչի աշխատանքային սխրագործությունների, նրանց դաստիարակի սովետական վառ հայրենասիրության և թերությունների նկատմամբ անհանդուրժողականության ոգով:

Կուսակցական պրոպագանդայի, կոմունիստների քաղաքական ուսուցման դաստիարակող և մոբիլիզացնող նշանակությունը լավ են ըմբռնել «Պոլիվինիլացետատ», էլեկտրոն, կաբելի, էլեկտրալամպերի, խտացրած կերի և այլ գործարանների կուսակցական կազմակերպություններում, որոնք քաղաքական աշխատանքը սերտորեն զուգակցում են տնտեսականի հետ, տնտեսական ղեկավարներին մասնակից են դարձնում ագիտացիոն- պրոպագանդիստական աշխատանքներին, կոլեկտիվի քաղաքական դաստիարակությանը: Բայց, ցավոք, ամեն տեղ այդպես չէ:

Քաղաքի կուսակցական կազմակերպությունները պետք է անհապաղ վերացնեն քաղաքական պրոպագանդայում և ագիտացիայում տեղ գտած թերությունները: ՍՄԿԿ XXIII համագումարի, Կենտկոմի 1968 թվականի ապրիլյան և հոկտեմբերյան պլենումների որոշումներին համապատասխան ամենուրեք (քաղուսուցման պարապմունքներում, դասախոսություններում, քաղզրույցներում և դիտողական ագիտացիայում) շեշտը պետք է դնել անցկացվող միջոցառումների գաղափարական մակարդակի բարձրացման վրա:

Քաղաքական լուսավորության ցանցի աշխատանքի հետագա բարելավումը պահանջում է կատարելագործել ուսումնական ծրագրերն ու ձեռնարկները, վերացնել նրանց միջև գոյություն ունեցող անհամապատասխանությունը: Օրինակ, պրակտիկան բերել է այն համոզման, որ տարրական և միջին օղակի դպրոցների ծրագրերը ճիշտ չեն կազմված: Ծրագրերով նախատեսված ժամերը և դասագրքերի ծավալը միմյանց չեն համապատասխանում:

Փորձը ցույց է տալիս, որ մեկ ուսումնական տարում հնարավոր չէ ավարտել քաղաքական գիտելիքների հիմունքների ուսումնասիրումը ներկա դասագրքի ծավալով: Այդ կարգի թերություններ կան նաև քաղաքատնտեսության, փիլիսոփայության ծրագրերում և ուսումնական ձեռնարկներում:

Մոտ մեկ տարի երեք ամիս է մնացել մինչև նվիրական տարեթիվը՝ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը: Ներկայումս ավելի, քան երբևիցե լուրջ ուշադրություն պետք է նվիրել կոմունիստների և մեր բոլոր կադրերի մարքս-լենինյան ուսուցման, երիտասարդության գաղափարական դաստիարակության գործի բարելավմանը: Կուսակցական ողջ պրոպագանդան, ներառյալ քաղուսուցման աշխատանքը, պետք է ընթանա լենինյան գաղափարական ժառանգության է՛լ ավելի խոր ուսումնասիրության նշանաբանով:

# ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ԳՈՐԾԵՐՆ ՈՒ ՀՈԳՍԵՐԸ


## Ծ. Ա. ՊՈՂՈՍՅԱՆ

Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի կուսկոմիտեի անդամ


Հենվելով սեփական փորձի վրա, ընդօրինակելով այն ամենը, ինչ ուսանելի է երկրի առաջավոր բուհերի աշխատանքում, Երևանի պոլիտեխնիկական ինստիտուտի կուսկազմակերպությունն այժմ ավելի մեծ ուշադրություն է հատկացնում ուսանողների գաղափարական դաստիարակությանը, դասավանդման որակի բարձրացմանը։ Այժմ կյանքի հետ սերտորեն առնչված են դասավանդվում հասարակական գիտությունները, բոլոր մասնագիտական առարկաները։

Ինստիտուտի կուսակցական կոմիտեն և ֆակուլտետային կուսակցական կազմակերպությունները պայքարում են ուսումնադաստիարակչական աշխատանքների բարելավման համար։ Անցած մեկ տարում կուսկոմիտեի նիստերում և կուսակցական ժողովներում քննարկվել են ուսումնադաստիարակչական աշխատանքի բարելավման բազմաթիվ հարցեր։ Ընդ որին հատուկ ուշադրություն է նվիրվել աշխատանքում և ուսման մեջ կոմունիստների և կոմերիտականների ավանգարդային դերի, դասախոսությունների որակի բարձրացման, դասախոսական կադրերի տեսական աճի, նրանց մասնագիտական վարպետության կատարելագործման, գիտահետազոտական աշխատանքի ուժեղացման հարցերին։

Կոմունիստների և ուսանող երիտասարդության գաղափարական աճի, քաղաքական կոփվածության բարձրացման համար մեծ նշանակություն ունեցան կուսակցական ժողովներում ՍՄԿԿ Կենտկոմի ապրիլյան (1968) պլենումի որոշման, ինչպես նաև հասարակական գիտությունների զարգացման և կոմունիստական շինարարության գործում դրանց դերի բարձրացման վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումների քննարկումը։ Այդ փաստաթղթերը կոմունիստներին օգնեցին խորապես ըմբռնելու սոցիալիզմի և կապիտալիզմի միջև ներկայումս տեղի ունեցող գաղափարական պայքարի բնույթը, լինելու զգոն և աչալուրջ։

Կուսակցական կոմիտեն ուսման մեջ և հասարակական կյանքում մեծ նշանակություն է տալիս կուսանդամ-թեկնածուների անձնական օրինակին և ամենուրեք ջանում է բարձրացնել նրանց առաջատար դերը։ Ներկայումս ինստիտուտում աշխատում կամ սովորում են 617 կոմունիստ և 6,5 հազար կոմերիտական։ Պարզ է, որ եթե նրանք բոլորն աշխատեն և սովորեն ջանասեր, լինեն խոսք առաջավոր, ապա անկուսակցականներն էլ կհետևեն նրանց և ավելի արդյունավետ կլինեն ուսումն ու աշխատանքը։ Այսպես մոտենալով հարցին, կուսկազմակերպությունը հասել է որոշակի դրական ցուցանիշների։ Ինստիտուտի 149 կոմունիստ ուսանողներից առաջադիմությամբ աչքի են ընկնում 128-ը։

Ռեկտորատը և կուսկոմիտեն կարևոր նշանակություն են տալիս ուսումնական պրոցեսի սիստեմատիկ վերահսկողությանը։ Ամբիոններն այժմ ավելի հաճախ, քան անցյալում, կազմակերպում են դասալսումներ և դրանց արդյունքների քննարկումներ։ Բացահայտված թերությունների ընկերական քննադատությունը բարձրացնում է դասախոսների, մանավանդ երիտասարդ դասախոսների պատասխանատվությունը, նպաստում նրանց մտահորիզոնի ընդլայնմանն ու մանկավարժական վարպետության կատարելագործմանը։

Դասախոսական կադրերի աճի և հասունացման կարևոր պայման է գիտահետազոտական աշխատանքը։ Այստեղ ևս քանակական ու որակական տեղաշարժերն ակներև են. մեկ տարվա ընթացքում ինստիտուտի դասախոսների ուժերով հրատարակվել են մոտ 120 գիտական ժողովածուներ, առանձին աշխատություններ, ռեֆերատներ և հոդվածներ։ Դասախոսներից շատերը պարբերաբար անցկացվող գիտական սեսիաներում, կոնֆերանսներում և սիմպոզիումներում հանդես են եկել զեկուցումներով և ինֆորմացիաներով, եղել են գիտական գործուղումներում։ Գիտական նշանակալից պրոբլեմների քննարկումներն ու ընկերական դիսկուսիաները մեծապես օգնում են դասախոսների գաղափարական ու մասնագիտական աճին։

Ինստիտուտի կուսակցական կոմիտեն լուրջ ուշադրություն է նվիրում հատկապես ուսանող երիտասարդության գաղափարական դաստիարակությանն ու բազմակողմանի զարգացմանը։ Վերջին մեկ տարում անց են կացվել հասարակական տասնյակ միջոցառումներ, որոնցից ամենագլխավորն են Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 50-ամյակին, Կ. Մարքսի ծննդյան 150-ամյակին, Վ. Ի. Լենինի ծննդյան 98-ամյակին, ՀամԼԿԵՄ 50-ամյակին, Արևելյան Հայաստանը Ռուսաստանին միանալու 140-ամյակին, Ստալինգրադի ճակատամարտի 25-ամյակին և, վերջապես, Երևանի հիմնադրման 2750-ամյակին նվիրված հանդիսավոր ժողովները, զեկուցումներն ու դասախոսությունները։ Ինստիտուտի կոլեկտիվն անչափ հպարտ է, որ մեծ Հոկտեմբերի 50-ամյակի կապակցությամբ իրենց ուսումնական հաստատությունը պարգևատրվել է ՀԿԿ Կենտկոմի, ՀՍՍՀ Մինիստրների սովետի և Գերագույն սովետի հուշադրոշով։

Գաղափարական աշխատանքի ուղն ու ծուծը եղել և մնում է կոմունիստների մարքս-լենինյան ուսուցումը, որն այստեղ հետզհետե, ավելի լայն ծավալ է ստանում։ 1967—68 ուստարում այստեղ գործել են 19 տեսական սեմինար, որոնցից 4-ը՝ ՍՄԿԿ պատմության, 3-ը՝ քաղաքատնտեսության, 3-ը՝ փիլիսոփայության, 9-ը՝ ՍՍՀՄ արտաքին և ներքին քաղաքականության, ինչպես նաև միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման պրոբլեմների ուսումնասիրման համար։ Այդ սեմինարներում ընդգրկված են եղել ընդամենը 645 մարդ, որոնցից 428 կուսանդամ-թեկնածուներ։ Բացի դրանից, 47 կոմունիստ իրենց տեսական-քաղաքական մտահորիզոնի ընդլայնման նպատակով աշխատել են անհատական պլանով՝ ինքնուրույն, իսկ մնացած մա-

սը (թվով մոտ 200 հոգի) ուսանողներ և ասպիրանտներ են, որոնք քաղուսուցումն անցնում են համապատասխան ուսումնական պլանով։

Ուսումնական տարվա հանրագումարները ցույց տվին, որ քաղուսուցման ցանցում պարապմունքներն անցել են կանոնավոր, բարձրացել է ունկնդիրների գիտակցական կարգապահությունը, պարապմունքների ձախողումներ չեն եղել։ Պրոպագանդիստները պատշաճ վերաբերմունք են ցուցաբերել իրենց վստահված այդ պատվավոր գործին։

Քաղուսուցման ցանցի հաջող գործունեությունն ապահովելու համար պրոպագանդիստական աշխատանքի են ներգրավված այնպիսի բարեխիղճ կոմունիստներ, ինչպիսիք են՝ Ս. Հարությունյանը, Լ. Գևորգյանը, Հ. Պողոսյանը, Ի. Խաչատրյանը, Հ. Մակինյանը, Ջ. Զաքարյանը, Վ. Եպիսկոպոսյանը և ուրիշներ, որոնք ունեն գիտական աստիճան և մարքս-լենինյան տեսության պրոպագանդումը համարում են իրենց կյանքի գործը։

Պետք է ասել, որ կուսկոմիտեն և ֆակուլտետային կուսկազմակերպությունները լավ էին նախապատրաստվել ընթացիկ ուսումնական տարվան։ Ժամանակին վերանայվել և համալրվել է պրոպագանդիստների կազմը, ճշգրտվել քաղուսուցման ցանցում ընդգրկվածների ցուցակը։ Այժմ ինստիտուտում գործում են 21 տեսական սեմինար և երիտասարդ կոմունիստների դպրոց, որոնցում ընդգրկված են 763 մարդ։ Առաջին պարապմունքները, որ նվիրված էին Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստությանը, անցել են բարձր մակարդակով։

Կուսկոմիտեն սիստեմատիկաբար օգնում է մարքս-լենինյան տեսությունը, կուսակցության և կառավարության ներքին և արտաքին քաղաքականության հարցերն ուսումնասիրողներին, կազմակերպելով նրանց համար դասախոսություններ և կոնսուլտացիաներ՝ տեսական կարևոր պրոբլեմների շուրջ։ Քաղուսուցման ցանցում ուսումնական տարին սկսվելուց հետո ինստիտուտում անց են կացվել 26 մասսայական դասախոսություն, այդ թվում Չեխոսլովակիայում կատարվող իրադարձությունների, Վ. Ի. Լենինի գիտական ժառանգության, միջազգային կոմունիստական և բանվորական շարժման արդի վիճակի, կոմունիզմի կառուցման ժամանակաշրջանում ազգերի և ազգային հարաբերությունների, երիտասարդության կոմունիստական դաստիարակության, սովետական հայրենասիրության և այլ կարևորագույն հարցերի մասին։ Ավելի քան հարյուր պրոբլեմներ են քննարկվել գիտական զանազան սեմինարներում և կոնֆերանսներում։

Դժվար է գերագնահատել այդ միջոցառումների դաստիարակչական նշանակությունը։ Սեմինարներում և կոնֆերանսներում կարդացված են 150 զեկուցում՝ գիտահետազոտական թեմաների շուրջ, որոնցից 16-ը ներկայացվել են հանրապետական մրցանակի և տպագրության։ Դրանց թվումն են Կ. Մարքսի ծննդյան 150-ամյակին, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին և ՀամԼԿԵՄ-ի 50-ամյակին նվիրված լավագույն ուսումնասիրությունները, որոնք ներկայացվել էին հասարակական գիտությունների գծով անցկացված կոնֆերանսներին և շուտով լույս կտեսնեն առանձին ժողովածուով։

Երիտասարդության դաստիարակության ասպարեզում նշանակալից աշխատանք է կատարվում ոչ միայն նրանց քաղուսուցման կազմակերպման, մասսայական-քաղաքական միջոցառումների անցկացման, այլև ուսանողական լայն զանգվածներին ինքնագործ ակումբներում և խմբակներում ներգրավելու միջոցով։ Ներկայումս ինստիտուտում գործում են ուսանողների կուլտուրայի համալսարանը, «Ինժեները և ժամանակը» բանավեճային ակումբը, ինտերնացիոնալ կապերի ակումբը, հասարակական կարծիքների խորհուրդը, զանազան գեղարվեստական ինքնագործ խմբակներ, որոնց մեջ ներգրավված են հազարավոր տղաներ և աղջիկներ։

Ինստիտուտի ռեկտորատը, կուսկազմակերպությունը և պրոֆեսորա-դասախոսական անձնակազմը շատ բան են արել և անում ՍՄԿԿ XXIII համագումարի որոշումների, բուհերի աշխատանքի և ուսանող երիտասարդության դաստիարակության բարելավման հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի որոշումների կենսագործման, երկրի ժողովրդական տնտեսության համար ավելի որակյալ մասնագետներ պատրաստելու ուղղությամբ։

Սակայն նրանց աշխատանքում կան նաև թերություններ և չլուծված հարցեր, որոնց մասին խոսեցին ֆակուլտետային կուսակցական կազմակերպության և, ապա, ընդհանուր հաշվետու-ընտրական կուսժողովներում։ Կոմունիստները մատնանշեցին, որ դեռևս լուրջ թերություններ կան ուսանողների դաստիարակության և ուսումնական պրոցեսի կազմակերպման գործում։ Ցածր է ուսման առաջադիմությունը, որոշ առարկաների գծով թերակատարվում են ուսումնական պլանները, դասասենյակների պակասության պատճառով լինում են դասերի ձախողման դեպքեր, երբեմն անկազմակերպ և ցածր մակարդակով է անցնում ուսանողների արտադրական պրակտիկան։ Վատ են սարքավորված առանձին լաբորատորիաներ։ Ուսանողության մեջ թույլ է պայքարը գերազանցիկության համար։ Վերջին 3—4 տարում ինստիտուտը գրեթե չի տվել գերազանցիկի ավարտականով ինժեներ։ Ընթացիկ, կուրսային և ավարտական գնահատականների մեջ գերակշռում են բավարար գնահատականները։

Հանրակացարաններում տեղ չլինելու պատճառով ավելի քան 2,5 հազար ուսանող ապրում են մասնավոր տներում և գրեթե միշտ դուրս են մնում արտաուսումնական քաղդաստիարակչական միջոցառումներից։ Կան նաև այնպիսի թերություններ (մայրենի լեզվով ուսումնական ձեռնարկների պակասը, սպորտային բազայի բացակայությունը և այլն), որոնց վերացումը վեր է ինստիտուտի ղեկավարության ուժերից և պահանջվում է հանրապետական-մինիստրությունների և գերատեսչությունների օգնությունը։



# ԷԿՈՆՈՄԻԿԱՅԻ ՀԱՐՑԵՐ

## ԱՇԽԱՏԱՆՔԻ ԳԻՏԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՕՂԱԿԸ

*Սովետական Միության կոմունիստական կուսակցության Կենտկոմը և սովետական կառավարությունն իրենց որոշումներում բազմիցս անդրադարձել են աշխատանքի գիտական կազմակերպման հարցերին։ Դեռևս սովետական իշխանության առաջին տարիներին Վ. Ի. Լենինը նշում էր, որ ձեռնարկություններում ու կառույցներում աշխատանքը պետք է կազմակերպվի գիտական հիմունքներով, առանց որի սոցիալիզմի տնտեսական հզորությունն ապահովող ամենագլխավոր գործոնին՝ աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացմանը, հասնել գրեթե անհնար է։*

*Աշխատանքի գիտական կազմակերպման հարցերն իրենց արդիականությունը պահպանում են նաև այսօր։ ՍՄԿԿ XXIII համագումարի բանաձևում նշված է, որ «տնտեսական օրգանները և ձեռնարկությունների կուսակցական կազմակերպությունները պետք է հաստատակամորեն վարեն արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման, ձեռքի աշխատանքի տեսակաբար կշռի աստիճանական կրճատման, աշխատուժի ավելի ռացիոնալ օգտագործման, աշխատանքի գիտական կազմակերպման լայն արմատավորման կուրս»։*

*Աշխատանքի գիտական կազմակերպման հիմնական խնդիրներից է կենդանի և առարկայացած աշխատանքի նվազագույն ծախսումներով առավելագույն արդյունքի հասնելը, որը նշանակում է արտադրության մեջ եղած բազմապիսի ռեզերվների հայտաբերում և դրանց բանիմաց օգտագործում։*

*Հանրապետության տեքստիլ-տրիկոտաժի արդյունաբերության ձեռնարկություններում, ուր աշխատողների 80 տոկոսից ավելին կանայք են, աշխատաժամանակի ֆոնդի մեջ զգալի ռեզերվներ կան։ Այստեղ զանազան պատճառներով բանվորուհիների աշխատանքից բացակայելու պատճառները շատ ավելի բազմազան են, քան այն ձեռնարկություններում, ուր գլխավորապես օգտագործվում է տղամարդու աշխատուժ։ Արդյունաբերության այս ճյուղում բանվորուհիներից աշխատանքի չգալու օրերի բաժինը աշխատաժամանակի ընդհանուր ֆոնդում հասնում է 14 տոկոսի, սահմանված 8-ի փոխարեն։ Մեծ են նաև ներհերթափոխային պարապուրդները։ Ձեռնարկությունների ներկայացրած հաշվետվությունների տվյալների համաձայն աշխատաժամանակի ֆոնդն այստեղ օգտագործվել է մոտ 75 տոկոսով։ Դա*



*նշանակում է, որ աշխատաժամանակի օգտագործման հետագա բարելավումը այս ճյուղի ձեռնարկությունների համար ներարտադրական խոշոր ռեզերվ է։*

*Բանվորական ժամանակը ռացիոնալ օգտագործելու տեսակետից խոշոր նշանակություն ունի աշխատանքի ճիշտ կազմակերպումը, աշխատանքի ու հանգստի ռացիոնալ ռեժիմների արմատավորումը։*

*Աշխատանքի պրոցեսում բանվորների հոգնածության վերացումը, նրանց ֆիզիկական առույգ վիճակի պահպանումը աշխատանքի արտադրողականության բարձրացման կարևոր պայմաններից մեկն է։ Արտադրող գլխավոր ուժի՝ մարդու առողջության և աշխատունակության պահպանման հարցերը պետք է շարունակ գտնվեն աշխատանքի կազմակերպման հարցերով զբաղվող մասնագետների ուշադրության կենտրոնում։ Այդ հարցի հրատապությունը հիմնականում բխում է նրանից, որ սոցիալիստական արտադրության պայմաններում ամենաթանկ կապիտալը մարդն է, որի աշխատանքային պայմանների կատարելագործումը ժողովրդի բարեկեցության բարձրացման կարևոր նախադրյալներից մեկն է։ Ուստի, ձեռնարկություններում աշխատանքը նորմավորողները ո՛չ միայն պետք է արտադրության ու տեխնիկայի տվյալ մակարդակին համապատասխան գիտականորեն հիմնավորված նորմաներ սահմանեն, այլև այդ նորմաները բխեցնեն բանվորների աշխատանքային գործամիջյան հանգստի արդյունավետ փոխհաջորդման ռեժիմներից։ Հերթափոխության ընթացքում աշխատանքային հանգստի ռացիոնալ ռեժիմի պահպանումն ու արմատավորումը, դրա պրակտիկ կիրառումը, պետք է դիտել որպես աշխատանքի գիտական կազմակերպման անբաժանելի կողմերից մեկը, որն անմիջականորեն կապված է այն նորմավորելու հետ։*

*Ներկայումս կոնվեյերային աշխատանքների համար տեխնիկական նորմաները սահմանելիս, նորմավորողների առջև իր սրությամբ դրվում է այն հարցը, թե ինչպե՞ս և ի՞նչ ձևով նորմավորել ու նախագծել բազմաթիվ անգամ կրկնվող և անփոփոխ հաջորդականությամբ ընթացող աշխատանքներում զբաղվածների գործամիջյան հանգիստը։ Չէ՞ որ աշխատանքային հերթափոխի ընթացքում բանվորի աշխատունակությունը և աշխատանքային ժամային արտադրողականությունն էական փոփոխություններ են կրում։ Հերթափոխության սկզբին բանվորի աշխատունակությունն անհամեմատ բարձր է, բայց նրա աճող հոգնածությանը զուգընթաց արտադրողականությունն աստիճանաբար իջնում է։ Իջնում է նաև արտադրանքի որակը։ Ահա թե ինչու կոնվեյերային գծերում աշխատանքային հանգիստ սահմանելու խնդիրը հիմա հույժ կարևորություն ունի, երբ ձեռնարկություններն անցել են ութժամյա աշխատանքային հերթափոխի։*

*Պրակտիկան ցույց տվեց, որ հնգօրյա բանվորական շաբաթի անցումը ունի ակնառու առավելություններ, ինչպես արտադրության արդյունավետության, այնպես էլ աշխատողների ազատ ժամանակի ավելացման տեսակետից։ Միաժամանակ պետք է նշել, որ հնգօրյա աշխատանքային շաբաթվա պայմաններում արտադրանքի ծավալն ավելացավ 20, իսկ բանվորական ժամանակի տևողությունը՝ 14,6—15,2 տոկոսով։*

*Դա նշանակում է, որ արտադրության ծավալը նշված չափով ավելացնելու համար անհրաժեշտ է առավել ռացիոնալ օգտագործել բանվորական ժամանակի յուրաքանչյուր րոպեն, կրճատել անարտադրողաբար ծախսվող ժամանակը և այդ միջոցով ապահովել աշխատաժամանակի յուրաքանչյուր*

միավորի արդյունավետությունը։ Այս կապակցությամբ ՍՄԿԿ Մոսկվայի քաղաքային կազմակերպության XIX կոնֆերենցիայում ունեցած իր ելույթում Լ. Ի. Բրեժնևն ասաց, որ «Կուսակցական կազմակերպություններն ու տնտեսական ղեկավարները հանդես բերելով անհրաժեշտ շահագրգռվածություն երկու հանգստյան օրեր սահմանելու գործում, պետք է ավելի մեծ ուշադրություն դարձնեն այն բանին, որ հանուն արտադրության հետագա վերելքի բանվորական հնգօրյակն օգտագործվի առավել արդյունավետ» («Պրավդա», 31 մարտի 1968 թ.)։

Աշխատանքային օրվա ռացիոնալ օգտագործման կարելի է հասնել մի շարք միջոցներով, որոնցից մեկը հերթափոխության ընթացքում բանվորների հոգնածությունը վերացնելու միջոցով նրանց աշխատունակության պահպանումն է։

Բերենք այդ ուղղությամբ անցկացված մեր հետազոտության տվյալները։ Վերջերս, խրոնոմետրաժային ուսումնասիրության ենթարկվեց Շահումյանի տրիկոտաժի ֆաբրիկայի կոնվեյերներից մեկի՝ տղամարդու ներքնազգեստ (մայկա) թողարկող կոնվեյերին սպասարկող՝ կարող բանվորուհիների աշխատանքը։ Նման ուսումնասիրություն մենք կատարել էինք 1965 թվականին, յոթժամյա աշխատանքային ռեժիմի պայմաններում։ Երկու ուսումնասիրությունների տվյալների համադրումը ցույց տվեց, որ որպես օրինաչափություն, բանվորների աճող հոգնածությանը զուգընթաց, սկսած հերթափոխության երկրորդ ժամից, ավելանում է աշխատանքային միևնույն գործողություն կատարելու ժամանակը, զգալի չափով աճում է նաև ավելորդ, աշխատանքային տվյալ պրոցեսը կատարելու համար ոչ անհրաժեշտ շարժումների քանակը։ Դրա հետևանքը լինում է այն, որ ձգտելով պահպանել կոնվեյերի ռիթմը, բանվորներն սկսում են կարել անփույթ, և աշխատանքի վերջին ժամերին ոչ միայն իջնում է արտադրողականությունը, այլև զգալիորեն ընկնում է արտադրանքի որակը։ Կատարված ուսումնասիրությունները ցույց տվեցին նաև, որ բանվորների այդ հոգնածությունը առաջին հերթին միօրինակ (մոնոտոն) աշխատանքի արդյունք է։

Դրանում համոզվելու համար բերենք խրոնոմետրաժային չափումների արդյունքները՝ աշխատանքային առանձին գործողությունների տևողությունների փոփոխման ընթացքում։

Արտադրագործողությունների կատարման տևողությունն
ըստ աշխատաժամերի (րոպեներով)

ԺԱՄԵՐԸ

| Գործողության անվանումը | 1-ին | 2-րդ | 3-րդ | 4-րդ | 5-րդ | 6-րդ | 7-րդ | 8-րդ |
|---|---|---|---|---|---|---|---|---|
| Ուսակար | 0,20 | 0 21 | 0,23 | 0,23 | 0,22 | 0,23 | 0,24 | 0,26 |
| Եզրակար | 0,39 | 0,41,5 | 0,43 | 0,43 | 0,42 | 0,43 | 0,45 | 0,48 |
| Վզի և թևատակի կար | 1,1 | 1,1 | 1,2 | 1,3 | 1,2 | 1,3 | 1,35 | 1,45 |

Աղյուսակի տվյալներից երևում է, որ բանվորուհիների աշխատանքն ամենաբարձր արտադրողականությունն ունի առաջին երկու ժամերում։ Այսպես, օրինակ, եթե ուսակարի պրոցեսի տևողությունը օրվա առաջին ժամում կազմում է 0,20, երկրորդ ժամում՝ 0,21 րոպե, ապա աշխատանքի երրորդ ժամում այն հասնում է 0,23 րոպեի, այսինքն առաջին ժամում կատարված



գործողության տևողությունը գերազանցում է 15 տոկոսով։ Աշխատանքային օրվա առաջին երկու ժամերի արտադրողականությունը, ինչպես 7, այնպես էլ 8-ժամյա աշխատանքային օրվա ռեժիմի պայմաններում գրեթե համահավասար են։ Չորս ժամ աշխատելուց հետո բանվորուհիներին տրվում է 30 րոպե հանգիստ (ճաշի ընդմիջումը)։ Ընդմիջման ընթացքում բանվորուհիները կատարում են բոլորովին այլ, ազատ շարժումներ, որը թարմացնում է նրանց և վերացնում հոգնածությունը։ Դրա շնորհիվ ընդմիջումից հետո աշխատանքային հինգերորդ ժամում բանվորուհիների աշխատանքի արտադրողականությունը նորից բարձրանում է։ Այսպես, եթե ուսակարի արտադրական գործողություն կատարելու ժամանակը չորրորդ ժամում կազմում էր 0,23, եզրակարինը՝ 0,43, վզակարի և թևատակի կարինը՝ 1,3 րոպե, ապա այդ գործողությունների տևողությունը ընդմիջումից հետո՝ հինգերորդ ժամում համապատասխանորեն կազմում է 0,22, 0,42 և 1,1 րոպե։ Այսպիսով, աշխատանքային հերթափոխի հինգերորդ ժամի արտադրողականությունը ուսակար կատարելիս մոտ 4,7, եզրակար կատարելիս՝ 3,6, վզակարը և թևատակի կարն անելիս ավելի քան 10 տոկոսով բարձր է ընդմիջումից առաջվա, չորրորդ ժամի արտադրողականությունից, բայց և այնպես այն չի հասնել առաջին ժամվա արտադրողականությանը։

Աշխատանքի արտադրողականությունն է՛լ ավելի է իջնում հերթափոխի վերջին՝ 8-րդ ժամում։ Առաջին ժամի համեմատությամբ այն իջել է՝ ուսակարի պրոցեսում՝ մոտ 21, եզրակարինը՝ 16,5, իսկ վզակարինը և թևատակի կարինը՝ 30 տոկոսով։ Բանվորների հոգնածությունը բացասական ազդեցություն է թողնում նաև արտադրանքի որակի վրա։ Ինչպես հայտնի է, տրիկոտաժի արտադրանքը խիստ առաձգական է, արագորեն դեֆորմացիայի է ենթարկվում ու կորցնում իր նախկին չափերը, հետևաբար տրիկոտաժեղենի կարը մեծ զգուշություն ու լարված աշխատանք է պահանջում։ Ուստի, բացի կոնվեյերի աշխատանքի ռիթմը պահպանելուց, բանվորուհիները մեծ ջանք են գործադրում նաև արտադրանքի որակն ապահովելու համար։

Առաջին տեսակի արտադրանքի տեսակարար կշիռը հետազոտության ենթարկված
գործողություններում (ըստ առանձին ժամերի)

| | 1-ին ժամ | 4-րդ ժամ | 5-րդ ժամ | 8-րդ ժամ |
|---|---|---|---|---|
| Ուսակար | 78,0 | 75,0 | 76,0 | 73,0 |
| Եզրակար | 81,0 | 78,5 | 79,5 | 74,8 |
| Վզի և թևատակի կար | 77,0 | 74,0 | 74,9 | 70,5 |

Աղյուսակի տվյալներից երևում է, որ բանվորուհիների հոգնածության աճին զուգընթաց, արտադրանքի ընդհանուր քանակի մեջ առաջին տեսակի արտադրանքի տեսակարար կշիռը նվազում է։

Արտադրանքի որակի զգալի բարձրացում նկատվում է ճաշի ընդմիջմանն անմիջապես հաջորդող հինգերորդ ժամում։ Հերթափոխի վերջին ժամում թողարկված արտադրանքի որակի ցուցանիշները շատ ավելի ցածր են, քան նախորդ բոլոր ժամերին։ Այն ցածր է ուսակարի (մոտ 6,5), եզրակարի (մոտ 6,4), իսկ վիզը և թևատակը կարելու ժամանակ՝ ավելի քան 9 տոկոսով։ Այս բոլորը վկայում են, որ կոնվեյերային աշխատանքներում զբաղ-

ված բանվորների աշխատանքային հանգստի արդյունավետ ռեժիմների մշա-
կումը և դրանց պրակտիկ կիրառումը մեծ նշանակություն ունի բանվորների
ֆիզիկական առույգ վիճակը պահպանելու և հերթափոխության բոլոր ժամե-
րին աշխատանքի արտադրողականությունն ու արտադրանքի որակը բարձ-
րացնելու համար։

Նշված աշխատանքային գործողությունների կատարման փոքր տևողու-
թյունները ցույց են տալիս նաև, որ օրվա ընթացքում յուրաքանչյուր բան-
վորուհի բազմաթիվ անգամ կատարում է միևնույն, անընդհատ և նույն ռիթ-
մով կրկնվող շարժումները։ Բավական է ասել, որ արտադրանքի ուսերը կա-
րող բանվորուհին 2300—2850 անգամ, առանց հանգստանալու, կամ կա-
տարման ռիթմը փոխելու, իրականացնում է ուսագլուխները կարելու գործո-
ղություն։ Ավելորդ է նշել, թե որքա՜ն հոգնեցուցիչ է կոնվեյերային գծերը
սպասարկող բանվորուհիների աշխատանքը և, որքան անհրաժեշտ է նրանց
համար աշխատանքային գործամիջյան հանգստի կազմակերպումը։ Հետա-
զոտման ենթարկված արտադրամասում բանվորուհիներն իրենց հոգնածու-
թյունը վերացնելու «ելքը» գտել են հետևյալում. նրանք աշխատանքային
օրվա վերջին ժամերին պարզապես չեն օգտվում կոնվեյերի ծառայություննե-
րից և կիսակարված արտադրանքները միմյանց են փոխանցում ձեռքով։
Մինչդեռ այդ ժամանակամիջոցում կոնվեյերը գործում է պարապ ընթացքով
և մեծ քանակությամբ էլեկտրաէներգիա է ծախսում, մաշվում են նաև ժա-
պավենն ու այն շարժման մեջ դնող փոկերը։

Անավարտ արտադրանքը ձեռքով միմյանց հաջորդաբար փոխանցելու
այս սխալ մեթոդը հիմնովին խախտում է աշխատանքի նորմալ ռիթմը։ Դրա
հետևանքով կոնվեյերի մի մասում արտադրանքը կուտակվում է, իսկ մի
այլ մասում բանվորուհիները պարապ են մնում։ Դրա հետևանքով էլ անմի-
ջապես իջնում է արտադրության այդ տեղամասի աշխատանքի արդյունա-
վետությունը։ Իհարկե, դա բանվորների աշխատանքային հոգնածությունը
վերացնելու և բանվորի աշխատունակությունը բարձրացնելու չափազանց
սխալ ուղի է, որը պետք է վերացվի և փոխարինվի կոնվեյերային գծերում
բանվորների աշխատանքային հանգստի ռացիոնալ և ֆիզիոլոգիապես հիմ-
նավորված ռեժիմների արմատավորումով։ Աշխատանքային հանգստի կազ-
մակերպմանը պետք է տրվի օրինական ուժ։ Դա նշանակում է, որ կոնվեյե-
րային գծերում զբաղված բանվորների աշխատանքը նորմավորելիս պետք է
պաշտոնապես նախատեսվի գործամիջյան հանգստի որոշակի չափ և այն
մտնի արտադրական նորմայի կազմի մեջ, որպես ժամանակի նորմայի ան-
հրաժեշտ տարր։

Տրիկոտաժի ֆաբրիկայի ներքնազգեստներ կարող կոնվեյերներն սպա-
սարկող բանվորուհիների համար աշխատանքային գործամիջյան հանգիստը
կազմակերպելու ուղղությամբ որոշ փորձեր կատարվեցին։ Բանվորուհինե-
րին առաջարկվեց յուրաքանչյուր 80 և կամ 100 կախված կատարվող գործո-
ղության տևողության ընթացքում արտադրանք կարելուց հետո, բացառու-
թյամբ աշխատանքային առաջին ժամի, երկուսից երեք րոպե հանգստանալ։

Ամբողջ հերթափոխի ընթացքում այդ ձևով տրված լրացուցիչ ընդմի-
ջումները կազմեցին 26—30 րոպե։ Ընդ որում, այդ աշխատանքային հան-
գստի ընթացքում բանվորներին առաջարկվեց, ըստ իրենց հայեցողության,
հոգնածությունն ու թմրածությունը վերացնելու նպատակով կատարել ազատ
շարժումներ։



Այնուհետև, խրոնոմետրաժի և վիճակագրական հաշվառման միջոցով սահմանվեցին այդ ձևով աշխատելու արդյունքները։

| | | Կատարված գործողության տևողությունը (րոպե) | | | Առաջին տեսակի արտադրանքի տեսակարար կշիռը բողարկվող արտադրանքի մեջ | | |
|---|---|---|---|---|---|---|---|
| | | 1-ին բանվ. | 2-րդ բանվ. | 3-րդ բանվ. | 1-ին բանվ. | 2-րդ բանվ. | 3-րդ բանվ. |
| առաջին | ժամ | 0,20 | 0,40 | 1,0 | 77,8 | 80,0 | 77,0 |
| երկրորդ | » | 0,20 | 0,40 | 1,07 | 78,0 | 80,0 | 77,0 |
| երրորդ | » | 0,194 | 0,405 | 1,1 | 77,0 | 80,0 | 77,0 |
| չորրորդ | » | 0,21 | 0,41 | 1,2 | 76,7 | 79,0 | 76,5 |
| հինգերորդ | » | 0,203 | 0,405 | 1,1 | 76,9 | 79,6 | 76,9 |
| վեցերորդ | » | 0,22 | 0,42 | 1,2 | 76,0 | 79,0 | 76,1 |
| յոթերորդ | » | 0,228 | 0,43 | 1,27 | 75,8 | 78,8 | 75,9 |
| ութերորդ | » | 0,23 | 0,44 | 1,3 | 75,0 | 78,2 | 75,1 |

Բերված տվյալները ցույց են տալիս, որ միջգործողության հանգստի կիրառումից հետո, համեմատած աշխատանքի կազմակերպման նախկին ձևի հետ, աշխատանքի արտադրողականության և արտադրանքի որակի անկումն զգալիորեն կրճատվել է։ Այսպես, եթե աշխատանքի սովորական կազմակերպման ժամանակ հերթափոխության վերջին ժամին աշխատանքի արտադրողականությունը առաջին ժամի արտադրողականությունից ուսակարի պրոցեսում ետ էր մնում ավելի քան 30, եզրակարինը՝ 20, իսկ վզակարի ու թևատակի կարի օպերացիայում՝ 31,5 տոկոսով, ապա գործամիջյան հանգստի կիրառումից հետո այդ ցուցանիշներն իջան և համապատասխանորեն կազմեցին 21, 16,5 և 30 տոկոս։ Նման օրինաչափություն կա նաև արտադրանքի որակի փոփոխությունների մեջ։

Այսպիսով, չնայած այն բանին, որ բանվորուհիներն աշխատօրվա ընթացքում լրացուցիչ 25—30 րոպե հանգստացան, բայց և այնպես, շնորհիվ հոգնածության վերացման և աշխատունակության բարձրացման, ուսումնասիրությունն անցկացնելու օրերին նրանց աշխատանքի արտադրողականությունը բարձրացավ ավելի քան 5 տոկոսով, մեծ չափով բարելավվեց նաև արտադրանքի որակը։ Դրանից հետևում է, որ կոնվեյերային աշխատանքներում զբաղված բանվորների համար հանգստի ռացիոնալ ռեժիմ սահմանելու և այն նորմա-ժամանակի մեջ մտցնելու հարցը պետք է լրջորեն զբաղեցնի ինչպես ձեռնարկության աշխատանքի կազմակերպման հարցով զբաղվողներին, այնպես էլ տեխնոլոգներին և նորմավորողներին։ Նրանք միացյալ ուժերով պետք է հետազոտեն և գտնեն կոնվեյերային գծերում աշխատանքային հանգստի կազմակերպման առավել ռացիոնալ ձևեր ու ռեժիմներ։

Պետք է մշակել նաև աշխատանքի տվյալ պրոցեսի կատարման ընթացքում բանվորների հոգնածությունը վերացնելու համար անհրաժեշտ ազատ շարժումների կոմպլեքս, որը կարելի է, արտադրական մարմնամարզության նման, անցկացնել գործամիջյան հանգստի ընթացքում։ Հնարավոր է նույնիսկ այժմ, երբ միջգործողության հանգստի հաշվարկման մեթոդական և կազմակերպական շատ հարցեր դեռևս անմշակ են, կոնվեյերային գծերի աշխատողների համար ավելացնել արտադրական մարմնամարզության հաճախականությունն ու կատարման տևողությունը։ Ներկայումս ամբողջ օրվա ըն-

թացքում արտադրական մարմնամարզություն է կատարվում միայն մեկ անգամ։ Արդյունավետ կլիներ, փոքր տևողություններով այն կազմակերպել յուրաքանչյուր ժամը թեկուզ մեկ անգամ (բացառությամբ աշխատօրվա առաջին երկու ժամի), որը չի պահանջում լրացուցիչ ծախսեր։

Միշտ միօրինակ, միևնույն արագությամբ և սահմանված ռիթմով աշխատանքի բացասական ազդեցությունը չեզոքացնելու և բանվորների աշխատունակությունը վերականգնելու գործում կարևոր նշանակություն ունի նաև կոնվեյերի ժապավենի միօրինակ ռիթմի փոփոխումը։ Արդյունավետ է նաև, երբ աշխատանքի առաջին երկու ժամերի ռիթմը տարբերվում է վերջին ժամերի ռիթմից։ Դա կօգնի հաղթահարելու գործողությունների կատարման միօրինակությունն ու մոնոտոն աշխատանքի բացասական ազդեցությունը։

Այդ տեսակետից մեծ արդյունք կտա նաև կոնվեյերային գծերում զբաղված բանվորներին երկրորդ մասնագիտություն սովորեցնելը և տարբեր ժամանակներում նրանց զանազան աշխատանքներում օգտագործելը։

Կոնվեյերային գծերում աշխատանքի և հանգստի կազմակերպման ուղղությամբ ՍՍՀՄ Մինիստրների սովետին առընթեր աշխատանքի գիտահետազոտական ինստիտուտի կատարած ուսումնասիրությունները հանգեցրել են այն եզրակացության, որ բանվորների հոգնածությունը նվազեցնելու և աշխատունակությունը վերականգնելու համար անհրաժեշտ է գործամիջյան հանգիստը կազմակերպելու համար նախատեսել աշխատանքային յուրաքանչյուր ժամում, միջին հաշվով, 5 րոպե։ Բայց պետք է ասել, որ կախված աշխատանքի բնույթից, բարդությունից և ծանրությունից, հանգստի ժամանակը կարող է փոխվել և դիֆերենցվել։ Հանրապետության թեթև, սննդի, էլեկտրատեխնիկական արդյունաբերության և մի շարք այլ ճյուղերի ձեռնարկություններում գործում են բազմաթիվ կոնվեյերային գծեր. այդ ձեռնարկությունների ինժեներատեխնիկական աշխատողները պետք է տեղում գործամիջյան հանգստի չափերի և հոգնածությունը վերացնելու կոմպլեքս միջոցառումներ մշակեն, պրակտիկ փորձեր կատարեն և դրանցից ամենառացիոնալն արմատավորեն արտադրության մեջ։

ՍԵԴԱ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
Տնտեսագետ

## ԵՐԿԱԹՈՒՂԱՅԻՆ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ՀՐԱՏԱՊ ԽՆԴԻՐԸ

Վերջին տարիներս երկաթուղային տրանսպորտը տեխնիկական տեսակետից արմատապես վերակառուցելու և նրա շահագործման աշխատանքները բարելավելու շնորհիվ զգալի չափով բարձրացել են երկաթուղիների տեխնիկա-տնտեսական ցուցանիշները, ավելացել են գնացքների երթևեկության տեխնիկական և տեղամասային արագությունը, լոկոմոտիվի և վագոնի միջին օրական վազքը։

Շոգեքարշին փոխարինել են էլեկտրաքարշերն ու ջերմաքարշերը, վագոնային պարկը զգալի չափերով համալրվել է մեծ տարողությամբ չորսառնանի և վեցառնանի վագոններով, մարդատար վագոնների պարկում գերակշռող են դարձել հարմարավետ վագոնները, ավելացել է երկաթուղագծերի մագիստրալային երկարությունը, որոնք սարքավորված են ավտոուղեկալմամբ և դիսպետչերական կենտրոնացմամբ։



Մեր հանրապետությանը սպասարկում է Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքը, որի գործունեության տերիտորիալ սահմանները համընկնում են հանրապետության պետական սահմաններին։ 1969 թ. հունվարի 1-ի տվյալներով հանրապետությունում շահագործվող երկաթուղիների երկարությունը (չհաշված մերձատար ուղիները) կազմում էր 560 կմ։

Վերջին տասը տարում բարձրացել է Հայկական ՍՍՀ երկաթուղիների տեխնիկական հագեցվածությունը։ Ավարտված է Այրումից մինչև Սևան ընկած մայրուղու էլեկտրիֆիկացումը։ Ջերմաքարշի է փոխադրվել Մասիս—Նորաշեն գծամասը։ Բաժանմունքի բոլոր գծամասերը փոխադրվել են կիսաավտոմատիկ ավտոուղեկալումով, մանևրող շոգեքարշերը փոխարինվել են ջերմաքարշերով, ուղիներում դրված են ծանր ռելսեր և այլն։

Երկաթուղու բաժանմունքի ձեռնարկությունները 1968 թվականին անցել են տնտեսվարման նոր սիստեմին, որոշակի գործ են կատարել աշխատանքի գիտական կազմակերպման տարրեր արմատավորելու ուղղությամբ, որ նպատակ ունի բարձրացնելու փոխադրման պրոցեսի արդյունավետությունը, աշխատանքի արտադրողականությունը, արագացնելու բեռների տեղ հասցնելը, կրճատել տրանսպորտային ծախսերը։

Սովետական Հայաստանում երկաթուղային տրանսպորտի զարգացման և նրա տեխնիկական հագեցվածության աճին զուգընթաց առաջ եկան հիանալի կադրեր, որոնք, հմտորեն տիրապետելով իրենց գործը, պատվով են կատարում պետական առաջադրանքները։ Հազարավոր երկաթուղայիններ ծավալելով սոցիալիստական մրցությունը պայքարում են հնգամյակը ժամկետից շուտ կատարելու համար։ Կոմունիստական աշխատանքի կոլեկտիվի կոչում է շնորհված Լենինականի և Սանահինի լոկոմոտիվային դեպոներին, կապի Լենինականի հատվածին, Էջմիածին, Մայիսյան, Սպիտակ կայարաններին, ինչպես նաև 339 բրիգադաների, արտադրամասերի և հերթափոխների, որոնցում ընդգրկված են 2466 մարդ։ Կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման են արժանացել 667 երկաթուղայիններ։ Միայն 1968 թվականին ներդրվել է 616 ռացիոնալիզատորական առաջարկություններ, որոնք տարեկան կտան մոտ 200 հազար ռուբլու տնտեսում։

Սակայն հանրապետության երկաթուղային տրանսպորտի զարգացման տեմպերը զգալիորեն ետ են մնում արդյունաբերության, շինարարության և գյուղատնտեսության աճի տեմպերից։ ՀՍՍՀ արդյունաբերական արտադրանքի ծավալը 47 տարվա ընթացքում աճել է ավելի քան 120 անգամ, երկաթուղային տրանսպորտով բեռների առաքումները՝ 48 անգամ։ Տասը տարում (1957—1967 թթ.) երկաթուղային փոխադրումների ծավալը 9,9 մլն տոննայից հասել է 20,47 միլիոնի։ Չնայած դրան, Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի կայարանները, բեռնասարքավորումները և մյուս տնտեսությունները պատշաճ չափով չեն զարգացել և ներկայումս չեն ապահովում ուղևորների ու բեռների նորմալ և անվտանգ փոխադրումը։

Երկաթուղու բաժանմունքի շահագործման աշխատանքներում առանձնապես մեծ դժվարություններ կան Երևանի հանգույցի կայարաններում և Երևան—Սևան գծամասում։ Երևան—Սևան գծամասը, որը Հայհիդրոէներգոշինը կառուցել է որպես մերձատար ուղի Սևանի կասկադի էլեկտրակայանների շինարարության համար և, 1958 թվականին հանձնվել է ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրությանը՝ Աբովյանի, Հրազդանի, Սևանի և մյուս մերձակա շրջանների բեռների և բնակչության փոխադրումների համար, պատշաճ չափով զարգացած չէ և չի համապատասխանում մայրուղիների պահանջներին։

Երևան—Սևան գծամասի անբավարար վիճակը բնութագրվում է նրանով, որ կայարաններն ընդունող-առաքող գծեր քիչ ունեն, եղած գծերի օգտակար երկարությունը կարճ է, չկան բեռնող և բեռնաթափող մատույցներ ու սարքավորումներ, մեկ մակարդակի վրա անցնող երկաթգծերն ու ավտոմոբիլային ճանապարհները հաճախ են հատվում։ Երևան—Սևան երկաթուղին բացառիկ բարդ և դժվար մակերեսով է անցնում, որպիսի հանգամանքը նվազեցնում է գնացքների քարշային նորմաները և արագությունը, սահմանափակում է թողունակությունը։ Մինչդեռ, Երևան—Սևան 84 կիլոմետր երկարու-

շինարարական կազմակերպությունները, մինիստրություններն ու գերատեսչությունները անբավարար են կատարում մերձատար ուղիների շինարարությունը։ Արդյունաբերական օբյեկտների շինարարական աշխատանքներն ավարտելիս պատշաճ ուշադրություն չի հատկացվում երկաթուղային մերձատար գծերի կառուցմանը, բեռնման-բեռնաթափման մեքենայացմանը և երթևեկության անվտանգությանը։ Շինարարական օբյեկտը գործարկելուց հետո մերձատար երկաթուղագծերի շահագործման հանձնումը տարեցտարի հետաձգվում է, իսկ երբեմն էլ գծերը շահագործման են հանձնվում դեռ վերջնականապես անավարտ վիճակում։ Որոշ դեպքերում դրանց շինարարությունը տևում է 10 տարուց ավելի։ Այսպես. Հրազդանի լեռնա-քիմիական կոմբինատի գծի շինարարությունն սկսված է 1958 թվականին, Լուսավանի գործիքաշինական գործարանինը՝ 1958 թվականին, Սևանի ապակեմեկուսիչ գործարանինը՝ 1959 թվականին, Արզնու ապակետարայի գործարանինը՝ 1960 թվականին, Քանաքեռի աղահանքինը՝ 1961 թվականին և այլն, բայց մինչև այսօր չեն ավարտվել։

Առ 1 հունվարի 1969 թվականի ավելի քան 85 մերձատար երկաթուղիներ (մոտ 70 կիլոմետր երկարությամբ) չեն գործարկվել, որը խիստ բացասաբար է անդրադառնում երկաթուղու Երևանի բաժանմունքի աշխատանքի վրա, թանկացնում է փոխադրումները և սպառնում անվտանգ երթևեկությանը։

Որոշ շինարարական կազմակերպությունների ու ձեռնարկությունների ղեկավարների անպատասխանատու վերաբերմունքի հետևանքով անթույլատրելիորեն ձգձգվում է Հայէլեկտրագործարանի, Կիրովի գործարանի մերձատար ուղիներին հարող գծերի շահագործման հանձնումը, Չարենցավանի ցենտրոլիտ գործարանի ուղանցումը։ Ձգձգվում է նաև դեպի Երևան քաղաքի հարավային շրջանի մերձատար ուղիներն հարող գծերի, Կոմիտասի փողոցի և Սարալանջի ուղանցումների շինարարությունը, որի հետևանքով շարունակվում է վտանգավոր հատման կետեր ունեցող ուղիների՝ Օրջոնիկիձեի պողոտայի, Բաքվի, Արտաշատի մայրուղիների և այլ ճանապարհների օգտագործումը, որտեղ ավտոբուսների վրա գնացքների վրաերթեր են կատարվել։

Արդյունաբերական տրանսպորտի մերձատար ուղիներում վագոնների նորմայից դուրս պարապուրդի էական շարժառիթներից մեկը բեռնման-բեռնաթափման աշխատանքների մեքենայացման ցածր մակարդակն է։ Արդյունաբերական ձեռնարկությունների ու կազմակերպությունների մերձատար ուղիներում բեռնաթափման-բեռնման աշխատանքների մեքենայացման մակարդակը ներկայումս կազմում է 45—59 տոկոս։ Միության մաշտաբով այդ աշխատանքները մեքենայացված են 85—90 տոկոսով։

Հանրապետությունում փոխադրումների արագ աճը փաստորեն չի զուգակցվում բեռնման-բեռնաթափման աշխատանքների մեքենայացման ուժեղացումով, իսկ ձեռնարկություններում ու բազաներում ունեցած մեխանիզմները արդյունավետ կերպով չեն օգտագործվում։ Մատակարարման ու վաճառահանման մասնագիտացված բազաների առկայության պայմաններում միջոցառումների չեն դիմում կենտրոնացնելու բեռնային գործառնությունները։ Ընդ որում այդ բազաներն աշխատում են 1—2 հերթափոխությամբ, իսկ եղած մեխանիզմները մնացած ժամանակում անգործության են մատնվում։

Մինիստրությունների, գերատեսչությունների, ձեռնարկությունների ու կազմակերպությունների ղեկավարներն անբավարար են կատարում դիրեկտիվ մարմինների որոշումները՝ նոր մերձատար ուղիների նախագծման ու շինարարության, դրանց ընդլայնման, բեռնման-բեռնաթափման աշխատանքների վերակառուցման և մեքենայացման ուղղությամբ։

ՀԿԿ Կենտկոմի բյուրոն վերջերս քննության առավ հանրապետությունում երկաթուղային տրանսպորտի զարգացման հարցը և ընդունեց համապատասխան որոշում, որի կենսագործումը հնարավորություն կտա մոտակա ժամանակներում ապահովելու ուղևորների կուլտուրական սպասարկումը և ժողովրդատնտեսական բեռների աճող փոխադրումները։

Հանձնարարվել է ՀՍՍՀ պետպլանին՝ ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրության հետ միասին՝ մշակել Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքի 1971—1975 թթ. զարգացման պլանը՝ հաշվի առնելով լիովին ապահովելու հանրապետության բեռների փոխադրման աճող պահանջմունքները։



ՀՍՍՀ պետպլանը, ՍՍՀՄ հաղորդակցության ճանապարհների մինիստրության հետ միասին Անդրերկաթուղու Երևանի բաժանմունքի զարգացման հնգամյա (1971—1975 թթ.) պլանի նախագիծը մշակելիս պետք է հաշվի առնեն հանրապետությունում փոխադրումների աճը.

Երևան—Սևան գծամասում պետք է ընդլայնել կայարանային տնտեսությունը, ավելացնել բեռնող-բեռնաթափող սարքավորումները և գծամասի փոխադրական կարողությունը։ Երևան—Մասիս հանգույցը վերակառուցել այն հաշվով, որ տեսակավորման ամբողջ աշխատանքը կատարվի Մասիս կայարանում։ Վերակառուցել Երևան կայարանի մարդատար պարկը, ընդլայնել կառամատույցը, կառուցել թունելային անցումներ, դադարեցնել ընդհանուր օգտագործման գծերի վրա բեռնումն ու բեռնաթափումը, ապահովել մերձքաղաքային և բագաժային-փոստային անհրաժեշտ քանակի գնացքների երթևեկությունը։ Ավարտել Երևան կայարանի նոր բեռնային բակի շինարարությունը, կառուցել անհրաժեշտ ճանապարհներ, արտադրական ու կենցաղային շենքեր, տեղակայել կապի միջոցներ և լիովին մեքենայացնել բեռնումն ու բեռնաթափումը։

Երևանի քաղսովետի գործկոմը պետք է միջոցներ ձեռնարկի քաղաքի միջով անցնող երկաթուղագծերի օտարման շերտը ազատելու բնակելի տներից։ Երևան—Սևան գծամասի երթևեկության անվտանգությունն ապահովելու և այդ գծամասի թողունակությունն ավելացնելու նպատակով, անհրաժեշտ է նախագծային ու շինարարական պլանի մեջ մտցնել Երևան—Աբովյան գծամասը շրջանցող ուղիների և երկաթուղային ճանապարհի վտանգավոր հատման կետերում անցումների կառուցումը։

Հանրապետության մինիստրություններն ու գերատեսչությունները պարտավոր են ժամանակին շահագործման հանձնել կառուցվող մերձատար ուղիները, բարձրացնել բեռնման-բեռնաթափման պրոցեսների մեքենայացման մակարդակը։

Երկաթուղային տրանսպորտը ժողովրդական տնտեսության զարկերակն է։ Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքի կուսակցական կազմակերպություններն ու բոլոր աշխատողները պարտավոր են մոբիլիզացնել իրենց բոլոր ուժերն ու միջոցները՝ արտադրական բարձր ցուցանիշներով դիմավորելու Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակը, անթերի կատարելու պետական առաջադրանքները։

Ե. Լ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ
ՀԿԿ Կենտկոմի արդյունաբերության
և տրանսպորտի բաժնի հրահանգիչ

## ԲԱՐԵԼԱՎԵՆՔ ԿԵՆՑԱՂՍՊԱՍԱՐԿՈՒՄԸ

Բնակչության կենցաղսպասարկումը, որպես հասարակական կյանքի մի կարևոր բնագավառ, ունի իրեն հատուկ արտադրական և տնտեսական կողմերը, մեծ թվով արտադրական ճյուղեր։ Կենցաղսպասարկման ձեռնարկությունները ո՛չ միայն կատարում են տարբեր ծառայություններ և անհատական պատվերներ, այլև միաժամանակ իրացնում դրանք, արտադրում նաև արդյունաբերական ապրանքներ։

Կուսակցության XXIII համագումարի դիրեկտիվներում նախատեսվում է՝ կենցաղսպասարկման ձեռնարկությունների ծառայությունների ծավալը 1966—1970 թվականների ընթացքում ավելացնել 2,5 անգամ, այդ թվում գյուղական վայրերում՝ 3 անգամ։ Բնակչության կենցաղսպասարկումը պետք է վերածել ժողտնտեսության խոշոր, մեքենայացված ճյուղի։ Այժմ դժվար է պատկերացնել ժողովրդի բարեկեցության բարելավում առանց կենցաղսպասարկման կատարելագործման և հետագա զարգացման։

շատ դեպքերում կենցաղսպասարկման մինիստրությանը չեն ապահովում համապատասխան շենքերով ու հարմարություններով։

Կենցաղսպասարկման ձեռնարկությունների ցանցի անհամաչափ տեղաբաշխման և սպասարկման բնագավառում եղած թերությունների պատճառով, այժմ գյուղական վայրերում բնակչության մեկ շնչին ընկնող ծառայությունների չափը մի քանի անգամ ավելի պակաս է քաղաքային բնակչից։ Գյուղական վայրերում կենցաղային ծառայությունների արագ զարգացմամբ ու բարելավմամբ կվերանան գյուղի և քաղաքի միջև գոյություն ունեցող սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային որոշ տարբերությունները։

ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1967 թ. օգոստոսի 26-ի «Բնակչության կենցաղային սպասարկման հետագա զարգացման միջոցառումների մասին» որոշման մեջ նշված է. «միջոցներ ձեռնարկել գյուղական բնակչության կենցաղային սպասարկման արագ զարգացման համար. հոգալ, որ 1967—1969 թթ. յուրաքանչյուր շրջանային կենտրոնում ու խոշոր գյուղական բնակավայրում կառուցվեն կենցաղային սպասարկման ժամանակակից, տեխնոլոգիական սարքավորումներով հագեցված կոմբինատներ ու տաղավարներ»։ Կենցաղսպասարկման խոշոր ձեռնարկությունների ստեղծումը ո՛չ միայն հնարավորություն կընձեռի լայնորեն կիրառելու մասնագիտացված և բարձր արտադրողական մեքենաներ ու տեխնոլոգիական պրոցեսներ, այլև մեծ չափով կնպաստի սպասարկման որակի բարձրացմանը, աշխատողների աշխատանքային պայմանների բարելավմանը։

Բնակչության կենցաղսպասարկման արագ զարգացումն ու կատարելագործումը մեր երկրում կոմունիստական հասարակարգի կառուցման ծրագրի բաղկացուցիչ մասն է և ունի սոցիալ-քաղաքական ու ժողտնտեսական մեծ նշանակություն։

Ա. Ս. ԱՄԻՐԽԱՆՅԱՆ



# Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

## ԱԿՆԱՌԱՎՈՐ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆԸ ԵՎ ՄԱՆԿԱՎԱՐԺԸ

(Ն. Կ. Կրուպսկայայի ծննդյան 100-ամյակի առթիվ)



Կոմունիստական կուսակցության հընագույն անդամ, հասարակական անդուլ գործիչ, սովետական ականավոր մանկավարժ էր Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայան՝ կանանց բանակի այն ամենաառաջադեմ մարտիկներից մեկը, որն իր երջանկությունը, Ջեննի Ֆոն Վեստֆալենի նման, գտնում էր ուրիշներին երջանկացնելու, իր դավանած սկզբունքին բոլորանվեր ծառայելու մեջ։

Դյուրին չի եղել կյանքի այն երկար ճանապարհը, որն անցել է նա՝ որպես Վլադիմիր Իլյիչի կինը, ամենամերձավոր բարեկամն ու զինակիցը։

Կրուպսկայան ծնվել է 1869 թ., Պետերբուրգում, ժամանակի հեղափոխական ինտելիգենտի ընտանիքում։ Մայրը՝ Ելիզավետա Վասիլևնան, եղել է ուսուցչուհի, հայրը՝ տարբեր ժամանակներում վարել է պետական տարբեր պաշտոններ, կապված է եղել հասարակության առաջավոր շրջանների հետ, իշխանության կողմից ճանաչվել որպես «անբարեհույս» մարդ։ Վաղ պատանեկան հասակից նա դստերը դաստիարակել է հակացարական ոգով։ Նադյան հորից զրկվել է 14 տարեկան հասակում։

Նադեժդան շատ վաղ հասակից է սեր ու հետաքրքրասիրություն դրսևորել մանկավարժության նկատմամբ։ Նա համոզված էր, որ ծնված է մանկավարժ լինելու և, որպես ուսուցչուհի, ավելի շատ օգուտ կբերի ժողովրդին։ Սակայն 1891 թ., գիմնազիան ավարտելուց հետո, որպես «անբարեհույս» մարդու աղջիկ, չի կարողանում համապատասխան մանկավարժական աշխատանք գտնել։ Երկար որոնումներից հետո միայն նրան հաջողվում է աշխատանքի անցնել Պետերբուրգի ծայրամասերից մեկում, Շլիսելբուրգյան պողոտայում գտնվող կիրակնօրյա գիշերային դպրոցում։ Այստեղ ստանալով իր մանկավարժական մկրտությունը, նա աշխատանքի բավականաչափ փորձ է ձեռք բերում և, միաժամանակ, բանվորների շրջանում քաղաքական լուրջ աշխատանք տանում։

1894 թ. Պետերբուրգում Վ. Ի. Լենինը ծանոթանում է Նադեժդայի հետ։

Իլյիչը ղեկավարում էր «Բանվոր դասակարգի ազատագրության պայքարի միությունը»։ Ակտիվ մասնակցելով այդ կազմակերպության գործունեությանը՝ Նադեժդան հեղափոխական ուսանողների հետ սկսում է ուսումնասիրել Մարքսի և Էնգելսի աշխատությունները։ Նա խորապես հետաքրքրվում էր այն ողջ գիտական-փիլիսոփայական գրականությամբ, որն օգտագործում էր Լենինը։ Սկսվում են նրա հեղափոխական գործունեությունը, անկաշառ բարեկամությունն ու հոգեհարազատ ընկերությունն Իլյիչի հետ։

Լենինի օգնությամբ Կրուպսկայան դառնում է հետևողական մարքսիստ։ Ահա ինչ է գրում նա՝ Թե ինչպես մարքսիստ դարձա հոդվածում.

> «Ես սովորեցի ատել ազգային ճնշումը, վաղ հասկացա, որ հրեաները, լեհերը և այլ ազգությունները բնավ վատ չեն ռուսներից և այդ պատճառով, երբ մեծացա, ամբողջ սրտով միացա Ռուսաստանի կոմունիստական կուսակցության ծրագրին... Ես կամավաղ հասկացա, թե ինչ է ցարական չինովնիկների ինքնիշխանությունը, ինչ է կամայականությունը և երբ մեծացա, դարձա ինքնակալության դեմ պայքարող հեղափոխական»։

Այնուհետև, 1925 թ. Երիտասարդության դաստիարակությունը լենինյան ոգով աշխատության մեջ նա գրել է.

> «Մարքսիզմը տվեց ինձ մեծագույն երջանկությունը, որպիսին կարող է տենչալ մարդը,— իմանալ, թե ո՞ւր ես ընթանում, հաստատուն, հանգիստ հավատ այն գործի վերջնական ավարտի հանդեպ, որի հետ կապել ես կյանքդ»։

Այդ անսասան հավատը, մարքսիզմի խոր իմացությունն ու սկզբունքայնությունը, խիզախությունը՝ զուգակցված մարդկային լավագույն հատկանիշների— համեստության, նրբազգացության, մարդկանց նկատմամբ ուշադիր վերաբերմունքի հետ, նրան դարձրին Իլյիչի անփոխարինելի բարեկամն ու օգնականը։

Պիտերի մանածագործների միության ընդհանուր գործադուլի ժամանակ, 1896 թ. ձերբակալվում է Նադեժդա Կոնստանտինովնան։ Յոթ ամսվա նախնական կալանք կրելուց հետո նա դատապարտվում է երեք տարվա աքսորի՝ Ուֆայի նահանգը։ Նրան հղած նամակով Իլյիչը խնդրում է ամեն կերպ հաջողացնել և իր աքսորավայրը՝ Շուշենսկոյե մեկնել։ Մեծ դժվարություններով Նադեժդան հաջողացնում է այդ և մոր հետ ուղևորվում այնտեղ, ուր և ամուսնանում է Լենինի հետ։ Սկսվում է գաղափարական երկու աքսորյալների դժվարություններով լի համատեղ կյանքը։

«Եվ այդ ժամանակվանից իմ կյանքն ընթացավ նրա կյանքի հետքերով, ես օգնում էի նրան աշխատանքում՝ ինչով և ինչպես կարողանում էի»,— իր հուշերում գրում է Նադեժդա Կոնստանտինովնան։

Իլյիչի մասին գրած նրա Հիշողությունները, որպես պրոլետարիատի մեծագույն առաջնորդի ամենամերձավոր մարդու հուշեր, բացառիկ արժեք ու նշանակություն ունեն. անբռնազբոս, անկաշկանդ, Իլյիչին բնորոշող նկարագրություններով, փաստերով հարուստ սրտաբաց մի զրույց է այդ ընթերցող լայն հասարակության հետ։ Գիրքը, որ կարդացվում է մեծ հետաքրքրությամբ ու հաճույքով, ո՛չ միայն նպատակ ունի ցույց տալ ամենամարդկային մարդու անցած հեղափոխական ճանապարհը, այլև իր՝ հեղինակի կյանքի պատմությունը, այն ուղին, որով նա է հանգել բոլշևիզմին։

Առաջադեմ գաղափարների տեր հեղափոխական կինը տոկունությամբ ու համբերատարությամբ է դիմակայել կյանքի բոլոր արհավիրքներին՝ վարելով հեղափոխականին հատուկ ստորգետնյա կյանք՝ Ռուսաստանում, Արևմտյան Եվրոպայում։ Ժնևում և Մյունխենում Կրուպսկայան, որպես «Искра»-ի խմբագրության քարտուղար, իր վրա է վերցնում Ռուսաստանի հետ կոնսպիրատիվ կապեր ստեղծելու դժվարին պարտականությունը,



կազմակերպում հեղափոխական գրականությունը տեղերն առաքելու գործը։ Նադեժդա Կոնստանտինովնան մասնակցում է ՌՍԴԲԿ երկրորդ և երրորդ համագումարների հրավիրման նախապատրաստական աշխատանքներին։

Իմպերիալիստական պատերազմի ժամանակ նա մտնում է Բեռլինում գումարված կանանց միջազգային կոնֆերանսի ռուսական պատվիրակության կազմի մեջ և, չնայած ռուս պատգամավորուհիները փոքրամասնություն էին կազմում կոնֆերանսում, բայց հանդես են գալիս հատուկ դեկլարացիայով, որտեղ շարադրված էր բոլշևիկյան դիրքավորումը իմպերիալիստական պատերազմի նկատմամբ։ Նա ակտիվ մասնակցում է ողջ հեղափոխական շարժմանն իբրև տղամարդուն հավասար մարտիկ, իբրև այդպիսին էլ անսահման հարգված ամենքի կողմից։ Կրուպսկայան կուսակցության Կենտկոմի հանձնարարությամբ կատարում է մի շարք պատասխանատու առաջադրանքներ, իսկ Հոկտեմբերյան հեղափոխության օրերին աշխատում հեղափոխության շտաբում՝ Սմոլնիում և կուսակցության Վիբորգյան կոմիտեում։

Կրուպսկայան Լենինի անխոնջ զինակիցն ու մարտական հավատարիմ ընկերն էր։ Նրանք կյանքով ու գործով անքակտելիորեն կապված էին միմյանց։ Զափազանց ուշագրավ է այն փաստը, որ երբ փետրվարյան զինված ապստամբությունից հետո ֆինն մեքենավար Յուլավան Լենինին տեղափոխում է Հելսինգֆորս, Նադեժդային՝ հեղափոխությունների բովով անցած այդ խիզախ կնոջը, հաջողվում է մի քանի անգամ այցելել Իլյիչին և պլաններ մշակել նրա հետ։ Այդ ժամանակ Նադեժդան միակ մարդն էր, որ վարում էր Լենինի և կուսակցության Կենտրոնական կոմիտեի կենդանի կապը։

Կրուպսկայայի և Վ. Իլյիչի փոխադարձ սիրո, համակրանքի վրա հիմնըված ընտանիքը օրինակ կարող է ծառայել սովետական երիտասարդների համար։ Այն բաղկացած էր երեք հոգուց— Լենին, Կրուպսկայա, Մարիա Իլյինիչնա... Հաճախ էին ընկերներով հավաքվում սիրով ու հարգանքով ջերմացած այդ հարկի տակ, սեղանին ունենալով խիստ համեստ ընթրիք կամ ճաշ։ Նրանց սակավապետության, համեստության արտահայտությունն է և այն, որ նրանք երբեք ոչինչ չեն կարգադրել իրենց տան սպասավորին, այլ միշտ սիրով ընդունել են այն, ինչ նա հնարավորություն է ունեցել անելու իրենց համար։ Ականատեսների հիշողությունները չափազանց շատ բան են ասում մայդ, ինչպես և ընկերների հանդեպ նրանց սրտացավ վերաբերմունքի, մարդասիրության մասին։ Լենինի մտերիմ բարեկամը՝ Կլարա Ցետկինն իր հիշողություններում պատմում է, որ երբ ինքը գալիս է Մոսկվա, օդի փոփոխությունը խիստ անդրադառնում է նրա վրա և հիվանդանում է։ Լենինն ու Կրուպսկայան անմիջապես այցելում են Կլարային, հոգում նրա վերաբերյալ, տեղեկանում, թե բժշկական ինչպիսի օգնության կարիք ունի և այլն։

Կրուպսկայան մեծ հոգու տեր մարդ էր, նա խորությամբ վերապրում էր ուրիշի կամ մերձավորի վիշտը։ 1920 թ., երբ վախճանվում է ականավոր բոլշևիկ, Լենինի մերձավոր բարեկամ ու զինակից Ինեսա Արմանդը, խոր վիշտ են ապրում Նադեժդան ու Լենինը և երբեք աչքաթող չեն անում նրա երկու դուստրերին։

Նադեժդան ասես թե խտացնում, մարմնավորում էր կնոջ մասին մարդկության դարավոր երազանքը— կին-մարդ, որին մատչելի են ամենամարդկային վեհ գաղափարները, որն օժտված է գործելու, պայքարելու, տոկալու անսպառ կարողությամբ, մարդկանց ճանաչելու, գնահատելու, լավը վատից անմիջապես զանազանելու, ամենատարբեր իրադարձություններում ժամա-

նակին կողմնորոշվելու ունակությամբ, հեռատեսությամբ։ Նա գիտեր իրենը համարել մերձավորի (և ո՛չ միայն մերձավորի) վիշտն ու ուրախությունը, տխրել և ուրախանալ ուրիշների հետ, սրտակցել, ցավել ու խորապես հասկանալ դիմացինին։ Թերևս մարդկային այդ վեհ, առինքնող հատկություններն էին գրավականն այն բանի, որ գեղեցիկ, նույնպես հեղափոխական կանանց շրջապատում Իլյիչը գերադասեց խիստ համեստ ու պարզ Նադյային։

Դարեր շարունակ կինը ստորադասվել, թույլ էակ է համարվել, տան չորս պատերի մեջ իր կանացի դառը ճակատագիրն ու բախտը հեծող էակ։ Բայց նա զգացել է իր նվաստ, ճնշված վիճակը, բողոքել դրա դեմ, ըմբոստացել։

Աշխարհի և ոչ մի երկրում կանայք այնքան անձնազոհ և այնքան աննկուն չեն մասնակցել ժողովրդի ազատագրական գոտեմարտերին, ինչպես Ռուսաստանում։ Դեռ 1877 թ. համառուսաստանյան սոցիալիստ-հեղափոխական կազմակերպության դատվող 50 գործիչների կեսը կանայք էին, այդ թվում և ականավոր Սոֆյա Բարդինան։ Նարոդնիկական շարժման անվանի գործիչներից էին՝ Ա. Կոռնիլովան, Ս. Պերովսկայան, Վ. Ֆիգները, Մ. Կոլենկինան, Օ. Նաթանսոնը, Ա. Կուվշինսկայան։ Միայն «193»-ի դատական պրոցեսում 38 հեղափոխական կանայք էին մասնակցում։ «Նարոդնայա վոլյա»-ի գործկոմի 29 անդամներից 10-ը կանայք էին։ Լենինի հիմնադրած «Պայքարի միության» գործունեությանը ակտիվ մասնակցում էին Լ. Ռադչենկոն, Զ. Նևզորովան, Ա. Յակուբովան, Ի. Սմիդովիչը, Պ. Վինոկուրովան, Վ. Վելիչկինան և շատ ուրիշներ։ Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայան թևավոր կնոջ, նոր կնոջ իրական կերպարն է։ Պարզ ու համեստ, մտքով հեռուները ճախրող, իր նախաձեռնած գործին հետևողականորեն հետամուտ մի կին, տոկուն, պայքարող, անդուլ գործող։

«Պրոլետարիատը չի կարող լիակատար ազատության հասնել առանց կնոջ համար լիակատար ազատություն նվաճելու»։ 1920 թ. փետրվարի 22-ին «Правда»-ի էջերից Կին բանվորուհիներին ուղղած Լենինի այս խոսքերը դարձան ինչպես բոլոր բոլշևիկների, այնպես էլ Կրուպսկայայի՝ կանանց շրջանում ծավալած աշխատանքի ուղենիշը։

Կրուպսկայան, որպես գաղափարապես կոփված, կայուն, համոզված հեղափոխական գործիչ, շատ բանով է հիշեցնում Կարլ Մարքսի կյանքի ընկերուհուն՝ Ջեննիին։

Խտացնելով իր մեջ էպոխայի առաջավոր կանանց լավագույն հատկանիշներն ու նրանց պես ողջ հոգով տենչալով ամեն ճնշումից ձերբազերծված տեսնել կնոջը, նա շատ առաջ է անցնում իր նախորդներից։ Նա զերծ էր ոմանց հատուկ սենտիմենտալիզմից, ինդիվիդուալիզմից, ուտոպիզմից։ Նա համոզված էր, որ կինը կատարելապես ազատագրվել կարող է միայն սոցիալիստական հասարակարգում։ Նա վկայակոչելով Լենինին, ընդգծում էր, որ սովետական իշխանության սկսած սոցիալիստական շինարարության գործը «...կարելի է առաջ տանել միայն այն ժամանակ, երբ հարյուր կանանց փոխարեն ամբողջ Ռուսաստանում այդ գործին կմասնակցեն միլիոնավոր և միլիոնավոր կանայք» (Լենին, Երկեր, հ. 30, էջ 37)։ Եվ համամիտ լենինյան այդ մտքին՝ նա նետվեց սոցիալիզմի շինարարության կենսաստեղծ եռուզեռի մեջ։

Դեռևս 1898 թվականին Նադեժդա Կրուպսկայան Լենինի խորհրդով գրեց իր առաջին գիրքը՝ Կին աշխատավորուհին վերնագրով, որը տպագրվեց 1901 թ., Ժնևում, լենինյան «Искра»-ի տպարանում։ Այստեղ բացառիկ պարզությամբ նա բացատրում է աշխատավոր կանանց կյանքի սոսկալի պայ-



մանները ցարական Ռուսաստանում։ Իսկ աշխատության երրորդ՝ «Կինը և դաստիարակությունը» գլխում ցույց է տալիս, որ աշխատավոր կինը կապիտալիզմի պայմաններում չի կարող ապահովել երեխաների իսկական դաստիարակությունը, որ միայն նոր, սոցիալիստական հասարակարգում աշխատավորների երեխաները կստանան ճիշտ դաստիարակություն։ Միաժամանակ առաջինը Ռուսաստանում նա բարձրացրեց նախադպրոցական երեխաների հասարակական դաստիարակության հարցը։

Իր աշխատանքային ստեղծագործական ավյունով ու եռանդով նոր կին էր Նադեժդան, խորհրդային կին, որին վստահվել են բազմաթիվ պատասխանատու աշխատանքներ, և նա միշտ սրբությամբ է կատարել իր պարտականությունները։ Պատահական չէ, որ ընկերների և աշխատակիցների շրջապատում նա վայելել է մեծ հեղինակություն։

Նադեժդայի լավագույն հատկանիշներից էր ծայրաստիճան աշխատասիրությունը. նրա աշխատանքային օրն սկսվում էր առավոտյան ժամը 5—6-ից և ավարտվում երեկոյան 9-ին։ Կրուպսկայայի քարտուղարը՝ Վ. Ս. Դրիձոն «Новый мир» ամսագրում լույս տեսած իր «Նադեժդա Կոնստանտինովնա» հոդվածում գրում է.

> «Նա միշտ աշխատում էր ոգևորված, իսկ կրքոտ սկզբունքայնությունը, ամեն հարցի նկատմամբ կուսակցական մոտեցումը հմայում էին բոլոր իր հետ աշխատողներին։ Նրան ո՛չ միայն հարգում էին որպես իր գործը խորապես իմացող ղեկավարի, որպես կուսակցության ավագ անդամի, այլ ուղղակի սիրում էին իբրև ավագ ընկերոջ ու բարեկամի։ Անսահման էր նրա հեղինակությունը»։

Սովետական մտավորականի կերպար, զարգացած, կուլտուրական, կուսակցական գաղափարական աշխատողի օրինակ է Նադեժդա Կոնստանտինովնան։ Նա կարողանում էր մտավոր, հոգեկան հարստություններն ի սպաս դնել կոմունիստական դաստիարակության մեծ գործին։ Նրա կյանքի օրինակը հասարակական-քաղաքական ու բարոյական անսպառ աղբյուր է մեր երիտասարդության համար։

Իլյիչը միշտ էլ խոր ակնածանքով ու հարգանքով էր վերաբերվում նրան, արտահայտվում նրա մասին, անհանգստանում նրա առողջական վիճակով. հեղափոխական անդադրում գործունեությունն իր կնիքն էր դրել Նադեժդայի վրա. 1918 թ. վերջերին և 1919 թ. սկզբներին նա հիվանդացավ և բժիշկների խորհրդով ուղևորվեց Սոկոլնիկիում գտնվող անտառային դպրոցը՝ հանգստանալու։ Վերադարձի նախօրեին Իլյիչն ինքը գնաց Նադեժդային բերելու, իսկ մինչ այդ նրան ուղղված նամակների տարափը նրա ջերմ հոգատարության, սիրո արտահայտությունն են։ Իլյիչը նրան հորդորում էր հնազանդվել բժշկին, ուտել և քնել ժամանակին. այդ դեպքում «...ձմռանը լրիվ աշխատունակ կլինես», գրում էր Կրուպսկայային, երբ նա մեկնում էր գործուղման։

Նադյան անսահման թանկ էր ինչպես իր, այնպես և նորաստեղծ երկրի համար։ Իլյիչը խորապես գնահատում էր նրա գիտելիքները, հարուստ ներաշխարհն ու նվիրվածությունը պրոլետարիատին, նորաստեղծ պետությանը։ Երբ Ջոն Ռիդի կինը՝ Լուիզա Բրայանտը ցանկություն է հայտնում տեսնելու Նադեժդային, աչքերի հպարտ, խաղացկուն ժպիտով Լենինն ասում է՝ անպայման հանդիպեք նրան, վստահ եմ, որ նա ձեզ դուր կգա, շատ խելացի կին է։

Հետագայում ևս Լենինը միշտ գործուն հետաքրքրություն էր ցուցաբերում Կրուպսկայայի վարած աշխատանքի նկատմամբ. «Օգնության մասին քո ստացած նամակները ես երբեմն կարդում եմ և ջանում անել՝ ինչ հնարավոր է»։

Իլյիչի համար շատ կարևոր էր Նադեժդա Կոնստանտինովնայի կարծիքը- նա իր բոլոր հոդվածները, գրքերի բնագրերն ամենից առաջ նրան էր տալիս կարդալու և անհամբեր սպասում նրա կարծիքին ո՛չ միայն որպես մտերիմ, թանկագին մարդու, այլև իբրև փորձված քաղաքական մարտիկի։

Կրուպսկայան ո՛չ միայն բոցավառ հեղափոխական էր, հասարակական-քաղաքական եռանդուն գործիչ, այլև խոշորագույն մանկավարժ։ Դեռևս 1907 թվականին, վտարանդիության մեջ, նա սկսում է ուսումնասիրել ռուսական ու արևմտաեվրոպական մտքի ու դպրոցի զարգացման պատմությունը, հաճախում դպրոցներ, ստանում շատ տեղեկություններ Ռուսաստանի ժողովրդական կրթության դրության մասին։ Իսկ 1917 թ. լույս է տեսնում նրա «Ժողովրդական կրթությունը և դեմոկրատիան» նշանավոր երկը, որը գրել էր Լենինի խորհրդով։ Այդ գրքում նա ցույց տվեց դեմոկրատական մանկավարժական գաղափարների էությունը և բացահայտեց ժամանակակից բուրժուական կրթական սիստեմի շահագործողական բնույթը։ Աշխատությունն արժանացավ ինչպես շատերի, նույնպես և Հոկտեմբերյան հեղափոխության մեծ երգիչ Մաքսիմ Գորկու բարձր գնահատականին։

Մինչև Հոկտեմբերյան հեղափոխությունը մանկավարժական հարցերի շուրջ հանդես գալով մամուլում, Կրուպսկայան քննադատելով նախահեղափոխական Ռուսաստանի կրթա-դաստիարակչական սիստեմը, միաժամանակ նշում էր նոր դպրոցի զարգացման ուղիները։ Այդ հարցերին են նվիրված Ռուսաստանում հրապարակված նրա բազում հոդվածները։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունից հետո սկսվում է Նադեժդա Կոնստանտինովնայի հասարակական-քաղաքական գործունեության նոր, քաղաքական-լուսավորական բեղուն աշխատանքների շրջանը։ Դեռևս փետրվարյան հեղափոխությունից հետո բոլշևիկյան մամուլում նա հրապարակել է մի շարք հոդվածներ ժողովրդական կրթության հարցերի մասին, կազմակերպել մանկավարժ-բոլշևիկների խմբակ։ Իսկ 1920 թ. քաղլուսվարական աշխատանքների կարգավորման ու ղեկավարման նպատակով, լուսժողկոմատին կից կազմակերպվում է քաղաքական լուսավորության գլխավոր վարչություն, որի գլուխ է անցնում Նադեժդա Կրուպսկայան. նրա անմիջական մասնակցությամբ ծավալվում է պայքարն անգրագիտության դեմ, հիմնվում են մասսայական գրադարաններ, խրճիթ-ընթերցարաններ, բանվորական ակումբներ, անգրագիտության վերացման կայաններ, մեծահասակների դպրոցներ և կուլտուր-լուսավորական, նախադպրոցական այլ հիմնարկություններ։

Սովետական իշխանության հաստատումից անմիջապես հետո Նադեժդա Կոնստանտինովնան նշանակվում է լուսժողկոմատի կոլեգիայի անդամ և, լինելով սովետական մանկավարժության մեծագույն երախտավորներից մեկը, 1921 թվականից գլխավորում պետական գիտական խորհրդի (ГУС) մանկավարժական սեկցիան, իսկ հետո, մինչև կյանքի վերջը եղել է ՌՍՖՍՀ-ի լուսավորության ժողովրդական կոմիսարի տեղակալը։ Նա եղել է ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության անդամ, 1924 թվականից՝ ՀամԿ(բ)Կ ԿՎՀ-ի, իսկ 1927 թվականից՝ ՀամԿ(բ)Կ ԿԿ-ի անդամ։

Մարքսի, Էնգելսի, Լենինի աշխատությունների խոր իմացության և պրոպագանդիստական ու մանկավարժական գործունեության մեծ փորձի շնորհիվ, Կրուպսկայան կարողացավ ստեղծագործաբար մշակել կոմունիստական դաստիարակության շատ հարցեր, լուսաբանել պոլիտեխնիկական կրթության,



կոլեկտիվիստական դաստիարակության, դպրոցական կարգապահության, ինչպես նաև դիդակտիկական ու մեթոդական շատ հարցեր։

Ն. Կրուպսկայան օժտված էր մանկավարժին հատուկ բոլոր հատկանիշներով, նա սիրում էր մանուկներին և փոխադարձաբար սիրվում։ Մայրական ինչպիսի՜ հոգածություն ու խնամք էր ցուցաբերում նա մանուկների նկատմամբ, որոնք այնպես շատ սիրում, կապվում էին նրա հետ, վստահում նրան իրենց ամենաասուրբ գաղտնիքներն իսկ։ Այնպես լավ նա գիտեր մանկանալ, ընկերանալ, հասկանալ նրանց... Պատահական չէ, որ ուսուցիչներից, կոմերիտականներից ու պիոներներից ամեն օր նա ստանում էր հարյուրավոր նամակներ... Նրան խիստ մտահոգել է երիտասարդության կոմունիստական դաստիարակության հարցը և այդ առթիվ 1922 թ «Պատանի կոմունիստը» հոդվածում գրում է՝ կոմունիստն ամենից առաջ բարձր ինքնագիտակցությամբ օժտված անձնավորություն է, իր որոշակի նպատակներով ու գործունեությամբ։ «Կոմունիստն ամենից առաջ հասարակական մարդ է՝ հասարակական ուժեղ զարգացած բնազդներով, որը ցանկանում է, որ բոլոր մարդիկ լավ ապրեն, բոլոր մարդիկ բախտավոր լինեն»։ Կրուպսկայան լավ էր հասկանում, որ գիտությանը տիրապետելուց առաջ պետք է մարդ լինել, իսկ սոցիալիստական կարգերում կոմունիստ՝ հոգով և սրտով, անձնական կյանքում ղեկավարվել կոմունիզմի շահերով։ Այդպես է պահանջում նոր հասարակությունը, սոցիալիստական հասարակությունը։ Կոմունիստը, կոմերիտականը, պիոները պետք է սովորեն իրենց անձնականը զուգակցել հասարակականին և գործնական պայքար մղել բուրժուական անհատապաշտության դեմ։ Այդ նշանակում է, որ կոմունիստը պետք է ոչ թե անտարբերությամբ դիտի այն, ինչ կատարվում է իր շուրջը, այլ ակտիվ պայքարի այն ամենի դեմ, ինչ վնասում է կոմունիզմի գործին, աշխատավոր մասսաների շահերին։

Ճիշտ է, Նադեժդա Կրուպսկայայի մանկավարժական դրույթները, եզրահանգումները ժամանակի, պայմանների արգասիք են, բայց այսօր էլ դրանք չեն հնացել, այժմեական են, քանի որ մատաղ սերնդի մեջ նա տեսնում էր ապագա մարդուն, սոցիալիզմ կառուցողին, իսկ այդպիսին կարող է լինել գաղափարապես զարգացած, մարքս-լենինյան ուսմունքի ոգով դաստիարակված բազմաշնորհ մարդը։ Երիտասարդին կոմունիստաբար դաստիարակելու համար, նախ՝ անհրաժեշտ է աշխատանքային դաստիարակություն։

Ուսուցումն արտադրական աշխատանքին՝ դաստիարակության այդ կարևորագույն գործոնին միացնելու սկզբունքը, ինչպես հայտնի է, առաջ են քաշել նաև մարքսիզմի հիմնադիրները։ Կրուպսկայան և Լենինը գտնում են, որ նոր՝ կոմունիստական հասարակության կառուցումն անհնար է առանց սովետական ժամանակակից գիտության իմացության և ուսուցման ու արտադրական աշխատանքի սերտ միացման։

Նադեժդա Կրուպսկայան կոմունիստական դաստիարակության հիմնական խնդիրներից է համարում նաև գեղարվեստական դաստիարակությունը՝ աճող սերնդի հոգևոր կուլտուրան հարստացնելու միջոցներից մեկը։ Նա գտնում է, որ արվեստը կօգնի երեխային՝ ավելի խոր դրսևորելու իր մտքերն ու զգացմունքները, ավելի խոր զգալու և պարզ մտածելու, ինքնաճանաչման շնորհիվ ճանաչելու ուրիշներին, կոլեկտիվին ավելի սերտ մոտենալու, կոլեկտիվի միջոցով աճելու։

Նոր սերնդի դաստիարակության մասին խոսելիս Կրուպսկայան հաճախ

նշում է, որ պիոներներին պետք է տալ լենինյան դաստիարակություն. իսկ Լենինը մեծ կարևորություն էր տալիս պիոներական շարժմանը: Միջազգային պիոներական կոնֆերանսում, իր զեկուցման մեջ Կրուպսկայան ասում է, որ Լենինը մեծերին ուղղած իր ճառերում շատ հաճախ խոսել է երեխաների մասին: Մեր հայրերը,— ասել է նա,— կռվել են միայնակ: Մենք, մեր սերունդը սովորել ենք ավելի լավ պայքարել, մեր երեխաները կսովորեն պայքարել մեզնից ավելի լավ, և նրանք կհաղթեն: Այդ մարգարեական խոսքերն իրականացան այդուհետ և, հատկապես, Հայրենական պատերազմի ու սոցիալիստական շինարարության տարիներին: Ժողովրդի ծոցից դուրս եկան հարյուր հազարավոր հերոսներ, որոնց հերոսությունները ու խիզախումները ցնցեցին աշխարհը, որոնց անձնվեր հայրենասիրության օրինակները զարդարեցին պատմության էջերը:

Սովետական մարդկանց ուժի աղբյուրը մինչև հիմա էլ առեղծված է կապիտալիստական աշխարհի շատ պարագլուխների համար: «Մենք չգիտեինք և չհասկացանք սովետական մարդկանց, նրանք մեզ համար եղել և մնում են հանելուկ»— Նյուրնբերգյան դատավարության ժամանակ խոստովանեց պատերազմի հանցագործ, Հիտլերի զինակից Գյորինգը: Այո՛, Հայրենական մեծ պատերազմը ցույց տվեց, թե ինչի՛ է ընդունակ սոցիալիստական աշխարհում աճած, լենինյան դաստիարակություն ստացած նոր մարդը:

Ծանոթանալով Նադեժդա Կրուպսկայայի մանկավարժական հայացքներին և ուսումնասիրելով նրա կյանքն ու մանկավարժական գործունեությունը, տեսնում ենք, որ նրա բոլոր աշխատություններում զգացվում են մեծ սեր ու հոգատարություն մանուկների, սոցիալիստական աշխարհը կառուցող աշխատավորների երեխաների, անսահման պատասխանատվություն ապագա մարդու, մեր հայրենիքի ապագա քաղաքացիների նկատմամբ:

Կրուպսկայան ընդգծում է նաև սովետական մանկավարժների անձնական օրինակի դերը: 1927 թվականին Նոր դպրոցի ճանապարհին հոդվածում նա նշում է, որ մանկավարժի խոսքի ու գործի միջև հակասություն չպետք է լինի, նա իր անձնական օրինակով պետք է ներազդի աշակերտի վրա: Երեխաների համար գաղափարը անբաժանելի է անձնավորությունից: Այն, ինչ ասում է սիրված, լավ ուսուցիչը, միանգամայն այլ կերպ է ընկալվում, քան այն ինչ ասում է արհամարհվող, խորթ մարդը: Ուստի, անհրաժեշտ է մտածել, խորհել սովետական ուսուցչի գաղափարական-բարոյակամային հատկությունների զարգացման և նրա հեղինակության բարձրացման մասին: Կրուպսկայայի այս մտքերն այժմեական կարևոր նշանակություն ունեն:

Դպրոցի և մանկավարժի դերի մասին խոսելիս Կրուպսկայան ցույց է տալիս, որ դպրոցն ու մանկավարժը պարտավոր են սովորեցնել աշակերտին ապրել նոր ձևով, ընկերական սերտ միաբանությամբ, զարգացնել գիտակցական կարգապահություն, համատեղ աշխատելու ունակություն, ամեն ինչ անել զգայուն, սրտացավ, ընկերասեր, պարտաճանաչ մարդ դաստիարակելու համար:

Ըստ արժանվույն գնահատվեցին մանկավարժության մեծ երախտավորի վաստակները: 1931 թ. ՍՍՀՄ Գիտությունների ակադեմիան նրան ընտրեց Պատվավոր ակադեմիկոս, իսկ 1936 թ. նրան շնորհվեց մանկավարժական գիտությունների դոկտորի գիտական աստիճան: Հասարակական, պետական, մանկավարժության բնագավառում կատարած իր բեղմնավոր գործունեության համար



նա պարգևատրվել է Լենինի, ապա՝ Աշխատանքային կարմիր դրոշի շքանշաններով:

Իր կյանքի բոլոր տարիներին Կրուպսկայան եղել է կոմունիստական կուսակցության քաղաքականության անդուլ կիրառողը: ՍՍՀՄ Գերագույն սովետի առաջին ընտրություններին նախապատրաստվելու օրերին, հանդես գալով Մոսկվայի մարզի Սերպուխովոյի շրջանի նախընտրական ժողովում, Կրուպսկայան ասում է՝ իրեն մեծ երջանկություն է վիճակվել՝ լինելու բոլշևիկյան կուսակցության անդամ և աշխատելու ընկեր Լենինի ղեկավարությամբ: Հատկապես երջանկություն է տեսնել, թե ինչպես խավար, աղքատ, ցարիզմի, կալվածատերերի, կապիտալիստների կողմից ոտնահարված երկրից Ռուսաստանը վերածվել է սոցիալիզմի երկրի. իրեն գերագույն երջանկություն էր պատճառում Միության մեջ ապրող տարբեր ժողովուրդների ինտերնացիոնալիզմը, համատեղ, համերաշխ եղբայրությունը:

Տասնհինգ տարի Կրուպսկայան ապրեց առանց Լենինի, ազնիվ ծառայելով կուսակցության մեծ գործին:

«Այդ տարիներին,— գրում է Կրուպսկայան Լենինի մասին իր հիշողություններում, — ինձ վիճակվեց շատ բան սովորել,— նորից ու նորից կարդալ Լենինին, սովորել ամուր զուգակցել անցյալը ներկայի հետ, սովորել ապրել Իլյիչի հետ, առանց Իլյիչի»:

Առանց Իլյիչի, բայց միշտ նրա հետ...

Եվ միայն դրա շնորհիվ ու անդուլ աշխատանքով նա կարողացավ հաղթահարել ծանր ապրումները, կրկին անվարան մասնակցել սոցիալիզմի կառուցման մեծ գործին:

1939 թվականին, 70 տարեկան հասակում վախճանվեց պրոլետարիատի մեծագույն առաջնորդի ամենամերձավոր մարդն ու հոգեհարազատ զինակիցը: Իր անբասիր գործունեությամբ Կրուպսկայան մեծ ավանդ թողեց ժամանակի և հետագա սերունդներին: Նա մնում է և կմնա մեր սերունդների հոգում՝ որպես առաքինի ու մեծ մարդու, աշխատողի, իր ամբողջ կյանքը հայրենիքին ու ժողովրդին նվիրաբերած գաղափարական կոմունիստի, անդուլ պրոպագանդիստի ու տաղանդավոր մանկավարժի պայծառ կերպար:

ՍՐԲՈՒՀԻ ԿԱԳԱՐՅԱՆ
Երևանի № 49 դպրոցի ուսմասվար



# ՀՈՒՆԳԱՐԻԱՅԻ ԲԱՆՎՈՐ ԴԱՍԱԿԱՐԳԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՆՇԱՆԱՎՈՐ ԷՋԸ

Եղբայրական Հունգարիայի կոմունիստներն ու աշխատավորները, աշխարհի առաջադեմ ուժերը հանդիսավոր նշեցին Հունգարիայի կոմունիստական կուսակցության ստեղծման 50-ամյակը: Առաջիկայում նշվելու է նաև Հունգարիայում սովետական իշխանության հռչակման 50 տարին: Պատմական այդ երկու տարելիցները, որոնց միջև չորս ամսվա ժամանակահատված է ընկած, անքակտելիորեն կապված են միմյանց հետ: Հունգարիայի կոմունիստական կուսակցությունը ստեղծվեց 1918 թ. նոյեմբերին, իսկ սովետական իշխանությունը հաղթանակեց 1919 թ. մարտին:

1919 թ. Հունգարիայի պրոլետարական հեղափոխությունը, որը համաշխարհային հեղափոխական պրոցեսի բաղկացուցիչ, անքակտելի մասն էր, վառ արտահայտված ինտերնացիոնալ բնույթ ուներ և Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության ներգործության փայլուն դրսևորումն էր:

Հոկտեմբերյան հեղափոխության ազդեցության ներքո Հունգարիայում ուժեղացավ հեղափոխական շարժումը, որն սկսվեց 1918 թ. ծավալվող համընդհանուր գործադուլներով: Իսկ 1918 թ. հոկտեմբերյան գործադուլը վերածվեց զինված ապստամբության և տապալեց հաբսբուրգյան միապետությունը: Հունգարիայում հաղթանակեց բուրժուա-դեմոկրատական հեղափոխությունը, իշխանությունն անցավ բուրժուազիայի ձեռքը:

«Հունգարական կերենշչինայի» ռեժիմի հաստատումը չկասեցրեց, սակայն, հեղափոխական իրադրության շեշտակի վերելքը, քանի որ կառավարման դեկն իրենց ձեռքը վերցրած բուրժուական և մանր բուրժուական կուսակցությունները մտադիր չէին իրականացնելու մասսաների սոցիալ-տնտեսական և քաղաքական արմատական պահանջները: Հոկտեմբերյան հեղափոխություն կատարած ռուս բանվորների և գյուղացիների օրինակը պայքարի ոգեշնչեց հունգարական աշխատավորներին՝ հանուն իսկական ժողովրդական իշխանության նվաճման, շահագործողական տիրող դասակարգերի վերացման: Քաղաքներում և գյուղերում ստեղծվում էին բանվորական, զինվորական ու գյուղական դեպուտատների սովետներ, որոնք իշխանությունն իրենց ձեռքն էին վերցնում: Բանվոր դասակարգը պահանջում էր վերացնել կապիտալիստական սեփականությունը, գործարաններն ու ֆաբրիկաները հանրայնացնել: Ոտքի էին ելել գյուղի չքավորները, նրանք կալվածատիրական հողերի բաժանում էին պահանջում:

Պատմական այդպիսի իրադրության պայմաններում, 1918 թ. նոյեմբերի 24-ին ստեղծվեց Հունգարիայի կոմունիստական կուսակցությունը, որի մեջ մտան Ռուսաստանից վերադարձած, լենինյան հեղափոխական դպրոց անցած հունգար հեղափոխականները, ձախ սոցիալ դեմոկրատները, հակամիլիտարիստական տրամադրություններ ունեցող հեղափոխական սոցիալիստները: Պատմական թատերաբեմ մտավ նոր տիպի կուսակցություն, որը զինվելով մարքս-լենինյան թեորիայով, ունակ էր բանվոր դասակարգին ու նրա դաշնակիցներին կազմակերպված գրոհի տանելու և կապիտալիզմը տապալելու:

Կուսակցությունը ծնունդ առավ հունգար աշխատավորների հեղափոխական շարժման վերելքի օրերին, երբ դասակարգային սրված պայքարը օրակարգի հարց էր դարձրել սոցիալիստական հեղափոխությունը: Կոմունիստական կուսակցության ստեղծումը, այսպիսով, հունգար բանվոր դասակարգի համար պատմական անհրաժեշտություն էր և նրա շարժման պատմության մեջ նոր, փայլուն էջ բացեց: Իր գոյության առաջին օրերին կոմկուսակցությունն առաջ քաշեց հետևյալ լոզունգները— հանուն սովետական հանրապետության, շահագործողական դասակարգերի ունեզրկման, դաշինք Սովետական Ռուսաստանի հետ՝ ընդդեմ իմպերիալիստական Անտանտի, որն առաջին համաշխարհային պատերազմում պարտված Հունգարիային հաշտության ծանր պայմաններ էր թելադրում: Իր գործի հանդեպ ունեցած գաղափարական խոր համոզվածության, աշխատավորների կենսական պահանջների պաշտպանության գործում ցուցաբերած տոկունության շնորհիվ հունգար կոմունիստները վստահություն ու մեծ հարգանք ձեռք բերին բանվորների, գյուղացիների և առաջավոր ինտելիգենցիայի լայն խավերի շրջանում:

Կոմունիստների ժողովրդականության մեծացումը, սակայն, չկասեցրեց ռեակցիայի կատաղի պայքարը կոմունիստական կուսակցության դեմ և 1919 թ. փետրվարի 21-ի գիշերը բանտ նետվեցին նրա 40 ղեկավարները: «Կուսակցությունը, չնայած նրա ղեկավարների բանտարկությանը,— ընդգծել է Բելա Կունը,— ոչ մի ռոպե չդադարեց առաջատար լինելուց: Մի քանի օր գործերը վարում էին Կենտրոնական կոմիտեի ազատ անդամները: Շուտով մենք ևս բանտից գլուխ բերեցինք բանվորներին և չքավոր գյուղացիներին ղեկավարելու գործը: Եվ այդ ղեկավարությունն այնքան արդյունավետ էր, որ կոմունիստական կուսակցության ազդեցությունը մասսաների շրջանում օրեցօր մեծանում էր» (Бела Кун. Уроки пролетарской революции в Венгрии. М., 1960, стр. 59—60):

Այդ ժամանակ կուսակցության բանտարկված լիդերներին դիմեցին Հունգարիայի սոցիալ-դեմոկրատների ղեկավարները և առաջարկեցին միավորվել, ստեղծել մի այնպիսի կառավարություն, որի կազմում լինեին կոմունիստներ ու սոցիալ-դեմոկրատներ: Հեղափոխական շիկացած իրադրության պայմաններում, երբ Անտանտի պետությունները պահանջում էին նոր շրջաններ անջատել Հունգարիայից, կոմունիստներն առաջարկեցին իրենց պայմանները՝ Հունգարիայում հռչակել սովետական իշխանություն, ստեղծել կարմիր բանակ, զինաթափել բուրժուազիային, ազգայնացնել արդյունաբերությունը, բռնագրավել կալվածատիրական հողերը, դաշինք կնքել Սովետական Միության հետ: Այդ հիմունքներով տեղի ունեցավ բանվորական երկու կուսակցությունների միավորումը: Այսպիսով, խաղաղ ճանապարհով Հունգարիայում հաղթանակեց պրոլետարական հեղափոխությունը: Բուրժուազիան, որը զրկվել էր ռեալ ուժերից ու մասսաների աջակցությունից, իշխանության նվաճման համար անհրաժեշտ միջոցներ չուներ: Հեղափոխության խաղաղ զարգացմանը նպաստեց նաև մանր բուրժուական տարրերի անցումը սովետական իշխանության կողմը: Նրանք պրոլետարական իշխանության և Սովետական Ռուսաստանի հետ դաշինքի մեջ էին տեսնում ազգային անկախության և երկրի միասնության պահպանման ռեալ հնարավորությունը:

Կապիտալիզմից սոցիալիզմին անցնելու Հունգարիայի այդ առանձնահատկությունները Հոկտեմբերյան մեծ հեղափոխությամբ սկսված պատմական նոր ժամանակաշրջանի արտացոլումն էին: Հունգարիայի պրոլետարական հեղափոխությունը, հատկապես, ցույց տվեց, որ սովետական իշխանությունը ո՛չ միայն Ռուսաստանի առանձնահատկություններով պայմանավորված «բուն ռուսական» երևույթ էր, ինչպես այդ չարախնդորեն պնդում էին բուրժուազիայի գաղափարախոսներն ու համախոհները, այլ միջազգային նշանակություն ունեցող պետական իշխանության նոր ձև, որը բուրժուական դեմոկրատիան փոխարինում է սոցիալիստականով այն երկրներում, որտեղ բանվոր դասակար-

գը, գյուղացիության հետ դաշնակցած, հաստատում է իր իշխանությունը: Ահա թե ինչու, խոսելով Հունգարիայի սոցիալիստական հեղափոխության մասին, Վ. Ի. Լենինը շեշտը դնում էր բոլշևիզմի ԲԱՐՈՅԱԿԱՆ ՀԱՂԹԱՆԱԿԻ վրա (տե՛ս Երկեր, հ. 29, էջ 267): Բացի այդ, նա ընդգծում էր «... որ աշխարհում միայն մեկ իշխանություն կա, որը ծանր րոպեին ընդունակ է ղեկավարել ժողովուրդներին,— դա սովետների իշխանությունն է: Ահա թե ինչու հունգարական հեղափոխությունը այն բանով, որ բոլորովին այլ ձևով է ծնվել, քան մերը, ամբողջ աշխարհին ցույց կտա այն, ինչ որ Ռուսաստանի վերաբերմամբ թաքցվում էր, այն է՝ որ բոլշևիզմը կապված է հին պառլամենտի տեղը հանդես եկող նոր, պրոլետարական, բանվորական դեմոկրատիայի հետ» (Երկեր, հ. 29, էջ 324):

Հունգարական սովետական կառավարությունն սկսեց լայն աշխատանք ծավալել սոցիալիստական էկոնոմիկայի ստեղծման, աշխատավորների կենսամակարդակի բարձրացման համար. դեկրետ հրապարակեց արդյունաբերության, լեռնային և տրանսպորտի ձեռնարկությունների, բանկերի, հողի ազգայնացման, աշխատավարձի բարձրացման, ութժամյա բանվորական օրվա վերաբերյալ: Մի շարք միջոցներ մշակվեցին աշխատավորների բնակարանային պայմանների բարելավման, բնակվարձի իջեցման, սոցիալիստական ապահովության սիստեմի ընդլայնման, անվճար բուժսպասարկման իրականացման համար: Հունգար ժողովուրդը պատմության մեջ առաջին անգամ հնարավորություն ստացավ իր ներկայացուցիչներն ընտրելու պետական իշխանության բարձրագույն և տեղական օրգաններում:

Լենինը, մեր կուսակցությունն ու կառավարությունը ջերմորեն ողջունեցին Հունգարիայի պրոլետարական հեղափոխության հաղթանակը: 1919 թ. մարտի 22-ին ՌԿ (բ)Կ VIII համագումարի անունից հաղորդվեց Լենինի գրած ողջույնի ռադիոհեռագիրը, ուր ասված էր. «Ռուսաստանի կոմունիստական կուսակցության VIII համագումարը բոցավառ ողջույն է հղում հունգարական սովետական հանրապետությանը: Մեր համագումարը համոզված է, որ հեռու չէ այն ժամանակը, երբ ամբողջ աշխարհում կհաղթանակի կոմունիզմը» (Երկեր. հ. 29, էջ 232): Սովետական երկու հանրապետությունների միջև, պրոլետարական ինտերնացիոնալիզմի վրա հիմնված, բարեկամական և համագործակցության ջերմ հարաբերություններ ստեղծվեցին: Այդ հանրապետությունների կառավարությունները քաղաքական կարևորագույն հարցերի շուրջ ինֆորմացիաներ, կարծիքներ էին փոխանակում:

Ռուսաստանի սովետական կառավարությունը, հնարավորություն չունենալով անմիջական ռազմական օգնություն ցույց տալու Հունգարիային, դիմեց այնտեղ գտնվող ռուս ռազմագերիներին, կոչ անելով «... մտնել հեղափոխական կարմիր Հունգարիայի բանակը և հունգար եղբայրների հետ մեկտեղ պաշտպանել հունգարական հեղափոխության և ռուսական հեղափոխության, բոլոր երկրների աշխատավորների և շահագործվող մասսաների ընդհանուր գործը»:

Սակայն Հունգարիայի հեղափոխությունը կատարվեց միջազգային անբարենպաստ պայմաններում: Սովետական Ռուսաստանը, զբաղված լինելով ներքին և արտաքին հակահեղափոխության դեմ մղվող պայքարով, չկարողացավ անմիջական ռազմական օգնություն ցույց տալ եղբայրական Հունգարիային: Մյուս կողմից՝ միջազգային ռեակցիան պաշարեց փոքրիկ Հունգարիան և 1919 թվականին արյան մեջ խեղդեց սովետական հանրապետությունը: Հունգարիայի պրոլետարական հեղափոխությանը մեծ հարված հասցրեց նաև աջ սոցիալ-դեմոկրատների դավաճանական գործունեությունը (նրանք, բանակցությունների մեջ մտնելով Անտանտի իմպերիալիստների հետ, ներսից քայքայում էին երիտասարդ հանրապետությունը): Հեղափոխության գործի վրա բացասաբար ազդեցին նաև հունգար կոմունիստների թույլ տված մի շարք սխալները:

Ազգայնացնելով հողը, Սովետական Հունգարիայի կառավարությունն այն չբաժանեց գյուղացիներին, այլ հանձնեց տեղերում ստեղծված գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվներին: Այդպիսով, գյուղացիական լայն մասսաները նյութապես բավարարված չէին զգում իրենց, և բանվոր դասակարգը չկարողացավ կայուն միություն ստեղծել գյուղացիների հետ. այս ամենը թուլացրեց Հունգարիայի պրոլետարական իշխանությունը: Բացի այդ, միավորվելով սոցիալ-դեմոկրատների հետ, հունգար կոմունիստները չկարողացան կուսակցությունը ձերբազերծել սոցիալ դավաճաններից, չկարողացան ըստ ամենայնի կատարել Լենինի խորհուրդները, որոնք ամփոփված էին հետևյալ ռադիոհեռագրում. «Հաղորդեցե՛ք, խնդրեմ, թե ինչպիսի՞ իրական երաշխիքներ ունեք դուք այն բանի համար, որ հունգարական նոր կառավարությունն իսկապես կոմունիստական կլինի, այլ ոչ թե միայն պարզապես սոցիալիստական, այսինքն՝ սոցիալ-դավաճանական:

Արդյոք մեծամասնություն ունե՞ն կոմունիստները կառավարության մեջ: Ե՞րբ է տեղի ունենալու սովետների համագումարը: Իսկապես ինչո՞ւմն է կայանում սոցիալիստների կողմից պրոլետարիատի դիկտատուրայի ճանաչումը:

Բոլորովին անկասկած է, որ մեր ռուսական տակտիկայի ընդօրինակումը բոլոր մանրամասնություններով հունգարական հեղափոխության պայմաններում սխալ կլիներ: Ես պետք է նախազգուշացնեմ այս սխալից. բայց ես կուզեի իմանալ, թե ինչում եք տեսնում դուք իսկական երաշխիքները» (Երկեր, հ. 29, էջ 270):

Վ. Ի. Լենինի այս խոսքերը, ուր նախազգուշացվում են ինչպես սոցիալ-դեմոկրատների դավաճանության, այնպես էլ ռուսական տակտիկայի դոգմատիկ պատճենավորման վտանգավորությունը, հրատապ նշանակություն ունեին: Դրանք հրատապ նշանակություն ունեն նաև մեր օրերում:

1919 թ. հունգարական հեղափոխության դասերը մեծ դեր խաղացին ո՛չ միայն Հունգարիայի, այլև միջազգային բանվորական շարժման հետագա զարգացման համար: Հոկտեմբերյան հեղափոխությանը հաջորդած 1919 թ. հունգարական հեղափոխությունը պրակտիկայում հաստատեց լենինյան այն դրույթը, որ իմպերիալիզմի փուլում մերձենում են բուրժուա-դեմոկրատական և սոցիալիստական հեղափոխությունները, որ ճշմարտացի են սոցիալիստական հեղափոխությունների բովանդակության և շարժիչ ուժերի վերաբերյալ մարքս-լենինյան դրույթները, պրոլետարիատի դիկտատուրայի պատմական օրինաչափության հաստատումը: Միաժամանակ, հունգարական հեղափոխությունը ցույց տվեց, որ առանց լավ կազմակերպված, գաղափարապես համախմբված կոմունիստական կուսակցության ու նրա ղեկավար դերի, պրոլետարիատը չի կարող վերջնականապես հաստատել իր քաղաքական իշխանությունը, որ առանց սոցիալիստական հեղափոխությանը գյուղացիական լայն մասսաների մասնակցությանը, բանվոր դասակարգը չի կարող իր ձեռքում պահել պետական իշխանությունը: Հունգարական պրոլետարական հեղափոխության դասերը վկայում են նաև, որ չի կարելի տապալել կապիտալի իշխանությունը, առանց հաշվեհարդար տեսնելու օպորտունիզմի հետ: Լենինը մատնանշել է, որ ոչ մի կոմունիստ չպետք է մոռանա հունգարական սովետական հանրապետության դասերը: Հունգար կոմունիստների միավորվելը ռեֆորմիստների հետ, թանկ նստեց հունգար պրոլետարիատին:

Չնայած 1919 թ. հեղափոխության պարտության, չնայած կրած ծանր կորուստներին, դաժան հետապնդումներին ու տեռորին, հունգար ժողովրդի լավագույն զավակները՝ կոմունիստները, չընկճվեցին: Նրանք անլեգալ պայմաններում հերթական պայքար էին մղում ընդդեմ խորթիստական ռեժիմի, ֆաշիստական դիկտատուրայի, կազմակերպում ու քաղաքականապես լուսավորում էին պրոլետարիատին, աշխատավորության լայն խավերին պրոպագանդում մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարները: Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին կոմունիստներն առաջատար դեր էին խաղում հակաֆաշիստական լայն շարժման մեջ, անձնազոհ պայքար էին մղում պատերազմից դուրս գալու, հանուն անկախ ու դեմոկրատական Հունգարիայի:

Երկրորդ համաշխարհային պատերազմում, ջախջախելով հիտլերյան Գերմանիային, Սովետական Միությունը հունգար ժողովրդին օգնեց դեն նետելու ֆաշիստական ռեժիմի շղթաները, ստեղծելու բանվորների և

գյուղացիների ժողովրդա-դեմոկրատական պետություն: 1947 թ. օգոստոսի պառլամենտական ընտրություններին կոմունիստական կուսակցությունը գրավեց առաջին տեղը, ընդլայնվեցին ու ամրապնդվեցին դեմոկրատական ուժերի դիրքերը: Դեմոկրատական հեղափոխության, ապա խաղաղ ճանապարհով այն սոցիալիստականի վերաճելու ընթացքում ձեռք բերվեց ազգային անկախություն, լուծվեց ագրարային պրոբլեմը՝ հողը հանձնվեց գյուղացիներին: Ժողովրդա-դեմոկրատական պետության հաստատումը, կալվածատերերին ու բուրժուազիային պետական օրգաններից դուրս մղելը, հունգար պրոլետարիատին ու նրա ավանգարդին՝ կոմունիստական կուսակցությանը, հնարավորություն ընձեռեց իրականացնելու մի շարք միջոցառումներ, որոնք ուղղված էին էկոնոմիկայի զարգացմանը: 1947—48 թթ. ազգայնացվեցին բանկերը, արդյունաբերական խոշոր ձեռնարկությունները, ստեղծվեցին սոցիալիզմի տնտեսական հիմքերը:

1948 թ. կոմունիստներն ու ձախ սոցիալ-դեմոկրատները, որոնք պայքարում էին ֆաշիզմի, բուրժուազիայի, աջ սոցիալ-դեմոկրատների օպորտունիստական գործունեության դեմ, մարքս-լենինյան սկզբունքների հիման վրա միավորվեցին, ստեղծեցին միասնական հեղափոխական կուսակցություն, ապահովելու բանվոր դասակարգի քաղաքական միասնությունը: Հունգար կոմունիստները հիմնական ուշադրությունը կենտրոնացրին սոցիալիստական շինարարության խնդիրների լուծմանը, արդյունաբերության և գյուղատնտեսության արագ զարգացմանը: Առաջին հնգամյակի տարիներին (1950—54 թթ.) սոցիալիստական սեկտորը իշխող դարձավ ո՛չ միայն արդյունաբերության ու տրանսպորտի, այլև առևտրի ասպարեզում: Անհամեմատ արագ տեմպերով էր զարգանում արդյունաբերությունը: 1938 թ. համեմատությամբ արդյունաբերության արտադրանքի մակարդակը աճեց 3 անգամ, մինչդեռ երկրորդ համաշխարհային պատերազմին նախորդած 20 տարիների ընթացքում այն աճել է միայն 20 տոկոսով. ժողովրդական տնտեսության մեջ ավելացավ արդյունաբերության տեսակարար կշիռը: 1955 թ. երկրի ազգային եկամտի մեջ արդյունաբերության բաժինը կազմում էր մոտ 60 տոկոս (այնինչ, 1938 թ.՝ 38 տոկոս էր):

Սոցիալիզմի հիմքերի շինարարությունը Հունգարիայում ընթանում էր արտաքին ու ներքին թշնամիների դեմ անընդհատ պայքարի պայմաններում: Միջազգային իմպերիալիզմը կազմակերպում ու ոգեշնչում էր երկրի ներսում ու դրա սահմաններից դուրս գործող բուրժուա-կալվածատիրական հակահեղափոխությանը, որի նպատակն էր տապալել ժողովրդա-դեմոկրատական կարգերը: Հակահեղափոխությունը ջանում էր հովանավորել ռևիզիոնիստների գործունեությունը, ամլացնել պրոլետարիատի դիկտատուրայի հեղափոխական բովանդակությունը, երկրի հասարակական-քաղաքական կյանքում նսեմացնել կուսակցության և բանվոր դասակարգի դերը, գրգռել ազգայնական տրամադրություններ, վարկաբեկել սոցիալիզմի նվաճումները:

1956 թ. իմպերիալիստների կողմից Հունգարիայի հակահեղափոխական խռովության նախապատրաստման և դրդման գործում Իմրե Նագի խումբը չարագույժ դեր կատարեց: Հունգար ժողովրդի համար չափազանց ծանր այդ օրերին, երբ սպառնալիքի տակ էին սոցիալիստական նվաճումները, աննկուն կոմունիստների խումբը, Յանոշ Կադարի ղեկավարությամբ, ստեղծեց հեղափոխական նոր կենտրոն. դիմեց սովետական կառավարությանը և խնդրեց անհապաղ օգնություն ցույց տալ հակահեղափոխական ուժերի զինված ելույթը ճնշելու, Հունգարիայում սոցիալիզմի նվաճումները պաշտպանելու: ՍՍՀՄ կառավարությունն ընդառաջեց հունգարական բանվորագյուղացիական հեղափոխական նոր կառավարությանը, կատարեց իր ինտերնացիոնալ պարտքը հունգար ժողովրդի, սոցիալիստական բոլոր երկրների աշխատավորների, կոմունիստական և դեմոկրատական համաշխարհային շարժման հանդեպ: ՍՍՀՄ օգնությամբ Հունգարիայում վերացավ իմպերիալիստական տերությունների ինտերվենցիայի, պատերազմի ծագման հնարավորությունը: Այդպիսով Սովետական Միությունը և մյուս սոցիալիստական պետությունները ցույց տվեցին իրենց վճռականությունը՝ ընդհանուր ուժերով պաշտպանեցին սոցիալիզմի նվաճումները:

Հունգար կոմունիստներն ամեն ինչ արեցին հունգարական սոցիալիստական բանվորական կուսակցության վերստեղծման, լայն ծրագիր մշակեցին սոցիալիզմի նվաճումների պաշտպանության, երկրի նախկին ղեկավարների սխալների ուղղման, Հունգարիան սոցիալիզմի ուղիով առաջ տանելու, ժողովրդի բարեկեցության բարձրացման համար: Կատարելով կուսակցության առաջադրանքները, հունգար ժողովուրդը նոր, խոշոր նվաճումներ ձեռք բերեց սոցիալիստական հասարակարգի կառուցման ասպարեզում:

Տնտեսական և կուլտուրական շինարարության բնագավառում հունգար աշխատավորների ձեռք բերած հսկայական հաջողություններն արդյունք են նրանց անձնուրաց աշխատանքի, ՀՍԲԿ ճիշտ քաղաքականության, համաշխարհային սոցիալիզմի երկրների հետ սերտ համագործակցության: ՀՍԲԿ, ղեկավարվելով կուսակցական կյանքի լենինյան սկզբունքներով, հմտորեն, ստեղծագործաբար կիրառելով հեղափոխական թեորիան, ընդլայնում է կապերն աշխատավորների հետ, ամրապնդում բանվոր դասակարգի իշխանությունն ու հասարակական սեփականությունը, բարձրացնում սոցիալիստական պետության կազմակերպական դերը, կատարելագործում ժողովրդական տնտեսության պլանավորումը, ինտերնացիոնալ համագործակցության քաղաքականություն վարում սոցիալիզմի համաշխարհային սիստեմի երկրների հետ:

«Հավատարիմ մնալով մեր ժողովրդի շահերին,— ասում է ընկեր Կադարը,— մեր կուսակցությունների որոշումները պետք է բխեն նաև սոցիալիստական երկրների, միջազգային բանվոր դասակարգի և ժողովուրդների հակաիմպերիալիստական ազատագրական պայքարի ընդհանուր շահերից: Հարցերի լուծմանն ինտերնացիոնալ մոտեցում ցուցաբերելը, ազգային և ինտերնացիոնալ հարցերի լուծման ճիշտ զուգակցումը հնարավոր է և անհրաժեշտ»: Ելնելով սոցիալիստական երկրների ինտերնացիոնալ շահերը ազգային շահերի հետ զուգակցելու անհրաժեշտությունից, ՀՍԲԿ վարում է այնպիսի քաղաքականություն, որ Հունգարիան ակտիվ մասնակցի Վարշավայի պայմանագրի կազմակերպությանը, լինի տնտեսական փոխօգնության խորհրդի ակտիվ անդամը:

Հունգարիան, ինչպես սոցիալիզմի մյուս երկրները, իր արժանի ավանդն է ներդնում սոցիալիստական համագործակցության ամրապնդման գործում, տնտեսական ու կուլտուրական շինարարության յուրօրինակ մեթոդներով լրացնում ու հարստացնում համաշխարհային սոցիալիզմի վիթխարի փորձը: Սոցիալիստական համագործակցությունը հնարավորություն է ընձեռում սոցիալիզմի յուրաքանչյուր երկրի, ինչպես և Հունգարիային, ամրապնդելու իր ազգային ինքնուրույնությունն ու անկախությունը, օգտվելու ընկերական, եղբայրական աջակցության ու համագործակցության առավելություններից: Այս առումով մեծ նշանակություն ունի սովետա-հունգարական բարեկամության զարգացումը, որը կոփել են Լենինը, Հունգարիայի կոմկուսակցության հիմնադիրներ՝ Բելա Կունը, Տիբոր Սամուելը:

Սովետա-հունգարական բարեկամությունն ամրապնդվել է դասակարգային ընդհանուր թշնամու դեմ մղած պայքարում թափված արյունով: Մեր երկրի զավակների հետ ուս-ուսի հազարավոր հունգարացիներ քաղաքացիական պատերազմի դաշտերում կռվում էին հոկտեմբերյան հեղափոխության գործի հաղթանակի համար: Երկրորդ համաշխարհային պատերազմի տարիներին հունգար ժողովրդի լավագույն ներկայացուցիչները կոմունիստների կոչով պայքարում էին ֆաշիզմի դեմ, ամրապնդում մարտական համագործակցությունը սովետական բանակի հետ:

Տապալելով շահագործողական դասակարգերի իշխանությունը, կանգնելով սոցիալիստական և ազգային վերածննդի ճանապարհին, հունգար ժողովուրդն աներեր կանգնեց սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման դիրքերում:

Մ. Գ. ՆԻԿՈՂՈՍՅԱՆ

# Եղբայրական ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

## ԸՆԴՕՐԻՆԱԿԵՆՔ ՏԱԼԻՆՑԻՆԵՐԻ ՓՈՐՁԸ

(ԺՈՒՌՆԱԼԻՍՏԻ ՆՈԹԵՐ)

Ով գեթ մի անգամ եղել է Տալինում, անցել հինավուրց քաղաքի խորհրդավոր, նեղլիկ փողոցներով, բարձրացել վերնաքաղաք և հենց սանդղագլխին զմայլվել քաղաքով. պատմություն դարձած նրա պարիսպներով, նստել ծովափին ու լսել ծովի խորքերից եկող ալիքների խուլ մռնչյունը. չի կարող չսիրել լայնատարած ծովախորշի խորքերում ծվարած այդ գողտրիկ քաղաքը:

Իսկ երբ օրվա վառ տպավորություններից ընդարմացած ու քաղցած հյուրընկալի որևէ սրճարանում (Մոսկվա. Վանա Թոմաս, Տուլյակ) կամ ռեստորանում (Գլորիա, Աստորիա, Պիրիտա) նրան կհամակի ջերմ մի ցանկություն— հարազատ քաղաքին հաղորդել հոգեպարար ու անմոռաց տպավորություններ, նրան մաս տանել այստեղից:

Նուրբ ճաշակով կահավորված լուսավոր ճաշարանները, սրճարանները ժպտում են մարդկանց: Ուրախ՛ հոգատարություն, հարգանք աշխատավոր մարդու նկատմամբ: Ամեն բան արվում է նրա հոգսերը թեթևացնելու համար, ամեն բան նախատեսվում, որպեսզի նա ժամանակին սնվի, առողջ լինի, վերականգնի ուժերը: Միևնույն է, թե ով կդիմավորի նրան այստեղ՝ անուշիկ դեմքով, մեղմիկ ժպիտով մանկամարդ աղջիկ, թե՞ կիրթ արտաքինով մի երիտասարդ, ընդունելությունը նույնքան քաղաքավարի է, սպասարկումը՝ բարձր կուլտուրայով. նրան չի սպառնում անուշադիր մնալու տհաճությունը: Այստեղ կջանան բավարարել նրա պահանջները, բարեհոգի տանտիրուհու նրման բարձրացնել տրամադրությունը: Իսկ մատուցողները, չմոռանալով, որ մեծ չափով իրենց վերաբերմունքից է կախված, թե այցելուն ինչպես կանցկացնի իր ազատ ժամանակը, ի՛նչ տրամադրությամբ կվերադառնա արտադրություն, հոգեբանական մոտեցում են հանդես բերում, աշխատում ստեղծագործաբար, արվեստով, վարպետորեն: Նրանք գիտակցում են իրենց կատարած աշխատանքի հասարակական նշանակությունը, դրա բովանդակությունն ու նպատակի ազնվությունը: Այդ ամենն արտացոլվում է նրանց դեմքի վրա, նկատվում բարեկիրթ. զուսպ շարժումներում՝ այցելուներին ընդունելիս ու ճանապարհելիս: Նրանց արժանապատվությունը, պրոֆեսիոնալ հպարտությունն ամենքն են նկատում և ոչ ոք չի հանդգնում հետները «դու»-ով խոսել, անպարկեշտ վերաբերվել: Այցելուները հաճախ են նրանցից բաժանվում առանց խոսքերի. ասելիքը ժպիտ դարձրած: Հյուրի հայացքն ասում է. «Դուք շատ լավ աշխատեցիք, խոսքերն ավելորդ են», իսկ մատուցողինը պատասխանում՝ «Գիտեմ, որ գոհ մնացիք. շատ ուրախ եմ դրա համար»: Նրանք սիրալիր դիմավորում են այցելուին. տեղ առաջարկում, հրամցնում ճաշացանկը, հաշվի առնելով նրա ժամանակը. տարիքը, օգնում ընտրություն կատարելու, մատուցում պահանջվածը, ապա կանգնում մի անկյունում՝ հետամուտ այցելուի շարժումներին, հայացքին ու ջանում աննկատ մնալ, չշեղել նրան, չընդհատել զրույցը:

Այսպիսով, մարդկանց ժպտերես սպասարկելու հատկությամբ, միևնույն ժամանակ, աննկատ մնալու մեծ շնորհքի, բացառիկ քաղաքավարության շնորհիվ մատուցողը կարողանում է իր կոլեկտիվի ու այցելուների միջև ամուր, բայց անտեսանելի խարիսխ ձգել: Եվ տալինցիները՝ միշտ գոհ ընդունելությունից, հաճույքով հրաժարվում են տնային խոհարարի հոգեմաշ. ծանր պարտականությունից, խոհանոցին ստրկանալուց, օգտվում հասարակական սննդի բարիքներից, խնայում ժամանակը: Սրճարանում, ճաշարանում կամ ռեստորանում, նրանք նախաճաշում են, ճաշում և ընթրում, հանգստի և զվարճության ընտանեկան մտերմիկ երեկոներ անցկացնում:

Այստեղ են գալիս ճերմակահեր տարեցներ, խենթ ու զվարթ երիտասարդներ, բոցոտ աղջիկներ: Այստեղ կարելի է տեսնել անկաշկանդ ոգևորություն, հաճելի ժպիտներ, որոնցից սառը, անծանոթ մթնոլորտը ջերմանում է. կենդանանում, սեղանի շուրջը բոլորած մարդիկ մտերմանում են, բացվում. դրան մեծ չափով նպաստում է նաև մատուցվող կերակուրների ախորժաբեր տեսքը և մանավանդ՝ համը:

Տալինի խոհարարները ջանում են, որ իրենց այցելուները միայն քաղցը չհագեցնեն, այլև ուտելիքից էսթետիկական հաճույք ստանան: Նրանք աշխատում են, որ այցելուներն իրենց պատրաստած ուտելիքից այնքան գոհ մնան, որ ճաշարանինը գերադասեն տնայինից: Դժվար է ասել, թե տալինցին որն է գերադասում: Մի բան, համենայն դեպս, ակնհայտ է.— յուրաքանչյուր տալինցի շաբաթական առնվազն մեկ անգամ դրսում է սնվում. նրանց քառասուն տոկոսն օգտվում է հասարակական սննդից: Իսկ ինչ վերաբերում է այս կամ այն առիթով Տալին ժամանած հյուրին, կամ քաղաքն այցի եկած տուրիստներին, ապա նրանք միայն մեծ գովեստով ու հիացմունքով են խոսում Տալինի բարձրորակ կերակուրների. բազմազան ասորտիմենտի, սպասարկման մեծ կուլտուրայի և, որ կարևոր է, ամենքին մատչելի գների մասին:

Սակայն, բարեկիրթ շարժումներն ու վարվեցողությունն ինքնին չեն մշակվում կամ ձեռքերը միանգամից շնորհաշատ չեն դառնում: Դրա համար ամենօրյա համբերատար, դժվարին ու տառապալից աշխատանք է պահանջվում: Հաճախ հարկ է լինում հաղթահարել զանազան բնազդներ, հակումներ, հաղթահարել ինքն իրեն...

«Երբ ես ռեստորան եկա,— պատմում է տալինցի մի երիտասարդ մատուցող,— վախենում էի սրահ մտնել, սարսափում այնտեղ ծանոթների հանդիպելու մտքից. փշաքաղվում հանդիմանական այն հայացքներից, որոնք կարծես ասում էին. «Ախր քո տեղը հաստոցի առաջ է կամ շինարարությունում, ինչո՞ւ ես այստեղ ափսեների հետ մլով տալիս»:

Բայց ուսուցիչս մեղմ, հայրաբար գոտեպնդում էր ինձ. «Դե, արիացիր, տղա՛ս, չէ՞ որ այնտեղ մարդիկ են, նրանք քեզ են սպասում, քեզ վստահում իրենց հանգիստը, առողջությունը, տրամադրությունը: Հիշի՛ր, քո մասնագիտությունը շատ ազնիվ է, հետաքրքրական, դժվարին»:

Այո՛, ծանր ու պատասխանատու: Մատուցողը պետք է ունենա որոշակի ճաշակ, լինի մաքրասեր, սրախոս, հնարամիտ, կատարի հաշվարարի ֆունկցիա, նրանից պահանջվում է տոկունություն, պատշաճ ֆիզիկական ուժ: Ամենքը գիտեն, որ հոգնած մարդը չի կարող միշտ պատրաստակամ լինել, իսկ առանց դրա նրա աշխատանքն անիմաստ է[1]:

Թերևս իրենց գործը սիրելուց, դրա կարևորության խոր զգացողությունից է, որ հրուշակագործ վարպետները, խոհարարներն ու մատուցողները խորապես ցավում, դառնանում ու մտահոգվում են, որ այդ մասնագիտությունն ստվերում է մնում (չնայած սրճարաններն ու ռեստորանները, ճաշարաններն ու բուֆետները, խոհարարական արտադրանքի խանութները սովորական երևույթ են դարձել, իսկ դրանցից օգտվողների թիվը գնալով մեծանում է): Հմուտ ձեռքերի, ստեղծագործ մտքի պակասն այստեղ խիստ զգալի է: Մինչդեռ մասսայական դպրոցները երեխաներին վարժեցնում են այն մտքին, որ նրանք ապագայում դառնալու են ինժեներներ, շինարարներ, մոնտաժողներ, բայց ոչ երբեք՝ մատուցողներ, խոհարարներ, հրուշակագործներ:

«Տալինի ռեստորաններից մեկում,— պատմում է մատուցող Դ. Դեմյանովը,— մի դպրոցի շրջանավարտների հետ հանդիպում էր կազմակերպված: Աշխատողները պատմեցին մատուցողի մասնագիտության մասին, ցանկացողներին հրավիրեցին ռեստորանում աշխատելու: Այնուհետև ելույթ ունեցավ դասղեկը և հայտարարեց. «Մի՞թե դպրոցը զբաղվել է երեխաների դաստիարակությամբ նրա համար, որ նրանք օղի կամ ճաշ մատուցեն»: Ահա թե ինչպիսի՜ թյուր պատկերացում է ստեղծվել մեր աշխատանքի մասին»: Այնինչ, առանց չափազանցության կարելի է ասել, որ հասարակական սննդի ապագան երիտասարդ մասնագետների ձեռքում է:

Տալինում լրջորեն հոգում են այդ մասնագիտության նկատմամբ նման մոտեցումը հաղթահարելու համար: Երիտասարդական սրճարաններում զրույցներ են անցկացվում, դպրոցական երեկույթներում ցուցահանդես-վաճառք կամ շրջանային, քաղաքային կոնկուրսներ կազմակերպվում: Իսկ կադրերը հմտանում, գիտելիքներ են ձեռք բերում սննդի տեխնիկական ուսումնարանում, պոլիտեխնիկական ինստիտուտի քիմիական ֆակուլտետի տեխնոլոգիական բաժ-

---

1 *Ի միջի այլոց, Չեխոսլովակիայում հաշվել են, որ մատուցողն օրական անցնում է 10 կմ և այդ ընթացքում տեղափոխում 2,5 տոննա բեռ:*

# ՏՐԱՄԱԲԱՆԱԿԱՆ-ԻՄԱՑԱԲԱՆԱԿԱՆ ՊՐՈԲԼԵՄԱՏԻԿԱՆ XIX ԴԱՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԿԵՍԻՆ

*Սովետահայ փիլիսոփայական գրականության մեջ, հատկապես վերջին տարիներին, երևան են եկել մի շարք արժեքավոր ուսումնասիրություններ, նվիրված անցյալ դարի հայ հասարակական-տեսական մտքի լուսաբանմանը և արժեքավորմանը։ Հետազոտվել են XIX դարի հայ իրականության մեջ իշխող փիլիսոփայական ուղղություններն ու դրանց միջև ծավալված պայքարի հիմնական խնդիրները, ճշգրտվել են հայ մշակույթի առաջատար դեմքերի փիլիսոփայական ըմբռնումները։ Չնայած կատարվածին, հետազոտման կարիք ունեն Հայաստանում և հայ գաղթաշխարհում ստեղծված բազում աշխատությունները, որտեղ ամփոփված են անցած դարի տրամաբանական-իմացաբանական պրոբլեմատիկայի վերաբերյալ արժեքավոր ուսումնասիրություններ։*

*Սույն հոդվածում մենք ջանացել ենք վեր հանել XIX դարի երկրորդ կեսի հայ տրամաբանական մտքի առավել բնորոշ ուղղությունները, տալ դրանց ձևավորման պատմական, իմացաբանական հիմքերի վերլուծությունը։ Ինչպես առհասարակ, հայ իրականության մեջ ևս տրամաբանությունը ենթարկված է եղել ճանաչողության պահանջներին, ծառայեցվել կոնկրետ գիտելիքների ձեռք բերման ու ձևակերպման համար անհրաժեշտ մեթոդների մշակման նպատակին։ Ուստի, իմացության պրոցեսների ու մեթոդների վերաբերյալ տարբեր պատկերացումները հիմք են հանդիսացել տրամաբանական տարբեր, հաճախ իրարամերժ հայացքների ձևավորմանը, որոնք իրենց ամբողջության մեջ ուրվագծել են այդ գիտության բովանդակությունը, ուսումնասիրության հիմնական պրոբլեմատիկան։*

*Տրամաբանական-իմացաբանական ժառանգության վերհանումն ու յուրացումը, բացի ընդհանուր մեթոդոլոգիական պրոբլեմների քննական վերլուծումից, ենթադրում է փիլիսոփայական ավանդների, ստեղծված փիլիսոփայական գրականության նկատմամբ պատշաճ մոտեցում։ Հասկանալի է, որ մեզ հասած մտավոր ժառանգությունը հավասարապես չի բնութագրում դարաշրջանի գաղափարական առանձնահատկությունը, գիտական առանձին ուղղությունները։ Անհրաժեշտ է, որ այս ուսմունքները քննության առնվեն ոչ միայն այդ գիտության ներքին պրոբլեմատիկայի մեկնաբանության, այլև ժամանակի ընդհանուր տեսական-իմացական հարցադրումների, փիլիսոփայական ըմբռնումների, բնագիտության մեթոդոլոգիական խնդիրների տրամաբանական հայեցակետից։ Վերջապես գլխավոր հարցերից է ժառանգված նյութի ասպեկտների առանձնացումը՝ կապված ժամանակակից գիտական իմացության տրամաբանական պրոբլեմների հետ։*

* * *

*XIX դարի առաջին կեսի բնագիտական մտքի նվաճումները հրամայաբար պահանջում էին վերանայել փիլիսոփայության նկատմամբ տրադիցիոն մոտեցումը, որն իր արտացոլումն է գտել նաև տրամաբանության մեջ։ Այդ ժամանակ բնության ողջ թագավորությունը բաժանված էր կոնկրետ գիտությունների միջև։ Վերջ էր տրվում գիտելիքների բացերը մտահայեցողական եղանակով լրացնելու պատրանքին։ Բնագիտությունը դարձել էր այն փորձաքարը, որի վրա պետք է ստուգվեին տեսական մտածողության արդյունքները։ Նման պայմաններում իշխող է դառնում այն կարծիքը, թե գիտելիքը կարող է ձեռք բերվել միայն բնագիտության ասպարեզում և միայն նրա միջոցով։ Հարվածի տակ էին դրված սխոլաստիկայի գոյության հիմքերը՝ մտահայեցողական ռացիոնալիզմը և դրան ծառայեցված ավանդական տրամաբանությունը։ Դրանց դեմ էին ուղղված ո՛չ միայն բեկոն-միլյան էմպիրիզմն ու ինդուկտիվ տրամաբանությունը, այլև դեկարտ-լայբնիցյան ռացիոնալիզմը, այդ դիրքերից մեկնաբանված դեդուկտիվ տրամաբանությունը։ Դեռևս XVII դարում, երբ ավանդական տրամաբանությունը նոր էր միայն ձերբազատվում միջնադարյան սխոլաստիկայի բեռից, էմպիրիկներ Բեկոնը և Լոկը (այնուհետև Հերշելն ու Միլը) գիտությունը հռչակեցին իբրև փորձնական, մշակեցին ընդհանուր գիտելիքները փորձից դուրս բերելու տրամաբանական մեթոդներ ու միջոցներ։ Իմացության պրոցեսի էմպիրիստական* դրվածքին համապատասխան նրանք ձևակերպեցին ինդուկտիվ տրամաբանությունը որպես հետազոտության ու հայտնագործության տրամաբանություն։ *Այդ ուղղության համար ամենահատկանշականը բուն տրամաբանության (ինչպես նաև մաթեմատիկայի) սկզբունքային դրույթներին, գիտությունների հիմքը կազմող ելակետային ընդհանրություններին փորձնական հիմնավորում տալու ձգտումն է, որը ինդուկտիվ եղանակով կատարել հնարավոր չէր։*

*Ելակետային ընդհանրությունները փորձի տվյալներից բխեցնելու դժվարությունն այն անտիթեզն է, որն ընկած է եղել ռացիոնալիզմի և էմպիրիզմի դարավոր վեճի հիմքում։ Այս է պատճառը, որ միևնույն ժամանակ, բայց հակառակ* ծայրից *էին հետազոտության ու հայտնագործության տրամաբանության մշակման խնդրին մոտեցել նաև ռացիոնալիստներ Դեկարտը և Լայբնիցը։ Նույն XVII դարում Դեկարտը և կարտեզյանները ավանդական տրամաբանության պրոբլեմատիկան կապեցին գիտության մեթոդի մշակման, իմացության բուն պրոցեսի հետազոտման ռացիոնալիստական ըմբռնումների հետ, դրանով հիմք դնելով* գիտական իմացության դեդուկտիվիստական տրամաբանության *կազմավորմանը։ Այդ խնդիրն իր հետագա զարգացումը գտավ Լայբնիցի տրամաբանական ուսմունքում։*

*Ու թեև XIX դարում, հատկապես Հեգելի շնորհիվ իմացաբանական-տրամաբանական այդ միակողմանի և իրարամերժ կոնցեպցիաները դրսևորում էին իրենց սահմանափակությունները, սակայն, այդ հանգամանքը դուրս չմղեց գիտական հետազոտության տրամաբանության հետագա մշակման պրոբլեմը, որի համար վերոհիշյալ ուղղությունների ինքնուրույն զարգացմանը զուգընթաց, փորձեր էին արվում ստեղծել տրամաբանական այնպիսի ուսմունքներ, որոնք կմիահյուսեին այդ երկու մեթոդոլոգիական սկզբունքները և ազատ կլինեին դրանց միակողմանիություններից։ Նոր տրամաբանության ստեղծումն ու զարգացումը իրականանում էր կղերա-սխոլաստիկական սպեկուլյատիվ մտածողությանը հարմարեցված ավանդական սիլլոգիստիկայի դեմ մղվող պայքարում, որի մեջ հավասարապես ներգրավված էին թե՛ էմպիրիկներն ու ինդուկտիվիստները և թե՛ ռացիոնալիստներն ու դեդուկտիվիստները։ Այս պայմաններում սպեկուլյատիվ մտածողության և կոնկրետ հետազոտության արդյունքների միջև կամուրջներ անցկացնելը հետագա սխոլաստիկայի համար ձեռք է բերում կենսական նշանակություն. դրանով նոր սխոլաստիկան տարբերվում է իր միջնադարյան դրսևորումից։ Ավանդական տրամաբանությունը ևս աստիճանաբար ձերբազատվում է միջնադարյան կղերա-ֆեոդալական սխոլաստիկայի կապանքներից և այս կամ այն չափով մերձենում բնագիտությանը։*

* * *

*Մեզ հետաքրքրող ժամանակաշրջանը շրջադարձային էր հայ հասարակական-քաղաքական և մտավոր կյանքի պատմության մեջ։ Բուրժուական հարաբերությունների ձևավորմանն ու զարգացմանը զուգընթաց, այստեղ բուռն հե-*

նությամբ։ Ընդունելով, որ այդ ձևերն ու միջոցները կան և անհրաժեշտ են ճանաչողության համար, նա չի կարողանում դրանք հանգեցնել իրենց նյութական հիմքերին, դրանով իսկ հարելով էմպիրիզմի և ռացիոնալիզմի գլխավոր վեճի մեջ Հոբսի գրաված միջին դիրքին։ Բայց եթե Հոբսը այդ հարցին կոմպրոմիսային պատասխան է տալիս, ապա Կոստանդյանը, գիտելիքի պայմանավորվածությունն իրականությամբ բովանդակային իմաստով ապացուցելուց հետո, լռելյայն անցնում է մյուս հարցի՝ բանականության միջոցների, մտածողության տրամաբանական ապարատի հիմնավորման կողքով։ Այդ հանգամանքը շատ ակնառու է դրսևորված հեղինակի թեկուզ հետևյալ կշռադատության մեջ. «Մարդու մը միտքը, ըսենք տրամաբանությունը (Ratio), աղորիքի մը կրնանք նմանցնել, որու ցորենը՝ արտաքին աշխարհի եղելություններն են։ Եթե այս ցորենը կա, ու եթե անի զգայարաններե ներս կը մտնե՝ տրամաբանական մեքենան ալ կրնա ալյուր, այն է ճշմարտություն հանել, եթե այս ցորենը չկա՝ միտքն ալ պարապ տեղը կը հոգնի ու վերացականությունները կը հանե» (Նույն տեղը, էջ 165)։ Իսկ թե առանց զգայական նյութի որտեղի՞ց է այդ «աղորիքը» կամ «մեքենան», որը կարող է գործել անգամ «արտաքին աշխարհի եղելություններից» մեկուսացած և վերացականություններ հանել, հեղինակը անպատասխան է թողնում։

էմպիրիզմի և ռացիոնալիզմի վեճը չէր կարող լուծվել մետաֆիզիկական մեթոդի միջոցներով։ Պատահական չէ, որ մտածողության ձևերի, տրամաբանական կատեգորիաների հետազոտության շատ շնորհակալ ու անհրաժեշտ խնդրի սիստեմատիկ լուծմանը, Արիստոտելից հետո, ձեռնամուխ եղավ միայն Հեգելը (տե՛ս Ֆ. Էնգելս, Բնության դիալեկտիկա, 1957, էջ 247)։ Միայն դիալեկտիկան ապացուցեց, որ ըստ ձևի ևս գիտելիքը իրականությամբ է պայմանավորված, որ բովանդակային առումով բանականությամբ ձեռք բերված արդյունքները համապատասխանում են իրականությանը, նրան համընկնում հենց այն պատճառով, որ բանականության օրենքները, մտածողության ձևական-տրամաբանական ապարատը իրականության օրենքների, օբյեկտիվ տրամաբանության սուբյեկտիվ անալոգն են։

Այն բանից հետո, երբ Կոստանդյանը վճռված էր համարում մեր գիտելիքների փորձնական ծագման և դրանց ձեռքբերման եղանակի ընտրության հարցերը, նրան մնում էր պարզաբանել տրամաբանական դեդուկցիայի իմացական նշանակությունը, ցույց տալ, որ եթե դեդուկտիվ սկզբունքը սխոլաստիկական մեկնաբանությամբ չի կարող հետազոտության հուսալի միջոց լինել, ապա գիտական իմացության ամբողջական սիստեմում ի՞նչ տեղ պետք է հատկացնել դրան։

Ըստ Կոստանդյանի, գիտական ճանաչողությունն զգայականի շարունակությունն ու զարգացումն է, որ տեղի է ունենում տրամաբանական աբստրակցիաների կազմավորման ու ճանաչողության պրոցեսի մեջ դրանց ակտիվ կիրառության ուղիով։ «Զգացումը մտածելուն կնախորդե»,— գրում է նա։ «Զգայարանց միջոցով գործող՝ դրական ուսանողությունը կաշխատի նախ նայիլ, շոշափել, փորձել ու հետո հավատալ, հետո տրամաբանել» (Կոստանդյան, Մեթոդի վրա, էջ 173)։ Հիմնվելով զգայական նյութի վրա, մարդու մտածողությունն այնուհետև վերացական կատեգորիաների շնորհիվ ավելի խորն է թափանցում կոնկրետ առարկաների ու երևույթների մեջ և այնպիսի եզրակացությունների հանգում, որոնք զգայությամբ չէին կարող ձեռք բերվել։ Սակայն քանի որ այս պրոցեսի համար բանականության անհրաժեշտ միջոցների, մտքի ձևերի, մտածողության տրամաբանական սկզբունքների առաջացման հարցը նրա մոտ մատերիալիստական լուծում չի ստանում, նա տուրք է տալիս ռացիոնալիզմին։

Բագրատունու հետ մեկտեղ, դասվելով հայ ինդուկտիվ տրամաբանության հետևորդների շարքը, Կոստանդյանը, ի տարբերություն համաինդուկտիվիստ Բագրատունու, դեդուկտիվ սկզբունքի հանդեպ ունեցած իր դրական վերաբերմունքով ձգտում է հարել գիտական իմացության տրամաբանության ինդուկտիվիստական կոնցեպցիային։

XIX դարի երկրորդ կեսի հայ իրականությանը բնորոշ մյուս ուղղությունը



ռացիոնալիզմն է ու նրա հետ կապված դեդուկտիվիզմը՝ իրենց ծայրահեղ ու չափավոր դրսևորումներով, որոնց տիպիկ ներկայացուցիչներն են Պողոս Էմմանուելյանը (1829—1904) և Անտոն Գարագաշյանը (1818——1903)։

Ծայրահեղ ռացիոնալիզմն առաջին ճշմարտությունները, համընդհանուր և անհրաժեշտ բնույթի հավաստի գիտելիքներն աստվածային շնորհ է համարում, իսկ մարդու մտածելու ունակությամբ օժտված լինելն ու դրանով հայտնություններ անելը դիտում իբրև գերագույն նախախնամության կանխորոշումներ։ Մեր կողմից, որևէ երևույթ բնավ չէր ճանաչվի, եթե այն մեզ իբրև աստվածային կատարելություն չներկայանար և եթե մենք զուրկ լինեինք կատարելությունն ըմբռնելու աստվածային շնորհից, գրում է ծայրահեղ ռացիոնալիզմի հայ ակնառու ներկայացուցիչ Էմմանուելյանը։ «Ծանոթութիւնք մտաց մերոց ճշմարիտ են, քանզի յարմարին առարկայի և առարկայք ճշմարիտ են, քանզի յարմարին նախատիպ գաղափարացն որք ի միտս Աստծոյ» (Տարերք բանական փիլիսոփայության, Կ. Պոլիս, 1872, էջ 47)։ Իրերի սուբստանցիոնալ էության ճանաչողությունը Էմմանուելյանի կարծիքով, հնարավոր է միայն շնորհիվ «յուղիղ կիրառութիւնն այնոցիկ սկզբանց՝ որք ճանաչին ի մենջ բնական կամ բանական կարողութեամբ մտացս լուսոյ» բայց և «ոչ մերժելով, այլ ենթադրելով զգերբնական լույսն յԱստուածային յայտնութիւնէ ընկալեալ...» (Նույն տեղը, էջ 3)։

Այն բանից հետո, երբ ծայրահեղ ու չափավոր ռացիոնալիզմի համար որոշվում է բանականության առաջնակարգ նշանակությունն իմացության պրոցեսում, իսկ ելակետային հավաստի ճշմարտությունների հարցը լուծվում է դրանք իբրև գիտակցությունից մակաբերված անհրաժեշտություններ ու համընդհանրություններ դիտելով, առաջ է գալիս դեդուկցիայի իմացական գնահատման խնդիրը։ Բնական է, ռացիոնալիզմի թե՛ չափավոր, թե՛ ծայրահեղ դրսևորման ժամանակ դեդուկտիվ մեթոդի ճանաչողական նշանակությունը գերագնահատվում է։ Այդ մեթոդն է, որ հնարավորություն է ընձեռում առաջին ճշմարտությունների վրա հենվելով՝ եզրակացություններ անել այլ ճշմարտությունների վերաբերյալ, որոնք թեև արդեն երկրորդական, բայց առաջինների վրա խարսխված դարձյալ հավաստի գիտելիքներ են և ստեղծվել են «յուղիղ տրամաբանութիւնէն կամ նպաստիք հավաքաբանութեան, այսինքն ցուցմամբ և բաղդատմամբ պատճառացն» (Նույն տեղը, էջ 214)։ Բայց այդ ընդհանրությամբ հանդերձ չափավոր ռացիոնալիզմի հետևորդները ինդուկցիան դեն չեն նետում, կարևոր տեղ են տալիս փորձին, որը նրանց համար ո՛չ միայն ընդհանուր և անհրաժեշտ ճշմարտությունների բացահայտման ազդակ է, այլև կազմավորում է մտածողության նյութական բովանդակությունը, ավելի ճիշտ առարկայական է դարձնում մտածողությունը։ Այնինչ ծայրահեղ ռացիոնալիզմը անտեսում է ինդուկցիայի դերը, խիստ ընդգծում փորձը՝ իբրև մտածողության ազդակ և նսեմացնում այն որպես մտածողության բովանդակության աղբյուր։ Պատահական չէ, որ թեոլոգիայի համար փորձը, մեզ հաղորդակցելով առարկաներին ու երևույթներին, միջոց է բացահայտելու դրանց մեջ թաքնված աստվածային էությունը։ Ամեն մի իր, երևույթ աստծու էության դրսևորումն է «քանզի աստուած ինչ որ է, նմին իրի կան և էակք»,— գրում է Պ. Էմմանուելյանը։

Արիստոտելյան սիլլոգիզմն իսկ և իսկ համապատասխանում է նման սկզբունքի գլխավոր պահանջին, և, ի դեմս դեդուկտիվ մտահանգման, թեոլոգիան գործ ունի աստծո էությունից կատարվող բխեցումների տրամաբանական արդարացուցիչ հիմքի հետ։ Պարզ է, ուրեմն, թե ծայրահեղ ռացիոնալիզմի համար հետազոտության մեթոդի ու դրա տրամաբանական կառուցվածքի ձևական համապատասխանությունը որքան վճռական նշանակություն կունենա։ Գլխավորն այն է, որ հետազոտության արդյունքները չհակասեն մտքի կառուցվածքային ճշտության պահանջներին, որով բավարարված կլինի նաև նրա ճշմարտության պահանջը, որպես ճշմարիտ մեկնակետից կատարված օրինավոր հետևություն։

Մինչդեռ ռացիոնալիզմի չափավոր ուղղության ներկայացուցիչների համար իմացական և տրամաբանական մեթոդների փոխհարաբերության հարցը

կարող է բարձրանալ միայն այն բանից հետո, երբ արդեն գիտականորեն վճռված է իմացության մեկնակետի հավաստիության խնդիրը։ Սակայն այստեղ այդ մեկնակետը ոչ թե պատրաստի դրույթի ձևով մուծվում է ճանաչողության պրոցեսի մեջ, այլ ճանաչողության շնորհիվ բացահայտվում է բանականության մեջ՝ իբրև իրականությանը մոտենալու համար անհրաժեշտ մտակոնստրուկցիա, տրամաբանական սխեմա, փորձի կարգավորման մտավոր այնպիսի ձև, որը հետագայում պետք է իմաստավորվի հենց այդ փորձից վերցված բովանդակային նյութի շնորհիվ։ Դեդուկտիվ մեթոդն այստեղ ձևակերպվում է իբրև իմացության ձևական կողմի ինքնաբուխ պահանջ և արդարացվում ինդուկցիայի հետ իր ունեցած բովանդակային հարաբերության մեջ։ Ռացիոնալիզմն իր այս մեկնաբանությամբ լավ է դրսևորված Անտոն Գարագաշյանի փիլիսոփայական ուսմունքում։

Գիտության տրամաբանական միջոցների իմացական հատկանիշները անտեսելու և հետազոտությունն անմիջական ընկալումների շրջանակներում պարփակելու դեմ է, որ, թերևս, ոչ անհիմն, ըմբոստանում է Ա. Գարագաշյանը։ Բուն տրամաբանական միջոցների էմպիրիստական ժխտումն իրոք նշանակում է սուբյեկտիվ օրինաչափությունների անտեսում, որոնք գոյություն ունեն շնորհիվ աշխարհը տրամաբանորեն ընկալելու մարդու ունակության։ Բայց դրանք միաժամանակ օբյեկտիվ օրինաչափություններից որակապես տարբերվող հարաբերական ինքնուրույնություններ են։ Գարագաշյանը, իհարկե, այդքան հեռուն չի գնում և դուրս չի գալիս իմացության սուբյեկտիվ կողմի գերագնահատման ռացիոնալիստական միակողմանիությունից։ Այդ բանը իսկույն բացահայտվում է, հենց որ ծանոթանում ենք զգայության և բանականության փոխհարաբերության նրա մեկնաբանմանը։ Հեղինակի կարծիքով, մարդու բանականությանը, առարկաներից եկող պատահական գաղափարներից բացի, հատուկ են այնպիսի գաղափարներ, որոնք առարկայական ծագում չունեն և «առարկաները միայն առիթ կըլլան անմիջապես սա գաղափարներն ունենալու» (ընդգծումները մերն են— Է. Ռ., նույն տեղը, էջ 19)։ Ամեն մի երևույթ պետք է ունենա իր պատճառը, որը, սակայն, բուն երևույթի մեջ չի տրված, ուստի, զգայաբար անկարելի է այն ընկալել։ Բայց առարկայի կամ երևույթի գոյությունն արդեն բավական է, որ հոգին ունենա նրա պատճառի գաղափարը։ Այստեղից հետևում է, որ պատճառի, ինչպես նաև գոյության, ժամանակի, միջոցի ու նման այլ կատեգորիաներ, հոգում ոչ թե առաջանում են, ստեղծվում որպես օբյեկտիվ օրինաչափությունների արտացոլումներ, այլ նրա մեջ բացահայտվում են առարկաների միջոցով ու նրանցից անկախ՝ իբրև բանականության համընդհանուր և անհրաժեշտ՝ առաջին գաղափարներ։

Հեղինակի մոտ ռացիոնալիստական լուծում է ստանում տրամաբանության սկզբունքների կամ աքսիոմաների հարցը։ Դրանք արդեն ձևակերպվում են իբրև բանականության ակնհայտություններ, համընդհանրությամբ և անհրաժեշտությամբ օժտված մշտապես ճշմարիտ դատողություններ։ Սրանք ևս փորձից բխեցվել չեն կարող, դրանից անկախ են, բայց փորձն իբրև առիթ անհրաժեշտ է այդ դրույթները բանականության մեջ բացահայտելու համար։ «Սկզբունք» կըսուին այնպիսի ճշմարտություններ,— գրում է Գարագաշյանը,— որոնք ավելի յայտնի ճշմարտութեամբ մը ապացուցուելու կարոտ չեն, ոչ ալ կրնան հերքուիլ. զոր օրինակ՝ սա ճշմարտութիւնը, թե բոլորը իր մասէն մեծ է» (տե՛ս նույն տեղը)։

Հեղինակը, ի տարբերություն երկրորդական ճշմարտությունների, սրանց առաջին ճշմարտություններ է անվանում. դրանք ապացուցելի ճշմարտություններ են և բխեցվում են աքսիոմատիկ ճշմարտություններից (ինչպես մաթեմատիկայի մեջ) կամ ինդուկտիվ մտահանգումներից (ինչպես բնագիտության մեջ)։

Այսպիսով, բանականության շնորհիվ է, որ, դիցուք, մաթեմատիկան ունի քանակական մեծությունների գաղափարը և «ամբողջն իր մասից մեծ է» աքսիոման, տրամաբանությունն ունի ճշմարտության գաղափարը և «ամեն մի դատողություն ճշմարիտ է կամ կեղծ» սկզբունքը, բնագանցությունն ունի



էակի, գոյության, անսահմանի, բացարձակի գաղափարները, «ամեն մի հետևանք իր պատճառն ունի» աքսիոմատիկ դրույթը և այլն։

Նման տեսակետը լիովին համապատասխանում է ռացիոնալիստական իմացաբանությունը գիտության դիրքերից մեկնաբանելու պահանջներին, որին և միանգամայն գիտակցաբար ձգտել է հեղինակը։ Դա իր արտահայտությունն է գտել նաև նրա տրամաբանական ըմբռնումներում, այն բանում, թե ինչպիսին պետք է լինի տրամաբանական մեթոդը նոր գիտելիքների ձեռքբերման սիստեմում։

Այն հարաբերությունը, որ ռացիոնալիստ մտածողի պատկերացմամբ, գոյություն ունի բանականության և փորձի միջև, կարծես թե նույնությամբ տարածվում է նաև տրամաբանական միջոցների վրա։ Ինչպես փորձն է ենթարկված բանականությանը և առիթ է նրանում աքսիոմատիկ ճշմարտություններ բացահայտելու համար, այնպես էլ ինդուկցիան է ենթարկված դեդուկցիային, որպես դրա հիմնական սկզբունքի բացահայտման ու ծավալման տարատեսակ։ Դրանք մտքի «զատ-զատ գործողություն չեն, այլ միևնույն գործողությունն է»։ Եթե ինդուկցիայի էության մեկնաբանություններում հեղինակը այն հանգեցնում է դեդուկցիային, ապա դա ամենևին չի բացառում այդ մեթոդի գործնական նշանակությունը, ընդհակառակը, հնարավորություն է տալիս բնագիտական հետազոտությունների բնագավառում ցրելու դրա արդյունքների հուսալիության նկատմամբ ամեն մի տարակույս։ Ինդուկտիվիստ Բեկոնը դեդուկտիվիստ Գարագաշյանի համար գրեթե այնպիսի հեղինակություն է, ինչպիսին Արիստոտելն է, որովհետև նա էր, որ «բնաբանական նիւթերու մեջ ճշմարտութիւն գտնելու համար հետազոտութեան ճամբան ցուցուց»։

Ակներև է Գարագաշյանի համերաշխությունը նոր ժամանակների ռացիոնալիստ մտածողների հետ, որոնց համար գիտության իդեալը՝ հավաստի գիտելիքների ձեռքբերումը իրականանում է միայն դեդուկտիվ մեթոդի շնորհիվ։ Դեդուկտիվ տրամաբանության հիմնարար դրույթները Գարագաշյանի համար ևս անկախ են փորձից, չեն կարող հանգեցվել վերջինին ճիշտ այնպես, ինչպես դրան հանգեցվել չի կարող բուն մտածողության տրամաբանական ապարատը։ Փորձը և ինդուկցիան միջոց են բանականության տրամաբանական ձևերի ծավալման համար, որի պրոցեսում դրանք ձեռք են բերում առարկայական բովանդակություն։ Ինդուկցիան անհրաժեշտ է փորձնական գիտությունների մեջ պատահական ճշմարտություններ բացահայտելու համար։ Այս ամենը մեզ հիմք է տալիս Գարագաշյանին ներկայացնելու իբրև չափավոր ռացիոնալիզմի կամ գիտական իմացության տրամաբանության դեդուկտիվիստական կոնցեպցիայի հետևորդ։

XIX դարի երկրորդ կեսի տրամաբանական-իմացաբանական պրոբլեմատիկայում ուրույն տեղ է գրավում նաև էկլեկտիկական տենդենցը, որը առավել ցայտուն գծերով ներկայացված է Նահապետ Ռուսինյանի (1819—1876) փիլիսոփայական ուսմունքում։ Ի դեմս այս հեղինակի մենք գործ ունենք նույն դարաշրջանի ֆրանսիական էկլեկտիկ մտածող Վիկտոր Կուզենի փիլիսոփայության ժառանգորդի հետ, որը փորձել է Հեգելի սպեկուլյատիվ ռացիոնալիզմը Կանտի մոտ նկատվող էմպիրիստական տենդենցներին ու նրա ապրիորիզմին միացնելու ճանապարհով գտնել ինդուկտիվիզմի և դեդուկտիվիզմի հաշտեցման բանալին։

Է. Գ. ՌՇՏՈՒՆԻ



# ԷՋԵՐ ՍՈՎԵՏԱՀԱՅ ՄԱՄՈՒԼԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ

## ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԵՂԲԱՅՐՈՒԹՅԱՆ ՈՒ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ՋԱՏԱԳՈՎԸ

*Հայաստանի սովետականացումը սոցիալ-տնտեսական և կուլտուր-քաղաքական արմատական հեղաշրջում էր հայ ժողովրդի կյանքում: Հայաստանի կոմունիստական կուսակցությունն ու կառավարությունը, Սովետական Ռուսաստանի ու եղբայրական մյուս հանրապետությունների անշահախնդիր օգնությամբ, ձեռնամուխ եղան նոր կյանքի ստեղծմանը, երկրի էկոնոմիկայի վերականգնմանն ու վերակառուցմանը, աշխատավորների կոմունիստական դաստիարակության բարդ խնդիրների լուծմանը: Այդ դժվարին գործում կուսակցության ձեռքում հզոր զենք էր նորաստեղծ սովետահայ մամուլը:*

*Ալ. Մյասնիկյան, Ա. Մռավյան, Ս. Կասյան, Ա. Հովհաննիսյան, Ա. Կարինյան, Պ. Մակինցյան, Ե. Զուբար, ահա ոչ լրիվ ցուցակն այն մարքսիստ գործիչների, որոնք կանգնած էին սովետահայ հրապարակախոսության ու ժուռնալիստիկայի ձևավորման ակունքներում:*

*Նոր գաղափարայնության հետ միասին խոսքի պարզություն, մարդկանց սրտերը փոթորկելու հմտություն, բոցավառ հայրենասիրություն, ժողովուրդների եղբայրության ու բարեկամության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի կրքոտ ջատագովություն, թշնամական գաղափարախոսության անհաշտ քննադատություն. սրանք էին, սեղմ ասած, սովետահայ հրապարակախոսության բնորոշ հատկանիշները նրա հիմնադրման առաջին օրից: Նոր տիպի մամուլի հիմք դրեց հանրապետության առաջին պաշտոնական թերթը՝ «Կոմունիստը» (այժմ՝ «Սովետական Հայաստան»): Երևանում և գավառներում շուտով ստեղծվում են մամուլի նոր օրգաններ: Օգտագործելով հայ լրագրության բազմամյա փորձը, կիրառելով ու զարգացնելով բոլշևիկյան մամուլի ավանդները, հենվելով բանվորագյուղացիական մամուլի լենինյան դրույթների վրա, Սովետական Հայաստանի թերթերն ու ամսագրերը պատվով կատարեցին կոլեկտիվ պրոպագանդիստի և ագիտատորի, կոլեկտիվ կազմակերպչի իրենց դերը:*

*Սովետահայ մամուլի պատմության մեջ իր ուրույն տեղն ունի «Նորք» (սկզբում՝ գրական, գիտական ու քաղաքական, ապա գրական, հասարակական և քաղաքական) հանդեսը, որը հիմնադրվեց 1922 թ. նոյեմբերին: Այն հրատարակվեց մինչև 1928 թ., հասարակությանը թողնելով ութ ստվարածավալ գիրք, որոնք կարևոր ավանդ են սովետահայ գրականության, հրապարակախոսության և, ընդհանրապես, հասարակական մտքի պատմության մեջ:*

*«Նորքը» խմբագրել և կարևոր հոդվածներով հանդես են եկել կուսակցական ու պետական ականավոր գործիչներ Աշոտ Հովհաննիսյանը, Ասքանազ Մռավյանը: Խմբագրական կոլեգիայի կազմում տարբեր ժամանակներում եղել են անվանի հրապարակախոսներ Արտաշես Կարինյանը, Պողոս Մակինցյանը, և գրող Եղիշե Չարենցը: Հանդեսին աշխատակցել են հավատարիմ լենինյաններ Ալեքսանդր Մյասնիկյանը, Սարգիս Կասյանը և ուրիշներ:*

*Հանդեսն իր էջերը նվիրել է ժողովրդական տնտեսության վերականգնման ու վերակառուցման, հանրապետության ներքին ու արտաքին քաղաքականության, գաղափարական պայքարի, հայ ժողովրդի պատմության մարքսիստական լուսաբանման, գրականության ու արվեստի կուսակցականության, աշխատավորների կոմունիստական դաստիարակության և բազմաթիվ այլ հարցերի, որոնցից շատերն ունեն ոչ միայն պատմական, այլև այժմեական նշանակություն:*

*Կուսակցության ու նորաստեղծ սովետական իշխանության առջև ծառացած գլխավոր հարցերից էր երկրի բազմազգ ժողովուրդների միջև ազգային համերաշխության ու եղբայրության հաստատումը, հարևան ժողովուրդների հետ բարեկամական կապերի ստեղծումը: Այդ արմատական քաղաքականության հիմքում ընկած էին լենինյան դրույթներն ու սկզբունքները: 1920 թ. դեկտեմբերի 2-ին, Հայաստանի հեղկոմին ուղղած հեռագրում, Լենինը, ջերմորեն ողջունելով իմպերիալիզմի ճնշումից ազատագրված աշխատավորական Հայաստանին, վստահություն էր հայտնում, որ հեղկոմը կգործադրի բոլոր ջանքերը՝ Հայաստանի, Թուրքիայի, Ադրբեջանի աշխատավորների միջև եղբայրական համերաշխություն հաստատելու համար (տե՛ս Երկեր, հ. 31, էջ 550): Մի քանի ամիս անց, 1921 թ. ապրիլի 14-ին Կովկասի կոմունիստներին ուղղած իր նամակում համաշխարհային պրոլետարիատի առաջնորդը հույս էր հայտնում, որ Կովկասի սովետական հանրապետությունների սերտ միությունը կստեղծի ազգային համերաշխության մի օրինակ, որ չի ստեղծված բուրժուազիայի ժամանակ և որն անհնար է բուրժուական հասարակարգում (տե՛ս Երկեր, հ. 32, էջ 402):*

*Մամուլի մյուս օրգանների հետ մեկտեղ «Նորքը» առաջին համարից հանդես եկավ որպես ժողովուրդների լենինյան բարեկամության և եղբայրության ջատագով, աշխատավորներին սովետական ջերմ հայրենասիրության ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու համար մղվող պայքարի առաջամարտիկ:*

*1922 թ. իր հիմնադիր համարում հանդեսը տպագրեց Ալ. Մարտունու (Ալեքսանդր Մյասնիկյանի) Հայաստանի միջազգային քաղաքականությունը՝ ծրագրային նշանակություն ունեցող հոդվածը: Հեղինակն ընդգծում է, որ խորհրդային երկրի արտաքին քաղաքականությունը պրոլետարական տարրերի դասակարգային շահերից բխած քաղաքականություն է, մի քաղաքականություն, որը տրամագծորեն տարբերվում է բոլոր բուրժուական իշխանությունների, նմանապես և դաշնակցության քաղաքական գործելակերպից:*

*Ինչպես հայտնի է, այդ տարիներին միջազգային դիվանագիտությունը շաղակրատում էր «հայկական հարցի» շուրջը: Ջախջախված, երկրի սահմաններից դուրս վռնդված դաշնակցականները եվրոպական կառավարություններից «ազատ ու անկախ» Հայաստան էին աղերսում: Սակայն հայ ժողովուրդն արդեն մեկընդմիշտ մերժել էր այդ օրիենտացիան. հայ ազգի առջև բացվել էր ուրիշ՝ խաղաղ աշխատանքի և լուսավոր կյանքի ուղի:*

*Թող հայ ազգայնականները,— գրում է Ալ. Մյասնիկյանը,— թոթովեն «Մեծ Հայաստան» կամ «ազգային տուն»: Դա խելացնորություն է, որ նորանոր ազգային բախումների դուռ է բացում:*

*Արտահայտելով հայ ժողովրդի կամքը, Մյասնիկյանը կոչ էր անում մոռանալ հինը՝ քենն ու ոխը, պատմության գիրկը նետել անցյալի մռայլ էջերը, վերջ տալ կոտորածներին ու խաղաղություն ստեղծել Փոքր Ասիայում: Բարեկամական կապ հաստատելով Թուրքիայի հետ, Սովետական Հայաստանը դրանով խաղաղեցնում է իր երկիրը, համերաշխություն ըստեղծում երկու հարևան ժողովուրդների միջև: Այդ գործելակերպը, ընդգծում է Մյասնիկյանը, ապահովում է հայ աշխատավորության ֆիզիկական գոյությունը, Արևելքի բարօր ապագան: Նա Հայաստանի բարգավաճումը տեսնում էր արտաքին խաղաղասիրական քաղաքականության, Սովետական Ռուսաստանի, Անդրկովկասի ժողովուրդների սերտ բարեկամության ու համագործակցության մեջ: «Կռթնած իր հսկա բարեկամի՝ Ռուսաստանի վրա,— գրում է Մյասնիկյանը,— Հայաստանը անկեղծ եղբայրական կապ է հաստատել Վրաստանի և Ադրբեջանի հետ: Այդ երեք պետություններն իրար հետ միացման դաշն են կնքել, որը քանի գընում ավելի ուժեղանում է. այդ կապը անխըզելի է, ավելին՝ նա հավիտենապես կընկերացնի իրար հետ վրացուն, հային, թաթարին»:*

*1922թ. վերջերին իր աշխատանքն սկսեց Հայաստանի սովետների երկրորդ համագումարը, որը պրոլետարական ինտերնացիոնալիզմի վառ արտահայտություն էր: Այնտեղ բազմաթիվ ազգությունների ներկայացուցիչները ձեռք-ձեռքի, եղբայրաբար քննարկում, լուծում էին երիտասարդ հանրապետության ներքին և արտաքին քաղաքականության հրատապ ու կենսական խնդիրները: Անդրադառնալով համագումարի նյութերին («Նորք», գիրք առաջին, 1922 թ., էջ 233—240) «Նորքը» ի լուր ամենքի ազդարարում է, որ սրբությամբ է կատարվել Թուրք և պարսիկ ժողովուրդների հետ բարի-դրացիական կապերն ամրապնդելու վերաբերյալ սովետների առաջին համագումարի պատգամը, որ ավելի ու ավելի են խորացել Անդրկովկասի սովետական հանրապետությունների եղբայրական կապերը և օրերի հարց է Անդրֆեդերացիայի միջոցով Հայաստանը ՍՍՀՄ կազմի մեջ մտնելը:*

*Պրոլետարական ինտերնացիոնալիզմի, ժողովուրդների լենինյան բարեկամության ջերմ շընչով է ներծծված հանդեսի մի ուրիշ՝ Խորհրդային Հանրապետությունների Միության մասին հոդվածը: Հեղինակը՝ Ասքանազ Մռավյանը, հանգամանորեն պարզաբանում է Անդրֆեդերացիայի և ՍՍՀՄ կազմավորման տընտեսական ու քաղաքական շարժառիթները, բնորոշում Միության կառուցվածքը, մանրանըշում իրավունքները, գտնում, որ ֆեդերացիայի կամ Միության մեջ մտնող տվյալ ազգությունը (հանրապետությունը), մի կողմից՝ տնտեսական-քաղաքական ապահով կացության ուժեղ գրավական է ստեղծում իր համար և, մյուս կողմից՝ հնարավորություն ստանում զարգացնելու իր կուլտուրան, լեզուն, ձեռք բերելու.*

ներքին վարչական ինքնուրույնություն։ Սա ոչ հրաժարումն է ազգային անկախությունից, ինչպես վայրահաչում էին դաշնակցականները, այլ այդ անկախության հաստատման ու ամրապնդման բարձրագույն ձևը։ Արտահայտելով Անդրկովկասյան ժողովուրդների խոհերն ու ձըգտումները, հեղինակը նշում է այն ճշմարտությունը, որ հայը, վրացին, ադրբեջանցին ու մյուս ազգերը կարճ ժամանակի փորձով համոզվեցին և սովետական Ռուսաստանի մեջ տեսան պրոլետարական հեղափոխության, ճնշված ժողովուրդների ազատագրության պողպատե բերդը և անկասելի թափով ձգտում են սերտ միության՝ նրա հետ։

Չի կարելի առանց հուզմունքի կարդալ այն հոդվածը, որը կրում է Մեծ կորուստ խորագիրը (տե՛ս «Նորք», գիրք հինգերորդ-վեցերորդ, 1925 թ., էջ 397—405)։ 1925 թ. գարնանը օդային վթարից զոհվեցին Ալեքսանդր Մյասնիկյանը, Գեորգ Աթարբեկյանը, Սողոմոն Մոգիլևսկին։ Եվ ահա հոդվածում ինչպես է նկարագըրվում հրաժեշտի պահը։

... Մարտի 25-ին Անդրկովկասի բովանդակ աշխատավորությունը՝ ադրբեջանցի, վրացի, հայ, ռուս, աջար, աբխազ, քուրդ, ասորի, եզդի, կուսակցական ու անկուսակցական, ծեր ու մանուկ, այր ու կին՝ մեր ողջ բազմալեզու ֆեդերացիան, կարծես արար աշխարհի առջև առարկայորեն ցուցադրելով ազգամիջյան մարմնացած եղբայրության գաղափարը, հողին հանձնեց մեր մոխրացած ընկերներին... Ֆեդերալ տան ապագա շենքի դիմաց, մեր ընկերների եղբայրական շիրմի առջև այդ օրն անցան Անդրկովկասի բազմացեղ ազգաբնակչության բազմահազար շարքերը՝ իբրև ակնբախ վկայություն, թե որքան արմատներ է գցել խորհրդային իշխանությունը մեր երկրում։

Հիրավի, սովետական իշխանության, ժողովուրդների եղբայրության գաղափարները խոր, շատ խոր արմատներ էին գցել մեր բազմազգ երկրում։ Իր նպատակների իրականացման դաժան փորձի ժամանակ վերջնականապես սնանկացավ, սովետական իշխանության ծնունդով գերեզման իջավ ազգայնական այն գաղափարախոսությունը, որ տաճկական ու ռուսական բռնակալության լծից, ազգային ազատագրություն նվաճելու դրոշի ներքո, աճեցվում էր տասնյակ տարիներ և որպես թույն՝ պատվաստվում աշխատավոր մասսաներին (տե՛ս Ս. Լուկաշին, Խորհրդային Հայաստանը 1920—1925 թթ. (ժողովածու, էջ 12)։

Ռուսաստանի կոմունիստական կուսակցության ու Վլադիմիր Իլյիչ Լենինին նվիրված հոդվածներով (տե՛ս «Նորք», գիրք երրորդ, 1923 թ., էջ 193—200, գիրք չորրորդ, 1924 թ., էջ 1—8), որոնց հեղինակը Ասքանազ Մռավյանն էր, հանդեսն առանձին ուժով է ընդգծում, որ միայն Վ. Ի. Լենինի, նրա ստեղծած կոմունիստական կուսակցության տիտանական ջանքերի շնորհիվ հաջողությամբ պսակվեց կապիտալի լծից Ռուսաստանի ժողովուրդներին ազատագրելու գործը, և դարձյալ այդ կուսակցության ջանքերի շնորհիվ, ազատ հանրապետությունների սերտ միության մեջ, եղբայրական ազգերը վստահ գնում են երջանիկ կյանքի ուղիով։

Սերտորեն համախմբվել Լենինի դրոշի ներքո, պաշտպանել ու զարգացնել Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումները, մեծ առաջնորդի սկսած գործը հասցնել վերջնական հաղթանակի։ Սա է հիշյալ երկու հոդվածների հիմնաքարը, որ հնչում էր որպես աշխատանքի ու պայքարի կոչ՝ հային, ադրբեջանցուն, քրդին, ռուսին, հրեային, թաթարին, մեր բազմալեզու հանրապետության՝ եղբայրական կապերով զոդված ազգություններին։

Հանդեսն իր այդ հոդվածներում մասնավորապես ընդգծում է լենինիզմի՝ որպես ինտերնացիոնալ ուսմունքի, նշանակությունը միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման համար՝ աշխատավորությանը կապիտալի լծից ազատագրելու պայքարում։

Հանդես գալով որպես աշխատավորների լենինյան բարեկամության ու եղբայրության, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ջատագով, «Նորք»-ն անհաշտ էր բուրժուական-ազգայնական գաղափարախոսության ամեն դրսևորման և, ամենից առաջ՝ իմպերիալիզմի մարտակառքին լծված դաշնակցության նկատմամբ։ Իրեն կուսակցություն համարող այդ կազմակերպությունն ազգադավ քաղաքականությամբ երկիրը հասցրել էր տնտեսական կատարյալ փլուզման, վերածել արնոտ կրկեսի, ծխացող քաղաքների ու գյուղերի, ալեկոծվող ազգայնական կրքերի զարհուրելի տեսարանի։ Հայաստանում սովետական իշխանության հաստատմամբ դաշնակցությունը, կորցնելով ամեն հեռանկար, կառչեց կապիտալիստական պետություններին, սկսեց հերյուրանքներ տարածել սովետների երկրի հասցեին, ձգտելով մոլորության մեջ գցել սփյուռքահայությանը։ Նա մութ ուժերին հրահրում էր արշավել բոլշևիզմի դեմ, ճիգեր էր թափում իր գոյությունը պահելու համար։ Ահա թե ինչու դաշնակցության դեմ պետք էր պայքարել բոլոր ճակատներում։ Դա բխում էր Հայաստանի աշխատավորության, բուրժուական գաղափարախոսության դեմ դասակարգային անհաշտ պայքարի շահերից։

Ուղեցույց ունենալով կոմունիստական կուսակցության դիրքորոշումը, «Նորքը» մերկացնում էր դաշնակցության բուրժուա-ազգայնական գաղափարախոսությունն ու ավանտյուրիստական գործունեությունը։ Այդ առթիվ առանձնապես արժեքավոր են հանդեսի խմբագիր, վաստակաշատ ակադեմիկոս Աշոտ Հովհաննիսյանի հոդվածները։ Դաշնակցության իդեոլոգիայի ընթացիկ կուրսը ծավալուն հոդվածում (տե՛ս «Նորք», գիրք երրորդ, 1923 թ., էջ 162—185) նա մեկ առ մեկ բացահայտում է դաշնակցության դավանանքի էությունը։ Կոնկրետ փաստերով ցույց է տրվում, թե ինչպես «հայ ազգի ջոջերը», որ սիրահոժար պարել են եվրոպական այս կամ այն պետության նվագի տակ, Հայաստանի մայիսյան ապստամբությունից հետո ամբողջ երեսով շուռ եկան դեպի Անգլիա։ Դաշնակցության պարագլուխներից Ռ. Դարբինյանը գրում էր. «Մեր քաղաքական բախտի որոշումը գերազանցապես, չասեմ բացառապես, կախված է Անգլիայից... Դաշնակից պետության և առանձնապես Անգլիայի համար, որ ստեղծում է Հայաստանը, հայկական պետությունն այն չափով արժեք կունենա, որչափով հակում չի ունենա ոչ դեպի Տաճկաստանը, ոչ էլ դեպի Ռուսաստանը»։

Ռ. Դարբինյանի բոլշևիզմը և Հայաստանը գրքից մեջ բերելով այս զառանցանքը, Ա. Հովհաննիսյանն իրավացիորեն նկատում է, որ Արևմուտքի պետությունների քաղաքականապես կարճատես երկրպագուները իրենց վարքագծով իրականում ջուր էին լցնում իմպերիալիստների աղացին, քանի որ Անգլիան նպատակ չուներ Հայաստանում բարօրություն ստեղծել. խաղալով «Հայկական հարցի» զգայուն լարերի հետ, նա ձգտում էր Անդրկովկասում հաստատել և ամրապնդել իր դիրքերը։

Այն բանից հետո, երբ Հայաստանում սովետական կարգեր հաստատվեցին, վերացվեցին ազգամիջյան գժտությունները, լիկվիդացվեց փետրվարյան ավանտյուրան, դաշնակցականները վերջնականապես գլխի ընկան, որ հին կարգերի վերականգնման փորձերը պարտության կմատնվեն և սկսեցին հենակետեր որոնել Հայաստանի հարևան երկրներում։ Փարիզում նրանք Կովկասի տապալված բուրժուա-ազգայնական կառավարությունների հետ դաշն կնքեցին, թախանձելով քեմալական Թուրքիային՝ Կովկասն ազատագրելու համար ընդհանուր արշավանք սկսել բոլշևիզմի դեմ։ «Ազատ ու անկախ» Հայաստանի ստեղծումը նրանք կապում էին ռուսական բոլշևիզմի տապալման, Ռուսաստանում սպիտակգվարդիական կառավարություն ստեղծելու սին պատրանքների հետ։ Վկայակոչելով «Հայաստանի ձայն» (Փարիզ) շաբաթաթերթին, կադետական կուսակցության ղեկավար Միլյուկովի արած հայտարարությունը, Աշոտ Հովհաննիսյանը եզրակացնում է, որ դաշնակցության ստրատեգիան ու տակտիկան համապատասխանում են սպիտակ գվարդիականների քաղաքական ծրագրին։

Հեղինակը հիմնավոր փաստերով ցույց է տալիս, որ դաշնակցության կենտրոնական խնդիրը Հայաստանում կապիտալիզմի վերականգնումն էր, մասնավոր կապիտալի խրախուսումը, դասակարգային պայքարի ժխտումը։ Հոդվածում Ռ. Դարբինյանից քաղվածքներ են բերված, որտեղ շարադրված են դաշնակցականների գաղափարական-քաղաքական սկզբունքները։ Դաշնակցական պարագլուխը ցնորամիտ ու օտարամոլ արկածախնդրություն է համարում հակակրոնական պայքարը, եկեղեցու և պետության բաժանումը, քաղաքացիական ամուսնությունը, 8-ժամյա աշխատանքային օրը, պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանության ձգտելը և այլն։

Մայիսյան ապստամբության վայրագ ճնշումով դաշնակցությունն անսքող կերպով հանդես եկավ որպես կուլակային բուրժուական դիկտատուրայի ջատագով, իմպերիալիստական պետություններին ստրկաբար ծառայող, պրոլետարական հեղափոխության ոխերիմ թշնամի։

Միջազգային կապիտալի ճանկերում. այսպես է վերնագրված դաշնակցական Ա. Ջամալյանի հոդվածը, որ զետեղված է «Դրոշակի» 1926 թ. երկրորդ համարում։ Հեղինակը ցնծության մեջ է. նրա կարծիքով բոլշևիկները անզոր են սեփական ուժերով վերականգնելու երկրի տնտեսությունը և դրա համար դիմում են միջազգային կապիտալի օգնությանը։ Ի պատասխան դաշնակների այդ մտայնության, «Նորքը» 1926 թ. իր առաջին գրքում զետեղեց հայտնի հրապարակախոս Հայկ Ազատյանի՝ Խորհրդային իշխանությունը և միջազգային կապիտալը հանգամանալից հոդվածը։ Այստեղ կոնկրետ փաստերի ու տվյալների հիման վրա ցույց է տրվում, որ դաշնակցությունը ոչինչ չի հասկանում սովետական իշխանության նոր տնտեսական քաղաքականությունից, չի ըմբռնում, որ երկրում բանվորական վերահսկողության պայմաններում ՆԷՊ-ը, կապիտալիստական տարրերի որոշ աշխուժացումը կոչված են ամրապնդելու սոցիալիզմի դիրքերը, ապահովելու նրա հաղթանակը։ «Նորքը» միանգամայն իրավացի ընդգծում է, որ դաշնակցության գործիչները, զուրկ լինելով անպտուղ գործունեությունը շարունակելու օբյեկտիվ հնարավորությունից, իրենց ուժերը գործադրում են լրագրային բանդիտիզմի բնագավառում։ Հանդեսի այս գնահատականը բավական է, որպեսզի ընթերցողը գաղափար կազմի, թե որն է ՆԷՊ-ի կապակցությամբ դաշնակցականների բարձրացրած աղմուկի քաղաքական կողմը։

Դաշնակցության դեմ «Նորք» հանդեսի ելույթների նշանակությունը ո՛չ միայն նրանում է, որ փաստական հարուստ նյութի հիման վրա մերկացվեց այդ կուսակցության քաղաքականու-

թյան ու գաղափարախոսության սնանկությունը, այլև նրանում, որ այդ ելույթները նպաստեցին դաշնակցության հեղինակազրկմանը, նրա հետնորդների շարքերի կազմալուծման պրոցեսի ուժեղացմանը։ Դաշնակցության դեմ «Նորքի» սկզբունքային, անզիջում պայքարը, միաժամանակ, մեծ չափով նպաստեց Հայաստանի, Անդրկովկասի աշխատավորների ինտերնացիոնալ համախմբմանը, նրանց եղբայրական կապերի ամրապնդմանը։

Թե «Նորքի» այդ ելույթները որքան թարմ են հնչում մեր օրերում, վկայում է դաշնակցության այսօրվա գործունեությունը։ Ժամանակակից դաշնակցության շուրթերին հակասովետական հին լուտանքն է, իմպերիալիստական պետությունների և մասնավորապես ԱՄՆ-ի ռազմամոլների առջև սողալու հին սովորույթը։ Հայտնի է, որ երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակ դաշնակցությունը «Հայաստանն ազատագրելու» իր հույսը դրեց ֆաշիստական Գերմանիայի վրա, այնուհետև դեմ արտահայտվեց միջուկային զենքի փորձարկումները դադարեցնելու վերաբերյալ Մոսկվայի պայմանագրին, մերժեց Սովետական Միության առաջադրած ընդհանուր զինաթափման ծրագիրը, ԱՄՆ-ի պրեզիդենտին հղած նամակում վստահեցրեց, որ այսուհետև ևս կշարունակի «զորավիգ հանդիսանալ ամերիկյան այն ճիգերուն, որոնք կըձգտեն կասեցնելու համայնավարության ծավալումը»։

Հակակոմունիզմը եղել և մնում է իմպերիալիզմի ու դրա մարտակառքին լծված դաշնակցության գաղափարախոսությունը։ Ահա թե ինչու կոմունիստական կուսակցությունն իր անդամներին, ամբողջ աշխատավորությանը սովորեցնում է հետևողական պայքար մղել բուրժուական գաղափարախոսության դեմ։ Գաղափարախոսության բնագավառում խաղաղ գոյակցությունն անհնար է, գաղափարական հարցերում զիջումները բացառված են։

Դիմելով կոմունիստներին, բանվորությանն ու գյուղացիությանը, նրանց կոչ անելով լինել ըզգոն միջազգային իմպերիալիզմի դավերի դեմ, «Նորքը» 1923 թ. իր երկրորդ գրքում, գրում է՝ «Կոմունիստական մտքի լուսարձակը պիտի հետապնդի ոսոխի մրրկահար թափառումները և պայքարի մեր բանակն ունենա պիտի ցցված թնդանոթներ խաղաղության ու ստեղծագործության այն օթևանում, որտեղ պարտված թշնամին... հենակետեր է փնտրում»։

Հանդեսի այս կոչը չի կորցրել իր կենսականությունը և համահնչուն է կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության այսօրվա կուրսին։

Ա. Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆ



# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ

## ԱՆԴՐԿՈՎԿԱՍՅԱՆ ԳԵՂԱԳԻՏԱԿԱՆ ՄՏՔԻ ԱՎԱՆԴՈՒՅԹՆԵՐԸ

Անցյալի կուլտուրական ժառանգության կարևորագույն բաղադրիչների շարքում իրենց տեղըն են գրավում նաև գեղագիտական մտքի պատմության հարցերը։ Հետազոտել և ցույց տալ, թե մեր նախորդներն ինչպե՞ս են ըմբռնել ու վերլուծել էսթետիկայի հանգուցային խնդիրները, գեղեցկի և բարու, արվեստի և իրականության փոխհարաբերության, գեղագիտական դաստիարակության հարցերը,— սրանք սոսկ վերացական հետաքրքրության առարկա չեն, այլ ունեն արդիական, կենդանի նշանակություն։ Իզուր չէ, որ վերջին տարիներս, մեր երկրում էսթետիկական գիտության ակնհայտ ակտիվացման պայմաններում, նկատվում է նաև գեղագիտական մտքի պատմության շատ ավելի լայն ու արդյունավետ հետազոտության ձգտում։ Մասնավոր և ընդհանուր տիպի բազմաթիվ աշխատություններից բացի, անհրաժեշտ է հատուկ նշել էսթետիկայի պատմություն. Համաշխարհային գեղագիտական մտքի հուշարձաններ վեց հատորանոց քրեստոմատիան, որի հրատարակությունն արդեն մոտենում է իր ավարտին։ Երկարատև ընդմիջումից հետո լույս տեսան դասական գեղագիտական մտքի շատ նշանավոր երկեր։ Սկսվել է Հեգելի էսթետիկական աշխատությունների նոր հրատարակությունը։

Սակայն, եթե արևմտաեվրոպական և ռուսական գեղագիտության ուսումնասիրությունն իրոք շատ կողմերով լուրջ արդյունքների է հասել, ապա նույնը չի կարելի ասել մեր երկրի մյուս ժողովուրդների, ինչպես և Անդրկովկասի մասին։ Առանձին մտածողների կամ պրոբլեմների նվիրված աշխատությունները չեն կարող սպառել այն վիթխարի ժառանգությունը, որ գեղագիտական մտքի բնագավառում ստեղծել են մշակույթի հնագույն ավանդույթներ ունեցող անդրկովկասյան ժողովուրդները։ Ոչ մենք՝ հայերս, ոչ մեր հարևան վրացիներն ու ադրբեջանցիները, դժբախտաբար, չենք կարող ասել, թե գեթ բավարար չափով հետազոտել ենք հայրենի գեղագիտական մտքի զարգացման օրինաչափությունները, ազգային յուրահատկություններն ու միջազգային առնչությունները։

Այս խնդիրների լուծման ճանապարհին շատ լուրջ, իրոք նորարարական գործ պիտի համարել փիլիսոփա և գրականագետ, Մոսկվայի համալսարանի պրոֆեսոր Հրանտ Ապրեսյանի ծավալուն մենագրությունը[1], որ վերջերս հրատարակվել է ռուսերեն։ Աշխատության բուն մըտահղացումն արդեն խոսում է գիտնականի մեծ էրուդիցիայի, նրա առաջադրած խնդրի գիտական—քաղաքական կարևորության մասին։ Իրոք, մեկ աշխատության մեջ տալ երեք հարևան ժողովուրդների գեղագիտական մտքի կոմպլեքսային վերլուծությունը, և այն էլ ընդգրկել մոտ 1.500 տարի ձգվող վիթխարի ժամանակահատված,— դժվարագույն և պատասխանատու խնդիր է։ Ընդսմին հեղինակն աշխատել է օրգանապես զուգակցել երկու «հակադիր խնդիրներ»։ Մի կողմից՝ նա քննում է իր հետազոտած նյութը ոչ թե առանձին-առանձին (այդ դեպքում գիրքը կվերածվեր ազգային ակնարկների ժողովածուի), այլ զգալի չափով միասնաբար, մշտապես ձգտելով բացահայտել ընդհանուր օրինաչափություններն ու առնչությունները։ Մյուս կողմից՝ հեղինակը շատ ուշադիր է նաև անդրկովկասյան ժողովուրդների էսթետիկական ժառանգության ազգային յուրահատկությունների նկատմամբ։

Բազմաթիվ առիթներով նա ցույց է տալիս

[1]. **Г. З. Апресян.** Эстетическая мысль народов Закавказья. Домарксистский период, Москва, изд. «Искусство», 1968.

այն ինքնատիպ գծերը, որոնցով բնորոշվում են այս կամ այն ժողովրդի միջավայրում առաջ քաշված գեղագիտական գաղափարները։ Հեղինակը բացահայտում է, օրինակ, գեղագիտական մտքի և արվեստի զարգացման այն տարբերությունները, որոնք միջին դարերում առաջանում էին Վրաստանում և Հայաստանում քրիստոնեական, իսկ Ադրբեջանում՝ իսլամական կրոնի տիրապետության պատճառով։ Տարբերություններ են ծագել նաև այդ ժողովուրդների ընկալած գեղարվեստական ավանդույթների, ազդեցությունների հետևանքով, որոնց նույնպես անդրադառնում է Հ. Ապրեսյանը։

Եվ, այնուամենայնիվ, հեղինակն իրավամբ իր հիմնական խնդիրը համարել է անդրկովկասյան ժողովուրդների էսթետիկական գիտակցության ընդհանրությունների հետազոտությունը, որոնք արդյունք են եղել տնտեսական-քաղաքական և աշխարհագրական պայմանների, գաղափարախոսության և գեղարվեստական ավանդույթների զգալի ընդհանրության։ Այս հարցում նա հենվում է Ն. Մառի և Հ. Օրբելու հիմնավորած գիտական սկզբունքների վրա, որոնք ապացուցել են կովկասյան ժողովուրդների (հատկապես հայերի և վրացիների) մշակույթի կոմպլեքսային և համեմատական-զուգահեռ ուսումնասիրության արդյունավետությունը։ Մառի և Օրբելու առաջ քաշած «Կովկասյան աշխարհ», «Կովկասյան միջավայր» հասկացությունները սոսկ աշխարհագրական բովանդակություն չունեին, այլ ամենից առաջ մատնանշում էին դարերի ընթացքում գոյացած քաղաքական և կուլտուրական ընդհանրությունները։ Գաղտնիք չէ, որ վերջին տասնամյակներում կովկասագիտության հարցերի կոմպլեքսային հետազոտության ավանդույթը մասամբ թուլացել է, և այդ մասին մեկ անգամ չէ, որ խոսվել է գիտական շրջաններում։ Հ. Ապրեսյանի աշխատությունն այդ սկզբունքի ստեղծագործական կիրառման հիանալի օրինակ է, որը և ապացուցում է նրա կենսունակությունը։

Գրքի հիմքում դրված հետազոտական ելակետը ընդհանուր ոչինչ չունի բուրժուական կոմպարատիվիզմի հետ, որը ձգտում է ազգային կուլտուրաների ընդհանրությունները գերազանցապես բացատրել օտար ազդեցություններով։ Կուլտուրայի պատմության կոմպարատիվիստական մեկնաբանությունների, ինչպես նաև, այսպես կոչված «եվրոպոցենտրիստական» և «ասիացենտրիստական» տեսությունների քննադատությունը, որը տրվում է աշխատության ներածության մեջ, սոսկ հայտարարություն չէ, այլ հետևողականորեն կենսագործվող սկզբունք։

Նյութերի և ժամանակի առումով այսպիսի մեծ ընդգրկում ունեցող մի աշխատության մեջ դժվարին գործ է պարբերացումը։ Հ. Ապրեսյանը գտել է առարկայի հետազոտման միանգամայն ճիշտ եղանակ. նյութը նա բաժանել է հասարակական զարգացման հիմնական փուլերի, որը հնարավորություն է տալիս բացահայտելու տվյալ դարաշրջանի գեղագիտական ըմբռնումների հիմնական յուրահատկությունները։ Աշխատության յոթ գլուխներում հաջորդաբար քննվում են անդրկովկասյան գեղագիտական մտքի էական արտահայտությունները՝ վաղ ֆեոդալիզմի, ապա նրա ծաղկման, աստիճանական թուլացման, բուրժուական հարաբերությունների ծագման ու ձևավորման շրջաններում։ Այդ բաժիններից ամեն մեկը սովորաբար սկսվում է դարաշրջանի հասարակական կյանքի և գեղարվեստական զարգացման էական գծերի բնութագրությամբ, որն ընթերցողին կողմնորոշում է տալիս հետագա գեղագիտական հարցադրումների մեջ։ Գլուխների ներսում հաճախ առանձնացվում և մանրամասն քննվում են առավել նշանավոր մտածողների և արվեստագետների հայացքները։

Անդրադառնալով V—VIII դարերի Հայաստանի և Վրաստանի գեղագիտական ուսմունքներին, հեղինակն իր ուշադրությունը կենտրոնացրել է մատենագիրների և փիլիսոփաների աշխատությունների վրա։ Հ. Ապրեսյանը կարողացել է նոր խոսք ասել նրանց մասին, փաստորեն առաջին անգամ լայնորեն բացահայտելով նրանց գործերում պարունակվող բուն գեղագիտական հարցադրումները, մեկնությունները, տերմինաբանությունը։ Ուշագրավ են այդ առումով Մովսես Խորենացուն նվիրված էջերը։ Քերթողահոր գեղագիտական հայացքների բնութագիրը չի սահմանափակվում ժողովրդական բանահյուսության մասին նրա հանրահայտ կարծիքներով։ Հայոց պատմության և Պիտոյից գրքի հիման վրա ցույց են տրվում նաև Խորենացու ըմբռնումները գեղեցկի ու բարու, արվեստի՝ իբրև ճշմարտության ճանաչողության միջոցի մասին։

Շատ նոր դիտողություններ կան նաև Դավիթ Անհաղթի և, մանավանդ, նշված դարերի գեղագիտական տերմինաբանությանը նվիրված բաժիններում։ Նշենք, օրինակ, հայկական «ողբերգություն» տերմինի մեկնաբանությունը, որ գիտնականը տալիս է Դավիթ Քերականի, Ստեփանոս Սյունեցու և ուրիշների գործերի հիման վրա։ Ողբերգության մեջ հայ մտածողները տեսնում էին «վսեմության և սարսափի, տանջանքի և մխիթարության» հակադիր տարրեր, բայց ամենից ավելի կապում էին այն հերոսական արվեստի հասկացության հետ։

Աշխատության մեջ առավել մանրամասնությամբ քննվում են X—XIII դարերի գեղագիտական որոնումները։ Հայտնի է, որ այդ դարերը շատ գիտնականների կողմից դիտվում են իբրև, այսպես կոչված՝ արևելյան կամ անդրկովկասյան վերածնության ժամանակաշրջան, երբ քաղաքային կյանքի ծաղկման պայմաններում ուժեղացան աշխարհիկ մոտիվները, սասանվեցին կրոնական մտածողության հիմքերը, ստեղծվեցին հումանիստական, դեմոկրատական արվեստի հոյակապ նմուշներ։ Գրքի հեղինակը հանդես է գալիս իբրև անդրկովկասյան վերածնության գաղափարի ջերմ պաշտպան, հիմնավորելով այն դարաշրջանի գեղագիտական ուսմունքների վերլուծությամբ։ «Վերածնությունը,— գրում է նա,— համաշխարհային երևույթ է. դա մի շարժում է, որն օրինաչափորեն ծագում է այն ժողովուրդների պատմության մեջ, որոնք անցել են կազմավորման ու զարգացման երկար ուղի, ապրել են իրենց անտիկ շրջանը, կարողացել են կուտակել նյութական և հոգևոր շատ արժեքներ, բայց հետո, տարբեր պատճառներով, ուշացել են իրենց առաջադիմության մեջ, իսկ երբեմն էլ շատ ետ են նետվել» (էջ 76)։ Հեղինակը պաշտպանում է նաև այն միտքը, թե ամեն մի ժողովրդի մոտ վերածնությունը պարտադիր չէ, որ անպայման կապված լիներ բուրժուական հարաբերությունների զարգացման հետ, ինչպես դա եղավ Արևմտյան Եվրոպայում։ X—XIII դարերի Անդրկովկասում հասարակական կյանքի զարգացումը չհանգեցրեց բուրժուական հարաբերությունների ձևավորման։

Վերածնության հումանիստական գաղափարների բազմակողմանի արտահայտությունները գիտնականը բացահայտում է նշված ժամանակաշրջանի շատ ականավոր բանաստեղծների երկերում (Ն. Շնորհալի, Ֆրիկ, Կ. Երզնկացի, Գրիգոլ Չախրուխաձե, Մոսե Խոնելի, Խաքանի, Մահստեսի Խանում և շատ ուրիշներ)։ Սակայն, բնականաբար, նրա ուշադրության կենտրոնում են ժամանակի գեղարվեստական մտածողության բարձրագույն աստիճանը ներկայացնող բանաստեղծները՝ Գրիգոր Նարեկացին, Նիզամի Գյանջևին և Շոթա Ռուսթավելին։ Նրանց երկերի վերլուծությունն արվում է փիլիսոփայական-գեղագիտական ենթատեքստի նուրբ ըմբռնումով։ Կարելի է մատնանշել, օրինակ, Նիզամու գեղագիտական իդեալի խոր բացահայտումը, որը կատարվում է Իսքանդեր-Նամե, Յոթ գեղեցկուհի, Գաղտնիքների գանձարան և մյուս պոեմների հիման վրա։

Ե՛վ հիշատակված բանաստեղծների, և՛ նույն ժամանակի մի շարք փիլիսոփաների (Հովհան Պետրիցի, Հովհաննես Սարկավագ Իմաստասեր, Աբուլ-Հասան Բահմանյար և ուրիշներ) գեղագիտական հայացքներում ամենից ավելի բնորոշ էր գեղեցկի և բարու փոխադարձ կապի, ներքին անցումների և հարաբերականության բազմակողմանի ըմբռնումը։ Գեղեցկի գաղափարը, իր իդեալիստական, աստվածաբանական, «վերերկրային» զգեստավորումով հանդերձ, ի վերջո կապվում էր իրական կյանքի, բարու և արդարի սկզբունքների հետ։ Իսկ արվեստը դիտվում էր իբրև գեղեցկի և ճշմարտի, կյանքում դրանց իրավունքների հաստատման հզոր զենք։ «Սակայն պետք է ասել,— կարդում ենք գրքում,— որ գեղեցիկն ու բարին ամբողջովին չէին հանգեցվում արվեստի էությանը... Գեղեցիկն ու բարին մեկնաբանվում էին իբրև իրենց իմաստով ավելի բովանդակալից ու հարուստ երևույթներ, քան արվեստը» (էջ 88)։

Այս հարցերի, ինչպես նաև արվեստի ու բնության փոխհարաբերության միջնադարյան առաջավոր, իրենց էությամբ փաստորեն մատերիալիստական ըմբռնումների բացահայտման տեսակետից հատկապես հետաքրքրական են Հովհաննես Սարկավագին նվիրված էջերը։ Թեև XII դարի այդ մեծ փիլիսոփայի ու բանաստեղծի հայացքները, առաջին հերթին նրա «Բան իմաստութեան» պոեմը, բազմիցս գրավել են հետազոտողների ուշադրությունը, սակայն նրա բուն գեղագիտական հարցադրումների այսպիսի լայն մեկնություն դեռ չի տրվել։

Ինչպես արդեն երևում է մինչև այժմ ասվածից, գեղագիտական մտքի պատմությունը գրքում հետազոտվում է բազմազան աղբյուրների հիման վրա։ Միջնադարում մեզանում չեն եղել զուտ էսթետիկական աշխատություններ. գեղագիտական ըմբռնումներն արտահայտվում էին պատմական, փիլիսոփայական, քերականագիտական երկասիրությունների մեջ։ Բայց ո՛չ միայն այդ։ Հեղինակը լայնորեն ներգրավում է նաև գեղարվեստական երկերը, բացահայտելով բանաստեղծական պատկերների մեջ պարունակված էսթետիկական գաղափարները։ Ահա թե ինչու փիլիսոփայական հարցադրումները գրքում հաճախ զուգակցվում են գրականագիտական վերլուծությունների հետ։ Այսպես, գրեթե ամբողջովին գեղարվեստական նյութի վրա է կառուցված աշխատության չորրորդ գլուխը, որը նվիրված է XIV—XVI դարերի ուսմունքների քննությանը։ Եթե այդ դարերը հարուստ չեն գեղագիտական պրոբլեմներ առաջադրած փիլիսոփաներով, և հեղինակն ստիպված է սահմանափակվել գրեթե միայն Հովհան Որոտնեցու հայացքների վերլուծությամբ, ապա նա լրացնում է այդ բացը նույն ժամանակի նշանավոր բանաստեղծների (Մ. Նաղաշ, Քուչակ, Նասիմի, Ֆիզուլի) գեղարվեստական երկերի քննությամբ, որով ապացուցում է իր հիմնական դրույթը — գեղագիտական մտքի զարգացումը կանգ չէր առել, այն շարունակվում էր ավելի մերձենալով իրականությանը, որոնում էր գեղեցկի և ճշմարտի, կյանքի և արվեստի փոխհարաբերության հարցերի լուծումը։

Աշխատության վերջին երեք գլուխներն ընդգրկում են XVII—XIX դարերը։ Այդ շրջանը հեղինակը բնութագրում է իբրև Անդրկովկասում բուրժուական հարաբերությունների աստիճանական ծագման, ձևավորման և հաղթանակի ժամանակամիջոց։ Այս բաժիններում ևս հեղինակը հաջողությամբ զուգակցել է գեղարվեստական և տեսական երկասիրությունների զուգահեռ քննության սկզբունքը։

Իհարկե, մենագրության հեղինակը չի ձգտել և չէր կարող ընդգրկել ամբողջ առկա նյութը։ Դրա համար պետք կլիներ հատորներ գրել։ Բայց նա իր հետազոտության մեջ ներկայացրել է գեղագիտական մտքի զարգացման առավել բնորոշ նկրտումներն ու հիմնական նշանաձողերը։ Իսկ դա, վերջին հաշվով, ամենից կարևորն է այսպիսի մի աշխատության համար։

Ինչպես գրքի նախընթաց շարադրանքով, այնպես էլ, հատկապես, դրա վերջին գլուխներում հեղինակը ցույց է տալիս, թե ինչպես հայերի, վրացիների և ադրբեջանցիների էսթետիկական գիտակցության զարգացումը բնական հող ստեղծեց XIX—XX դարերի սահմանագլխին մարքսիստական գաղափարների ընկալման համար։

Հ. Ապրեսյանի գրքի բոլոր բաժինները չէ, որ գրված են հավասար ուժով ու խորությամբ։ Երբեմն, մանավանդ վերջին գլուխներում, նկատվում է որքան կարելի է շատ անուններ և տեսություններ ընդգրկելու միտում, որից տուժում է շարադրանքի որակը։ Կան նաև առանձին պնդումներ, որոնք վիճելու ցանկություն են հարուցում։ Այսպես, մեր կարծիքով, հեղինակն իզուր է հետևում ռեալիզմի լայն, ըստ էության արտապատմական ըմբռնմանը, որի համաձայն ամեն մի ճշմարտացի արվեստ որակվում է իբրև ռեալիստական (տե՛ս, օրինակ, 52, 102, 117, 141, 144, 166 և այլ էջերը)։ Այդ հայացքն անխուսափելիորեն հանգեցնում է գեղարվեստական մեթոդների համահարթման, դրանց որակական տարբերությունների անտեսման, որ բազմիցս արդեն նկատվել է մեր գեղագիտության և գրականագիտության մեջ։ Այդ վտանգը երբեմն ծագում է նաև գրախոսվող գրքում։ Դրա արտահայտությունը չէ՞, օրինակ, այն փաստը, որ Րաֆֆու գեղագիտական հայացքները քննվում են XIX դարում ռեալիզմի համար մղված պայքարին նվիրված բաժնում։ Այնինչ հայ մեծ վիպասանը և՛ իր գեղարվեստական ստեղծագործությամբ, և՛ իր քննադատական ելույթներով հանդես էր գալիս իբրև առաջավոր ռոմանտիզմի հետևողական պաշտպան և կիրառող։

Ամփոփենք։ Հ. Ապրեսյանի Անդրկովկասի ժողովուրդների գեղագիտական միտքը մենագրությունը նշանավորում է քննվող նյութի ուսումնասիրության մի նոր աստիճան, փաստորեն առաջին անգամ տալով նրա սիստեմատիկ շարադրանքը մարքսիստական մեթոդոլոգիայի դիրքերից։ Խոշոր է նրա գիտական-հասարակական նշանակությունը. դա մեկն է այն գրքերից, որոնք պատմում են մեր երկրի ժողովուրդների կուլտուրաների դարավոր բարեկամության ու կապերի մասին, ոչ թե ընդհանուր խոսքերով, այլ պատմական նյութի բազմակողմանի ու խոր հետազոտությամբ։

Բայց կա մի ուրիշ, ոչ պակաս կարևոր հանգամանք ևս. Ապրեսյանի գիրքը հիմք է դառնում անդրկովկասյան գեղագիտական մտքի հետագա, ավելի մանրամասն ուսումնասիրության համար։ Չենք կասկածում, որ մոտ ապագայում կհրապարակվեն ընդհանրացնող աշխատություններ մեր ժողովուրդների գեղագիտական ժառանգության մասին։ Գրախոսվող գրքի երևան գալուց հետո զգալի չափով կհեշտանա նոր հետազոտողների գործը։

ԷԴ. ՋՐԲԱՇՅԱՆ

---

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ

ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր), ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԳԵՎՈՐԳՅԱՆ Վ. Հ. (պատասխանատու քարտուղար), ԵՂԻԱԶԱՐՅԱՆ Ա. Ե., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՂԱՐԻԲՋԱՆՅԱՆ Գ. Բ., ՄԻՔԱՅԵԼՅԱՆ Ս. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ա. Հ., ՍԻՄՈՆՅԱՆ Ա. Ս., ՍԱՐՈՅԱՆ Է. Մ., ՎԱՐԴԱՆՅԱՆ Ս. Հ.։

Адрес редакции. — Ереван-33 Барекамутян 59 г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.։ Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64։

ՎՖ 03056 Պատվեր 103 Թղթի չափսը $70\times108^{1}/_{16}$։ Տիրաժ 11.400։ Գինը 25 կոպ.։

Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ։ Ստորագրված է տպագրության՝ 3/III 1969 թ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խասհակյանի փող. № 28։

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ՊԻՏԵՐՑԵՎ Ն. Ա.— Կ. Մարքսի «Կապիտալի» ուսումնասիրության առթիվ։ *(Ուսումնական ձեռնարկ), Մ., 1968, 44 էջ։*

ՎԱԶՅՈՒԼԻՆ Վ. Ա.— Կ. Մարքսի «Կապիտալի» տրամաբանությունը, *Մոսկվայի համալսարանի հրատ., 1968, 295 էջ։*

Լենինը և Սիմբիրսկը։ *Վավերագրեր, նյութեր, հուշեր, Սարատով, 1968, 492 էջ։*

Խոշորագույն անմահ գաղափարներ։ *Մ., Քաղհրատ, 1968, 280 էջ։*

Փիլիսոփայության սկզբնական դասընթաց։ *Մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցների ունկնդիրների համար, Մ.,* «Мысль» *հրատ., 1968, 319 էջ։*

Մատերիալիստական դիալեկտիկան և բնական գիտությունների մեթոդները, *Մ.,* «Наука» *հրատ., 1968, 603 էջ։*

ԿՈՒԶՆԵՑՈՎ Կ. Տ.— Գիտական կոմունիզմի սկզբնավորումը, *Մ.,* «Высшая школа» *հրատ., 1968, 375 էջ։*

ՍՄԿԿ XXIII համագումարը և պետական շինարարության հարցերը։ *Մ.,* «Мысль» *հրատ., 1968, 284 էջ։*

Գյուղատնտեսության հարցերի վերաբերյալ կուսակցության XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի պլենումների որոշումների կատարման ընթացքի մասին։ *ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը ՍՄԿԿ Կենտկոմի պլենումում, 1968 թվականի հոկտեմբերի 30-ին։*

ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը գյուղատնտեսական հարցերի վերաբերյալ կուսակցության XXIII համագումարի, ՍՄԿԿ ԿԿ պլենումների որոշումների կատարման ընթացքի մասին, ընդունված 1968 թվականի հոկտեմբերի 31-ին։ *Երևան, «Հայաստան» հրատ., 1968, 70 էջ։*

ՊԵՏՐՈՎ ՅՈՒ. Պ.— Քաղմարմինների, կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների շինարարությունը բանակում և նավատորմում (1918—1968), *Մ., Զինհրատ., 1968, 542 էջ։*

Սոցիալիստական արդյունաբերության գիտականորեն կազմակերպված ղեկավարման խնդիրները։ *Մ.,* «Экономика» *հրատ., 1968, 647 էջ։*

Կոմունիստական կուսակցությունների պայքարը դեմոկրատիայի և սոցիալիզմի համար, *Մ.,* «Мысль» *հրատ., 1968, 312 էջ։*

Երկաթուղային տրանսպորտի կուսակցական կազմակերպությունների գործունեության պատմությունից (1917—1967 թթ.), *Լենհրատ, 1968, 148 էջ։*

ՄԻՇՈՒՐԻՍ Ա. Լ., ԿՈՒԶՆԵՑՈՎ Ի. Վ.— Կուսակցական սովետական մամուլի պատմություն։ *Ուսումնա-մեթոդական ձեռնարկ։ Մոսկվայի համալսարանի հրատ., 1968, 99 էջ։*

Գիրքը և քաղաքական ինքնակրթությունը։ *Մ., Քաղհրատ, 1968, 190 էջ։*

Աշխատավորների դեպուտատների սովետների աշխատանքների հարցերը, *Մ., 1968, 351 էջ։*

ԴԱՎԻԴՅՈՒԿ Գ. Պ.— «Միասնական ինդուստրիալ հասարակություն» տեսության քննադատությունը։ *Մինսկ,* «Наука и техника» *հրատ., 1968, 229 էջ։*

ՀԱԿՈԲՅԱՆ Գ. Ս.— Հիդրոտեխնիկական աշխատանքների կազմակերպումը և մեքենայացումը։ *Ուսումնական ձեռնարկ բուհերի համար, Երևան, «Լույս» հրատ., 1968, 247 էջ։*

ՕՀԱՆՋԱՆՅԱՆ Շ. Բ.— Անդրկովկասի երիտասարդության հեղափոխական շարժումների պատմությունից (1905—1907), *Երևան, «Հայաստան» հրատ., 1968, 135 էջ։*

ԳԻՆԸ 25 Կ.


# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՈՒՆԻՎԵՐՍԱԼ ՍՏԵՆԴ

Բաքվի քաղաքային տրանսպորտի վարչության ավտոբուսային պարկի աշխատակից Մ. Կադիրովը ստեղծել է տարբեր տեսակի ավտոմեքենաների աշխատանքը համակողմանի ստուգող ստենդ։ Փոքրիկ սեղանի վրա ուղղահայաց դրված վահանակի վրա տեղակայված են ստուգող-չափող բոլոր սարքերը, որոնք հնարավորություն են ընձեռում ճշգրիտ և արագ որոշելու ավտոմեքենայի տարբեր մասերի աշխատունակությունը, չափում են ջրի ջերմաստիճանը, բենզինի մակարդակը, յուղի ճնշումը և այլն։ Մեկ մարդը այդ ստենդի օգնությամբ կարող է միաժամանակ վերահսկել մի քանի «կետերի» աշխատանքը։ Այն 2—3 անգամ կրճատում է էլեկտրասարքերի աշխատանքն ստուգելու ժամանակը։

## ՔԻՄԻԱԿԱՆ ՆՈՐ ՊՐԵՊԱՐԱՏ

Հայտնի է, թե գյուղատնտեսությանը ինչպիսի մեծ վնաս է հասցնում հացաբույսերի պառկումը. դրա հետևանքով տեղի է ունենում բերքի մեծ կորուստ։

1960 թ. ամերիկացի քիմիկոս Տոլբերտը սինթեզեց քիմիական նոր նյութ CCC կամ TYP անվամբ (քլորքոլինքլորիդ—CCC), չկռահելով իր հայտնագործության ողջ արժեքը։ Հետագայում, քիմիական արդյունաբերության Քեմերովոյի գիտահետազոտական ինստիտուտն ստացավ TYP-ի նոր սինթեզ (մեծացնելով ազոտի քանակությունը), որը լիովին կանխում է հացահատիկային կուլտուրաների պառկումը, ամրապնդում բույսերի արմատն ու ցողունը, մեկ հեկտարի բերքատվությունն ավելացնում է մոտ 10 ցենտներով։

Քիմիական այդ պրեպարատը, հատկապես չորային տարիներին, բարձրացնում է նաև ամուր ցողուն ունեցող հացաբույսերի բերքատվությունը, ամենևին չի վնասում մարդու առողջությանը։

## ԾԱՌԱՆՄԱՆ ԿԱՂԱՄԲ

Հունգարիայում աճեցվում է կերային կաղամբի մի արտասովոր տեսակ, որը նման է ծառի։ Բարենպաստ պայմաններում կաղամբի բարձրությունը հասնում է 2 մետրի, ընդ որում ցողունն ամբողջովին պատած է խոշոր, հյութալի տերևներով։

Վիտամիններով ու սպիտակուցներով հարուստ այդ կերաբույսի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացվում է 120 տոննա բերք։

## ՍՊՈՒՆԳԻ ԳԱՂՏՆԻՔՆԵՐԸ

Նյու-Յորքի ակվարիումներից մեկում աշխատողները նկատեցին, որ ծովասպունգի շուրջը ջուրը միշտ ավելի մաքուր է, քան ակվարիումի մյուս մասերում։ Այդ հետազոտողներին մղեց՝ ավելի ուշադիր ուսումնասիրելու սպունգի հիշյալ յուրահատկությունը։ Պարզվեց, որ սպունգի «հասանելիության ոլորտն» ընկնող միկրոօրգանիզմները ոչնչանում են։ Հետազոտողները փորձով համոզվեցին, որ ծովասպունգները ոչնչացնում են նույնիսկ այնպիսի ահավոր բացիլներ, ինչպիսիք են՝ տուբերկուլյոզի ցուպիկները, մերձարևադարձային կարմրամորուսները։ Այժմ անհրաժեշտ է պարզել ամենակարևորը՝ ո՞րն է սպունգների այդ ամենազոր զենքը։

## ՁԿԱՆ ՈՐՍ ԱՌԱՆՑ ՑԱՆՑԻ

Լույսը հրապուրում է ո՛չ միայն գիշերային թիթեռներին, այլև ձկան շատ տեսակների։ Ձկան «ճաշակի» այդ յուրահատկությունը հնարավորություն է տալիս ցանցը փոխարինել էլեկտրալամպերով և ձկնապոմպերով։

Մեր երկրում ստեղծվել և հաջողությամբ կիրառվում է ЭРСУ—150 մակնիշի էռլիֆտային ձկնորսական սարքավորումը՝ կասպիական կիլկայի և սեծովյան ստավրիդայի որսի համար։ Այդ սարքավորմամբ կարելի է մեկ գիշերում որսալ 20 տոննա ձուկ և, որ գլխավորն է, այն որսի ընթացքում չի վնասում ձկներին և ստացվում է առավել բարձրորակ ձկնամթերք։